# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

2 ՓԵՏՐՎԱՐ · 1966

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 45-րդ ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»-теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание





# ՆՈՐ ՀՆԳԱՄՅԱԿԻ ՇԵՄԻՆ

Պատմության գիրկն անցավ 1965 թվականը: Մեր լայնածավալ հայրենի-
քի բազմազգ ժողովուրդները նոր տարին դիմավորեցին ժողովրդական տնտե-
սության, գիտության ու կուլտուրայի բոլոր բնագավառներում ձեռք բերած հո-
յակապ նվաճումներով, նյութական ու հոգևոր ուժերի աննախընթաց ծաղկման
պայմաններում, վստահորեն նայելով առաջ՝ սոցիալիստական հայրենիքի վաղվա
օրվան, հայրենիք, որի մեծ բախտի հետ կապված են սովետական յուրաքանչյուր
մարդու բախտն ու երջանկությունը: Իր բոլոր մեծագործությունների, հաղթա-
նակների համար ժողովուրդը պարտական է հարազատ կոմունիստական պար-
տիային, որը զինված վստահելի կողմնացույցով՝ մարքսիզմ-լենինիզմի անմահ
ուսմունքով, աչալուրջ նայում է ապագային, ժողովրդի առջև բացում է առաջ-
ընթացի գիտականորեն հիմնավորված ուղիներ, մասսաների մեջ արթնացնում
վիթխարի եռանդ, նրանց առաջնորդում դեպի նոր ու հոյակապ խնդիրների լու-
ծում: Կոմունիստական պարտիան իրավամբ համարվում է մեր դարաշրջանի,
ռևոլյուցիոն մեծ վերափոխումներ կատարող սովետական ժողովրդի միտքը,
պատիվն ու խիղճը:

Պարտիայի և ժողովրդի մեծ ու անխորտակելի միասնությունը, որը կոփվել
է տասնամյակների ընթացքում և քննություն բռնել ահեղ փորձությունների պա-
հին, այսօր դրսևորվում է նոր ուժով, երբ երկիրը նախապատրաստվում է 1966
թվականի կարևորագույն իրադարձությանը՝ ՍՄԿՊ XXIII համագումարին: Պար-
տիայի XXIII համագումարը մեծագույն իրադարձություն կլինի մեր երկրի կյան-
քում, պատմության մեջ կմտնի որպես նոր ուղենիշ կոմունիզմի կառուցման ճա-
նապարհին: Այն կամփոփի XXII համագումարից հետո պարտիայի ու ժողովրդի
ստեղծագործ, վերափոխիչ աշխատանքի արդյունքները, կորոշի ապագայի անե-
լիքները, կհաստատի Սովետական Միության ժողովրդական տնտեսության զար-
գացման 1966—1970 թվականների հնգամյա պլանի դիրեկտիվները:

Սովետական Միության կոմունիստական պարտիայի հավատարիմ ու մար-
տական ջոկատներից մեկը Հայաստանի կոմունիստական պարտիան է, որն էլ
ավելի համախմբված պարտիայի մարտական շտաբի՝ լենինյան կենտրոնական
կոմիտեի շուրջը, նախապատրաստվում է իր հերթական XXIV համագումարին:

Հայաստանի կոմպարտիայի XXIII համագումարից անցել է ընդամենը երկու
տարի: ՍՍՌՄ բազմազգ ժողովուրդների եղբայրական ընտանիքում, Սովետա-
կան Միության կոմունիստական պարտիայի ամենօրյա ու ջերմ հոգատարության
շնորհիվ հայ ժողովուրդը, Հայաստանի կոմպարտիայի անմիջական ղեկավա-
րությամբ, նոր քայլ կատարեց դեպի առաջ, պատմական այդ կարճ ժամանա-
կամիջոցում ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի բոլոր ասպարեզներում

հասավ աննախընթաց հաջողությունների: Նա նոր տարվա ելման բնագիծ դուրս
եկավ՝ իր ուսերին ունենալով պայքարի ու հաղթանակների պատկառելի վաստակ:

Նախապատրաստվելով հերթական համագումարին, Հայաստանի կոմու-
նիստական պարտիան անցկացրեց իր բոլոր կազմակերպությունների մարտու-
նակության գլխավոր ստուգատես: Սկզբնական պարտկազմակերպությունների
հաշվետու-ընտրական ժողովներում, պարտիայի շրջանային ու քաղաքային կոն-
ֆերանսներում կոմունիստները բազմակողմանի վերլուծության ենթարկեցին
անցած ուղու արդյունքները, նշեցին չլուծված խնդիրներն ու բացահայտեցին
թերությունները, ուղիներ մատնանշեցին հետագա առաջընթացի համար: Այդ
ժողովներն ու կոնֆերանսները մեկ անգամ ևս ցուցադրեցին Հայաստանի կո-
մունիստական կազմակերպությունների մարտունակությունը, պարտիայի ու ժո-
ղովրդի մեծ գործին նրանց անսահման նվիրվածությունը:

Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմպարտիայի ամենօրյա
գործունեության կենտրոնում է գտնվել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազա-
յի ստեղծման վերաբերյալ պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կեն-
սագործումը: Հայաստանի կոմունիստները օրինական հպարտությամբ կզեկու-
ցեն իրենց համագումարին ու ժողովրդին, որ ռեսպուբլիկայի արդյունաբերական
արտադրության ծավալը յոթնամյակում ավելացնելու վերաբերյալ ՍՄԿՊ XXI
համագումարի առաջադրանքը կատարված է հաջողությամբ: Յոթնամյակի տա-
րիներին Սովետական Հայաստանի արդյունաբերությունը համախառն արտա-
դրանքի թողարկումն ավելացրեց ավելի քան երկու անգամ: Առավել բարձր
տեմպերով կարգացան արդյունաբերության այնպիսի առաջատար ճյուղեր, ինչ-
պիսիք են՝ գունավոր մետալուրգիան (2,8 անգամ), մեքենաշինությունը և մե-
տաղամշակումը (3,4 անգամ), քիմիական արդյունաբերությունը (3 անգամ),
շինանյութերի արդյունաբերությունը (2.8 անգամ): Վերջին յոթ տարում ռես-
պուբլիկայում ստեղծվեցին արդյունաբերության այնպիսի նոր, ժամանակակից
ճյուղեր, ինչպիսիք են՝ ռադիոէլեկտրոնային, էլեկտրոնային, գործիքաշինական
արդյունաբերությունը, դարբնոցամամլակային սարքավորման, հաշվիչ և հաշվիչ-
մաթեմատիկական մեքենաների, արհեստական ու սինթետիկ թելի, սինթետիկ ու
պլաստիկ մասսաների արտադրությունը և այլն:

Յոթնամյակի տարիներին Հայաստանում կառուցվեցին ու շահագործման
հանձնվեցին 300 արդյունաբերական նոր ձեռնարկություն և խոշոր արտադրա-
մաս, այդ թվում այնպիսի գիգանտներ, ինչպիսիք են՝ Ագարակի պղնձամոլիբ-
դենային կոմբինատը, Երևանի և Աթարբեկյանի հիդրոէլեկտրակայանները,
Երևանի և Կիրովականի ջերմաէլեկտրակայանները, Կիրովականի արհեստական
մետաքսաթելի և ճշգրիտ հաստոցների գործարանները, Լուսավանի գործիքաշի-
նական և ներտաշ հաստոցների գործարանները, Երևանի ավտոբեռնիչների,
հաստոցանորմալ, Լենինականի Ստրոմմաշինա, հղկող հաստոցների գործա-
րանները և տասնյակ ու տասնյակ այլ ձեռնարկություններ: Ռեսպուբլիկայի
արդյունաբերությունը յուրացրեց արտադրանքի ավելի քան 600 նոր տեսակ-
ների թողարկումը: Մեծ աշխատանք կատարվեց արդյունաբերական ձեռնարկու-
թյունների տեխնիկական վերակառուցման, եղած հնարավորությունների ու ռե-
զերվների ռացիոնալ օգտագործման, արտադրության մեջ գիտության ու տեխ-
նիկայի նորագույն նվաճումների արմատավորման ուղղությամբ:

Հաշվետու ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի պարտիական կազմակեր-
պությունները որոշակի հաջողությունների հասան նաև գյուղատնտեսական ար-



տադրության զարգացման գործում: Գյուղատնտեսության շատ ճյուղեր հագեց-
վեցին նոր ու նորագույն տեխնիկայով, զգալի աշխատանք կատարվեց գյուղա-
տնտեսության աշխատողների որակավորումը բարձրացնելու, վճռական տեղա-
մասերը գործիմաց կադրերով ամրապնդելու, աշխատողների անձնական նյութա-
կան շահագրգռվածությունը բարձրացնելու ուղղությամբ: Հաշվետու ժամանա-
կաշրջանում ռեսպուբլիկայում նկատելիորեն ավելացան գյուղատնտեսական
մթերքների արտադրությունն ու մթերումները: 1965 թվականին, 1964 թվականի
համեմատությամբ, խաղողի մթերումն աճեց 1,8 անգամ, մրգերինը՝ 77 տոկո-
սով, բանջարաբոստանային կուլտուրաներինը՝ 16 տոկոսով: Ավելացան նաև
անասնաբուծական մթերքների մթերումները: Չնայած մթերումների աճին, աշխ-
օրերի դիմաց բաշխվող մթերքների քանակը ոչ թե նվազեց, այլ ընդհակառակն,
արտադրության ընդհանուր վերելքի շնորհիվ ավելացավ: Այդ հաջողություննե-
րը մեծ չափով պայմանավորված էին մթերումների և գնման գների վերաբերյալ
ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշումների հետևողական կենսագործ-
մամբ:

Կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության մշակած տըն-
տեսական պլանները տոգորված են ժողովրդի բարօրության նկատմամբ հոգա-
տարությամբ: Աշխատավոր մարդու բարեկեցությունը և երջանկությունը մեր հա-
սարակարգի բարձրագույն օրենքն է, պարտիայի քաղաքական ու պրակտիկ ողջ
գործունեության գլխավոր նպատակը: Հաշվետու ժամանակաշրջանում ռես-
պուբլիկայում խոշոր միջոցառումներ իրագործվեցին ժողովրդի կենսամակար-
դակը բարձրացնելու ասպարեզում: Միայն 1965 թվականին բանվորների և ծա-
ռայողների միջին աշխատավարձը, պլանով նախատեսված 8 տոկոսի փոխա-
րեն, աճեց 8,7 տոկոսով: Այդ նույն տարում իրագործվեց լուսավորության, ա-
ռողջապահության, կուլտուրայի, բնակարանային կոմունալ տնտեսության, առև-
տրի և բնակչությանն անմիջականորեն սպասարկող այլ բնագավառների մոտա-
վորապես 162 հազար աշխատողների աշխատավարձի բարձրացումը՝ 24—26
տոկոսով: Բանվորների ու ծառայողների աշխատավարձի բարձրացման և կոլ-
տնտեսականների եկամուտների աճի շնորհիվ բնակչության դրամական եկա-
մուտն ավելացավ մոտավորապես 15 տոկոսով: Հաշվետու ժամանակաշրջանում
նոր, հարմարավետ բնակարաններ ստացան հազարավոր ընտանիքներ: Միայն
1965 թվականին կառուցվեց և շահագործման հանձնվեց մոտ 500 հազար քառա-
կուսի մետր բնակելի տարածություն: Կատարվեցին արդյունաբերական որոշ
ապրանքների գների իջեցում և պարենային ապրանքների վաճառքի ավելացում,
որը նպաստեց առևտրի աշխուժացմանը: Զգալի չափով աճեցին ժողովրդական
կրթության, կուլտուրայի, առողջապահության և սոցիալական ապահովության
համար հատկացվող ծախսերը:

Սովետական Միության կոմունիստական պարտիայի ազգային լենինյան
քաղաքականության շնորհիվ իսկական ծաղկում են ապրում Սովետական Հա-
յաստանի կուլտուրան, արվեստն ու գրականությունը: Մեր առաջատար արվես-
տագետների, գրողների ու կուլտուրայի գործիչների համբավը դուրս է եկել
Միության սահմաններից, արժանացել համաշխարհային ճանաչման: Հաշվետու
ժամանակաշրջանում մայրենի լեզվով լույս տեսան, սովետական ու արտասահ-
մանյան շատ ժողովուրդների լեզուներով թարգմանվեցին ու հրատարակվեցին
սովետահայ առաջավոր գրողների, բանաստեղծների, արվեստագետների գոր-

ծերը, արժանավոր փառք ու համարում բերելով այդ գործերի գլխավոր ստեղծողին՝ հայ ժողովրդին:

Ռեսպուբլիկայի կուլտուրական կյանքում նշանակալից իրադարձություն հանդիսացան Էստոնիայի և Ռուսաստանյան ֆեդերացիայի արվեստի ու գրականության տասնօրյակները Սովետական Հայաստանում, ինչպես նաև սովետահայ արվեստի ու գրականության տասնօրյակները Էստոնիայում և Բուլղարիայում: Անցած երկու տարում սովետահայ արվեստի, գրականության ու կուլտուրայի բազում անվանի գործիչներ ու կոլեկտիվներ գաստրոլներով հանդես եկան Սովետական Միության ռեսպուբլիկաներում և արտասահմանյան շատ երկրներում, աշխարհի ժողովուրդներին ցուցադրելով սոցիալիստական Հայաստանի բարգավաճող արվեստն ու կուլտուրան: Կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության կողմից սովետահայ արվեստի ըստ արժանվույն գնահատման լավագույն ապացույց հանդիսացավ աշխարհահռչակ Մ. Սարյանին Լենինյան մրցանակի լաուրեատի և սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում շնորհելը:

Հայաստանի կոմպարտիայի XXIV համագումարն արժանավայել նվերներով են դիմավորում նաև ռեսպուբլիկայի գիտնականները, որոնց ջանքերն ուղղված են ամենից առաջ արտադրության մոդեռնացմանը, նրա կատարելագործմանն ու ավտոմատացմանը, նորագույն տեխնիկայի ստեղծմանն ու արտադրության մեջ դրա արմատավորմանը, սոցիալիստական հայրենիքի պաշտպանունակության ամրապնդմանը: Հաշվետու ժամանակաշրջանում լուրջ հաջողությունների հասան հատկապես մեր երկրաբանները, մաթեմատիկոսները, աստրոֆիզիկոսները, քիմիկոսները, էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ ստեղծող գիտական կոլեկտիվները, որոնց ջանքերով պատրաստված «Հրազդան—2» և «Նաիրի» մեքենաները գերազանց քննություն բռնեցին միջազգային տոնավաճառներում:

Հայաստանի կոմունիստական պարտիան, նրա Կենտրոնական կոմիտեն ինչպես միշտ, հաշվետու ժամանակաշրջանում ևս անդուլ հոգատարություն ցուցաբերեցին աշխարհով մեկ ցրված հայությանը մայր հայրենիք՝ Սովետական Հայաստան վերադարձնելու գործի հաջող կազմակերպման նկատմամբ: Քարավանները տունդարձի ճանապարհին են բռնել: Ամեն տարի հազարավոր ու հազարավոր տարագիր հայ ընտանիքներ անհուն սերն ու կարոտը սրտներում, վերադառնում են մայր հայրենիք, որտեղ նրանց համար ստեղծված են կյանքի ու աշխատանքի նորմալ պայմաններ: Նրանք գալիս են Նաիրյան ջերմ արևի տակ էլ ավելի շենացնելու իրենց հին ու նորոգ Հայաստանը:

Արդի ժամանակաշրջանում, երբ հսկայական չափերով արագացել է հասարակական շարժումը, օբյեկտիվ գործոնների և նյութական նախադրյալների առաջատար դերի պայմաններում կոմունիզմի կառուցումը շատ բանով կախված է նաև սուբյեկտիվ գործոնի ակտիվության աճից, նրա հասունության աստիճանից, որը բնութագրվում է կամքի, շահերի, նպատակի ու գործողությունների միասնությամբ, այն բանից, թե հասարակության անդամները որքան խորն են ճանաչում զարգացման օրինաչափությունները, որքանով են գիտակցում հասարակության համար իրենց աշխատանքի նշանակությունը, իրենց պարտքը հայրենիքի հանդեպ:

Անշեղորեն ղեկավարվելով պարտիայի XXII համագումարի որոշումներով և ՍՄԿՊ ծրագրի դրույթներով, Հայաստանի կոմունիստական պարտիան հաշվետու ժամանակաշրջանում մեծ աշխատանք կատարեց նոր մարդու ձևավորման, նրա



գաղափարական աճի, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքներով նրան դաստիարակելու, մարքսիզմ-լենինիզմի վեհ գաղափարներով նրան զինելու գործում: Էլ ավելի ընդլայնվեց պարտիական լուսավորության ցանցը, նկատելիորեն նորոգվեցին ուսուցման ձևերը: Տասնյակ հազարավոր կոմունիստներ ու անպարտիականներ իրենց քաղաքական մակարդակը բարձրացրին քաղխմբակներում, սեմինարներում, ինքնակրթության միջոցով: Հաշվետու ժամանակաշրջանում ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում էին կադրերի որակավորման, նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման խնդիրները: Բուհերի, միջնակարգ մասնագիտական դպրոցների, հեռակա ու երեկոյան ուսուցման հետ մեկտեղ զարկ տրվեց աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման այնպիսի նոր ձևերին, ինչպիսիք են՝ տեխնիկական պրոգրեսի, տնտեսագիտական, քիմիական գիտելիքների հասարակական համալսարանները, գիտա-տեխնիկական կոնֆերանսներն ու սեմինարները, ձեռնարկություններին կից տեխնիկայի ակումբները և այլն:

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի կառուցման, սոցիալիստական հասարակական հարաբերությունների զարգացման, նոր մարդու ձևավորման գործում հայ ժողովրդի, Հայաստանի Կոմունիստական պարտիայի հաջողություններն անվիճելի են: Այդ ամենին Հայաստանի կոմպարտիան հասավ ժողովրդի ուժերը մոբիլիզացնելու, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեի դիրեկտիվները անշեղորեն կենսագործելու, կոմունիստական շինարարության մեթոդները կատարելագործելու, հանձնարարված գործի նկատմամբ կադրերի պատասխանատվությունը բարձրացնելու շնորհիվ:

Ըստ արժանվույն գնահատելով ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության, գիտության և կուլտուրայի ասպարեզներում ձեռք բերված հաջողությունները, նախահամագումարյան այս օրերին պարտիական կազմակերպություններն իրենց ուշադրությունը բևեռում են դեռևս չլուծված խնդիրների, թույլ տրված սխալների ու թերությունների վրա, ուղիներ նշում դրանց վերացման համար: Սկզբնական պարտկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում, պարտիայի շրջանային ու քաղաքային կոնֆերանսներում կոմունիստները լուրջ թերություններ բացահայտեցին, հատկապես, ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունների աշխատանքում: Չնայած 1965 թվականին գերակատարվեց արդյունաբերական արտադրանքի կարևորագույն շատ տեսակների թողարկման առաջադրանքը, սակայն, միաժամանակ, չկատարվեց պղնձի, ծծմբաթթվի, մետաղահատ հաստոցների, դարբնոցա-մամլիչային մեքենաների և արտադրանքի մի քանի այլ տեսակների արտադրության պլանը: Դա հիմնականում նոր կարողությունների գործարկումը ձգձգելու և գործարկված կարողությունները դանդաղ իրացնելու հետևանք էր: Արտադրության սահմանված ծավալը չապահովեցին ժողովրդական սպառման ապրանքներ արտադրող ճյուղերը:

Դեռևս քիչ չէ այն ձեռնարկությունների թիվը, որոնք չեն կատարում աշխատանքի արտադրողականության աճի, արտադրանքի ինքնարժեքի իջեցման համար սահմանված առաջադրանքները: Արտադրության մի շարք բնագավառներում մեծ են անարտադրողական ծախսերը: Շարունակվում է պահանջարկ չունեցող մի շարք ցածրորակ ապրանքների թողարկումը, որի հետևանքով պահեստներում և առևտրի ցանցում ապրանքների կուտակում է առաջանում: Անհանդուրժելի պետք է համարել նաև այն, որ անբավարար են կատարվում գի-

տահետապոտական աշխատանքների և ժողովրդական տնտեսության մեջ գիտության ու տեխնիկայի նվաճումների արմատավորման առաջադրանքները, անթույլատրելիորեն ձգձգվում է արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման պլանների կատարումը:

Լուրջ թերություններ կան նաև գյուղատնտեսական արտադրության բնագավառում: Պետք է ուղղակի ասել, որ գյուղատնտեսության և, հատկապես, անասնապահության ետ մնալը դեռևս լիովին չի հաղթահարված: Շատ սովխոզներում չի ապահովվում շահավետությունը, բարձր է գյուղատնտեսական արտադրանքի ինքնարժեքը:

Բացթողումները, թերությունները քիչ չեն նաև կապիտալ շինարարության ասպարեզում: Չնայած կապիտալ ներդրումների ծավալի սիստեմատիկ աճին, այնուամենայնիվ, ռեսպուբլիկայում այդ ներդրումների և հիմնական ֆոնդերի ու կարողությունների գործարկման պլանը անբավարար է կատարվում: Կապիտալ ներդրումները վատ են իրացվում հատկապես թեթև ու սննդի, ինչպես նաև կուլտուր-կենցաղային, նախադպրոցական հաստատությունների ու առողջապահական օբյեկտների շինարարության մեջ: Դեռևս մեծ է շինարար կադրերի հոսունությունը, վատ են օգտագործվում շինարարական մեխանիզմները, չեն կատարվում շինարարական-մոնտաժային աշխատանքների արժեքի իջեցման առաջադրանքները:

Հաշվետու ժամանակաշրջանում լուրջ բացթողումներ նկատվեցին մի շարք պարտիական կազմակերպությունների գաղափարական-քաղաքական աշխատանքում:

Վերևում նշված փաստերի վերլուծությունը ցույց է տալիս, որ այդ ամենի պատճառը ոչ թե նյութական միջոցների, այլ գործիմացության պակասն է, առանձին պարտիական կազմակերպությունների և տնտեսական օրգանների անբավարար աշխատանքը: Ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները չեն կարող անտարբեր անցնել այդ փաստերի կողքով: Նրանք պարտավոր են խորամուխ լինել երևույթների էության մեջ, գործիմացորեն ղեկավարել տնտեսությունն ու աշխատավորների դաստիարակության գործը, բացահայտել ու գործողության մեջ դնել գոյություն ունեցող հնարավորություններն ու ռեզերվները, բարձրացնել յուրաքանչյուրի պատասխանատվությունը հանձնարարված գործի նկատմամբ, մինչև վերջ մոբիլիզացնել աշխատավորության ուժերը պարտիայի ու կառավարության առաջադրանքները ժամկետին և քանակական ու որակական բարձր ցուցանիշներով կատարելու համար:

Մեր մեծ հայրենիքի, այդ թվում և Սովետական Հայաստանի համար բացվում են կարգացման պայծառ հորիզոններ: Նոր հնգամյակի հաստատուն քայլերով, որպես փայլուն մեծագործությունների համբավաբեր, մեր տունը մտավ 1966 թվականը: Հայկական ՍՍՌ վեցերորդ գումարման Գերագույն սովետի յոթերորդ սեսիան արդեն հաստատել է հնգամյակի առաջին տարվա բնագծերը, ռեսպուբլիկայի էկոնոմիկայի, գիտության ու կուլտուրայի հետագա վերելքի խնդիրները:

Արդյունաբերության ղեկավարումը կատարելագործելու, արտադրական ռեսուրսներն ավելի ամբողջական օգտագործելու, տնտեսական խթանումը ուժեղացնելու շնորհիվ 1966 թվականին ռեսպուբլիկայի արդյունաբերությունը կզարգանա էլ ավելի բուռն տեմպերով: Ընթացիկ տարում արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1965 թվականի փաստացի կատարվածի համեմատությամբ, կաճի 11,2 տոկոսով: Առավել բարձր տեմպերով կաճեն արդյունաբերության այնպիսի առաջատար ճյուղերը, ինչպիսիք են մեքենաշինությունը, քիմիական արդյունաբերությունը: 1966 թվականին կիրագործվեն գիտական ու տեխնիկական ավելի քան 800 միջոցառում: Հիմնական ուշադրությունը կկենտրոնացվի արտադրության տեխնիկական մակարդակի հետագա բարձրացմանը, արտադրանքի որակի բարելավմանը: Խոշոր միջոցներ են նախատեսվում նաև ժողովրդական սպառման առարկաներ արտադրող ճյուղերի կարգացման համար:



Ժողովրդական տնտեսության աճին համապատասխան կավելանա էլեկտրաէներգիայի սպառումը: Նախատեսվում է էլեկտրաէներգիայի արտադրությունը, 1965 թվականի պլանի համեմատությամբ, ավելացնել 36 տոկոսով, ըստ որում լրիվ կարողությամբ գործարկել Երևանի ջերմաէլեկտրակայանը, Հրազդանի ջերմաէլեկտրակայանում գործարկել 50 հազար կիլովատ կարողությամբ առաջին ագրեգատը: Ընթացիկ տարում կարագացվեն Տաթևգէսի, Արփա—Սևան ջրուղու շինարարական աշխատանքները:

Լուրջ տեղաշարժեր կկատարվեն նաև գյուղատնտեսական արտադրության մեջ, որի համար ընթացիկ տարում կհատկացվեն նյութական և ֆինանսական զգալի միջոցներ: 1966 թվականին ռեսպուբլիկայի գյուղատնտեսությունը կստանա 170 հազար տոննա հանքային պարարտանյութ: Մեծ ուշադրություն կդարձվի հատկապես ջրովի հողագործության հետագա կարգացմանը, կյուրացվեն 9,4 հազար հեկտար ոռոգելի նոր հողեր, ջրովի կդառնա 22 հազար հեկտար արոտավայր, կշարունակվի մի շարք ջրաշինական օբյեկտների կառուցումը: Գյուղատնտեսական շինարարությանը հատկացվող ներդրումները կաճեն մոտ 17 տոկոսով:

Ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության կարգացման 1966 թվականի պլանով նախատեսվում է զգալիորեն մեծացնել կենտրոնացված կապիտալ ներդրումների ծավալը: Այդ ներդրումների հաշվին ընթացիկ տարում շարք կմտնեն բազմաթիվ հանրակրթական դպրոցներ, նախադպրոցական հիմնարկներ, հիվանդանոցներ, կավարտվի Երևանի պետհամալսարանի շենքի շինարարությունը, կսկսվի պոլիտեխնիկական ինստիտուտի պրոբլեմային լաբորատորիայի և էլեկտրոնիկայի ֆակուլտետի, կոնսերվատորիայի, հայֆիլմ կինոստուդիայի, պետական ռեսպուբլիկական գրադարանի գրապահոցի, գիտությունների ակադեմիայի մի շարք ինստիտուտների շենքերի շինարարությունը: Հրազդան գետի ափին կսկսվի 75 հազար տեղանոց ստադիոնի կառուցումը, կավարտվի Ծաղկաձորի օլիմպիական ավանի շինարարությունը:

Վերևում նշվածը մի մասն է միայն այն վիթխարի գործերի, որ կատարվելու են մեր ռեսպուբլիկայում 1966 թվականին: Այդ մեծ պլանը մեր ժողովրդական տնտեսության հնարավորությունների և ռեզերվների ռեալիստական գնահատման ապացույց է, որի կենսագործումը խոշոր քայլ կլինի սոցիալիստական էկոնոմիկայի կարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման ճանապարհին:

Սովետական ժողովուրդը պարտիայի պլանները համարելով իր սեփական գործը, եռանդ չի խնայում դրանց կենսագործման, կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար: Մեր մարդիկ քաջ գիտեն, որ ժողովրդի բարեկեցության, հայրենիքի հզորության և բարգավաճման գլխավոր աղբյուրը իրենց աշխատանքն է:

ՍՄԿՊ XXIII և Հայաստանի կոմպարտիայի XXIV համագումարների նախա-

պատրաստության օրերը մեր ռեսպուբլիկայում նշանավորվում են մասսաների
քաղաքական ու աշխատանքային ակտիվության նոր վերելքով: Սովետական Հա-
յաստանի բանվոր դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, ժողովրդական
ինտելիգենցիան պարտիական կազմակերպությունների գլխավորությամբ սո-
ցիալիստական լայն մրցություն են ծավալել տնտեսական ու կուլտուրական շի-
նարարության բոլոր բնագավառներում: Նրանք լի են նոր հնգամյակի առաջին
տարվա առաջադրանքները հաջողությամբ կատարելու, հայրենիքի փառքն ու
հզորությունը բազմապատկելու վճռականությամբ: Երևանի, Լենինականի, Կիրո-
վականի և ռեսպուբլիկայի շատ ու շատ առաջավոր ձեռնարկություններ հանդես
եկան արտադրությունը կատարելագործելու, արտադրական կարողություններն
ու հնարավորությունները ռացիոնալ օգտագործելու, աշխատանքի արտադրողա-
կանությունը բարձրացնելու և բազմաթիվ այլ արժեքավոր նախաձեռնություն-
ներով: Ռեսպուբլիկայում ջերմ արձագանք գտավ Մոսկվայի և Լենինգրադի ար-
դյունաբերական ձեռնարկությունների հիանալի նախաձեռնությունը, որոնք
ստանձնել են մետաղի և նյութերի խնայողության պարտավորությունները:

Այդ ամենը նոր, էլ ավելի մեծ ու պատասխանատու խնդիրներ են դնում
ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների առջև: Նրանք պարտա-
վոր են ամեն կերպ պաշտպանել, զարգացնել և ուղղություն տալ մասսաների
նախաձեռնությանն ու ստեղծագործությանը, նրանց ուժերը նպատակամղել պե-
տական առաջադրանքների ժամանակին և հաջող կատարմանը: Ներկա պայ-
մաններում հոյակապ կանխագծումների կենսագործումը մեծ չափով կախված է
պարտիական օրգանների կազմակերպական աշխատանքից: Կարևոր է ոչ միայն
մոբիլիզացնել մասսաների ջանքերը, այլև ապահովել այնպիսի պայմաններ,
որոնք հնարավորություն տային նրանց՝ պատվով կատարելու իրենց առջև դըր-
ված խնդիրները:

Գործի հաջողությունը մեծ չափով կախված է պարտիական կազմակերպու-
թյունների մարտունակությունից, նրանց կազմակերպական ու գաղափարական
նպատակասլաց գործունեությունից: Զարգացման արդի էտապում ինքը՝ կյանքը,
նոր հասարակարգի կառուցման շահերը պահանջում են կոմունիստական պար-
տիայի կազմակերպող և ուղղություն տվող դերի բարձրացում: Կոմունիստական
պարտիան այն ուժն է, որ միավորելով միլիոնների կոլեկտիվ փորձն ու իմաս-
տությունը, ընդհանրացնելով կյանքի նոր երևույթներն ու պրոցեսները, բացա-
հայտելով զարգացման օրինաչափությունները, վիթխարի մղում է տալիս կոմու-
նիզմի կառուցման գործին, ժողովրդին պինում է պայքարի ու գործողությունների
գիտական ծրագրով, նրան առաջնորդում դեպի բաղձալի նպատակը:

Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի կոմունիստական պարտիան էլ
ավելի է աճել, հասունացել նոր փորձով, ընդլայնել իր կապերը մասսաների հետ:
Եթե XXIII համագումարի նախօրյակին Հայաստանի կոմպարտիան իր շարքե-
րում ուներ 98344, ապա այժմ ունի ավելի քան 110357 կոմունիստ:

Հայաստանի կոմունիստական պարտիան իր հերթական XXIV համագու-
մարն է գնում էլ ավելի առնականացած, իր շոկատների անխորտակելի միասնու-
թյամբ, սերտորեն համախմբված Սովետական Միության Կոմունիստական պար-
տիայի, նրա մարտական շտաբ լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը:

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՎՐԱՍՏԱՆԻ 45 ՏԱՐԻՆ

Գ. ՁՈԾԵՆԻՁԵ

Վրացական ՍՍՌ գերագույն սովետի նախագահության նախագահ

*45 տարի է անցել այն օրից, երբ Վրաստանի ապստամբած աշխատավո-
րությունը բարձրացրեց ռևոլյուցիայի դրոշը և ռեսպուբլիկայում հաստատեց
սովետական իշխանություն: Վրաստանը դարձավ սովետական եղբայրական
բազմազգ ընտանիքի իրավահավասար անդամ: Այդ տարեթիվը, սակայն, բնավ
չի մոռացվել. Նորից, նոր ուժով վերապրում ենք վրաց ժողովրդի այդ պատ-
մական հաղթանակի բերկրանքը:*

*Մեզ մոտ հիանալի տրադիցիա է դարձել՝ ամեն տարվա փետրվարի 25-ին
ամփոփել այն նվաճումները, որոնք ձեռք ենք բերել կոմունիստական շինա-
րարության բնագավառում և վերցնել նոր պարտավորություններ: Այսօր մենք
ընդհանրացնում ենք անցած տարվա արդյունքները՝ միաժամանակ մտովին
անդրադառնալով յոթնամյակում վրաց ժողովրդի ձեռք բերած նվաճումներին,
որովհետև 1965 թվականը յոթնամյակի եզրափակիչ տարին էր:*

*1965, ինչպես նաև 1964 թվականը վրաց ժողովրդի, ամբողջ Վրաստանի
համար լի էր նշանակալի իրադարձություններով: Դրանցից իսկապես, մեծ ու
կարևոր էին ՍՄԿՊ Կենտկոմի 1964 թվականի հոկտեմբերյան, նոյեմբերյան,
1965 թվականի մարտյան ու սեպտեմբերյան պլենումները, որոնք նոր, փայ-
լուն էջ բաց արեցին մեր երկրի պատմության մեջ, շրջադարձային կետ հան-
դիսացան կոմունիզմի ուղիով ընթացող մեր հայրենիքի հաղթարշավում:*

*Պարտիան, նրա Կենտրոնական Կոմիտեն իրականացրին մի շարք կարևոր
միջոցառումներ, որոնք ուղղված էին մեր հայրենիքի արդյունաբերության,
գյուղատնտեսության, ամբողջ էկոնոմիկայի հետագա զարգացմանը, ժողովրդի
կուլտուրական և նյութական մակարդակի բարձրացմանը: Եվ այսօր մենք
ամենայն իրավամբ կարող ենք ասել, որ Սովետական Միության աշխատավո-
րությունն արդեն տեսնում է պարտիայի և կառավարության ծրագրած և իրա-
կանացրած միջոցառումների արդյունքները:*

*Վերցնենք, օրինակ, արդյունաբերությունը, մեր հզորության, ժողովրդի
նյութական բարեկեցության բարձրացման, երկրի էկոնոմիկայի զարգացման
հիմքերի հիմքը: Պարտիայի իրականացրած միջոցառումների շնորհիվ ժողո-*

վրդական տնտեսության այդ գլխավոր ճյուղը կարճ ժամանակամիջոցում հասավ չտեսնված բարձրության։ Բոլորի համար վաղուց պարզ էր, որ արդյունաբերությունը տերիտորիալ սկզբունքով վարելը խանգարում էր նրա ճյուղային մասնագիտացմանը և տնտեսական տարբեր շրջանների արտադրական ռացիոնալ կապի զարգացմանը, արտադրության հրամանատարներին զրկում օպերատիվ աշխատելու հնարավորությունից, թուլացնում էր գիտության և արտադրության կապը։ Պարտիան ժամանակին նկատեց այդ և անցյալ տարվա սեպտեմբերյան պլենումում տվեց արդյունաբերության ղեկավարումը գիտական հիմունքներով վերակառուցելու ծրագիր։ Պարտիայի մշակած միջոցառումների կենսագործումը հնարավորություն ստեղծեց ՍՍՌ Միության արդյունաբերության հետագա զարգացման համար, որի արգասաբերությունը խիստ ակնբախ է մեր ռեսպուբլիկայում։

Անցած տարին, ինչպես նշեցի, յոթնամյակի վերջին տարին էր, և մենք այժմ կարող ենք հպարտությամբ նշել նրա հանրագումարները։ Յոթնամյակի տարիներին Վրաստանում ստեղծվեցին արդյունաբերության բազմաթիվ նոր ճյուղեր, վերակառուցվեցին, ամրապնդվեցին ու ընդարձակվեցին գոյություն ունեցող ճյուղերը, շարք մտան տասնյակ նոր ձեռնարկություններ։ Առավել արագ տեմպերով զարգացան արդյունաբերության այնպիսի առաջնակարգ ճյուղեր, ինչպիսիք են՝ էլեկտրատեխնիկական, գործիքաշինական, էլեկտրաքարշային, քիմիական արդյունաբերությունը և այլն։

Ամբողջ երկրին են հայտնի մեր էլեկտրաքարշ-շինարարների հայրենանվեր գործերը։ Յոթնամյակի ընթացքում նրանք յուրացրին և ամեն տարի թողարկում են հզոր մագիստրալային էլեկտրաքարշեր, որոնք օր ու գիշեր սլանում են մեր երկրի պողպատե մագիստրալներով, ծառայելով կոմունիզմի կառուցման մեծ գործին։

Ռեսպուբլիկայում չտեսնված տեմպերով զարգացավ ժամանակակից արդյունաբերության ամենաառաջավոր ճյուղերից մեկը՝ քիմիական արդյունաբերությունը։ Բավական է նշել, որ Ռուսթավիի ազոտային պարարտանյութերի գործարանի կողքին այդ տարիներին շարք մտավ նաև Ռուսթավիի արհեստական մանրաթելի կապրոլակտամի գործարանը։ Ներկայումս Ռուսթավիում ստեղծված է քիմիական արտադրության մի ամբողջ կոմպլեքս, որը թողարկում է արդյունաբերական արտադրանքի շատ ու շատ արժեքավոր տեսակներ։

Հսկայական քայլերով առաջ ընթացան էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը և գործիքաշինությունը. եթե մինչև 1957 թվականը արդյունաբերության այդ կարևոր ճյուղերը ներկայացված էին Թբիլիսիի միայն հիդրոմետսարքերի գործարանով, ապա այսօր էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը և գործիքաշինությունը զարգանում են Թբիլիսիում, Քութաիսիում, Բաթումիում, Փոթիում, Սուխումիում, Գորիում, Զեստաֆոնում, Շորապանիում, Ծխինվալիում, Կասպիում և Ախալցիխեում։ Արդյունաբերության այդ ճյուղերի արտադրանքի թողարկումը անցյալ տարիներին աճեց համարյա 9 անգամ։

Աճել ու ամրապնդվել է ջերմաէներգետիկայի բազան՝ ժողովրդական տնտեսության զարգացման գլխավոր ուժը։ Յոթնամյակի ընթացքում կառուցվել են Լաջանուրիի, Խռամիի II, Սիոնիի հիդրոէլեկտրակայանները, Թբիլիսիի պետական շրջանային ջերմաէլեկտրակայանը, որոնց գործարկմամբ էլեկտրաէներգիայի արտադրությունն աճեց ավելի քան երկու անգամ և զգալիորեն կրճատվեց էլեկտրաէներգիայի պակասը։



Ռեսպուբլիկայի արդյունաբերությունն անցած յոթնամյակում, ինչպես և առաջ, աճել է ծանր արդյունաբերության առավել զարգացման բազայի վրա։ Բավականին ինտենսիվ են աճել նաև թեթև ու տեքստիլ արդյունաբերությունը, թեյի ու ցիտրուսների արտադրությունը, գինեգործությունը և սննդի արդյունաբերության մյուս ճյուղերը։

Արդյունաբերական արտադրանքի զգալի աճը, առաջին հերթին, պայմանավորված էր արտադրական պրոցեսների ինտենսիֆիկացմամբ, նոր տեխնիկայի ու տեխնոլոգիական պրոցեսների ներդրմամբ, արտադրության մեքենայացմամբ ու ավտոմատացմամբ։ Միաժամանակ ռեսպուբլիկայի արդյունաբերության աճին նպաստեցին նոր ճյուղերի ստեղծումը, ավելի քան 200 ձեռնարկությունների և արտադրամասերի գործարկումը։

Մեր ռեսպուբլիկայի ձեռնարկություններում լայնորեն ներդրվեցին հարահոս և կոնվեյերային սիստեմները։ Սկսել են աշխատել տարբեր ձևերի լիարժեք ավտոմատներ և կիսաավտոմատներ։ Օրինակ, Թբիլիսիի Կիրովի անվան հաստոցաշինական գործարանում ստեղծված է 17 հարահոս գիծ, որի օգնությամբ համարյա 2 անգամ ավելացել է մոդել «163»-ի թողարկումը։

Շատ նոր միջոցառումներ են կենսագործված Ռուսթավիի մետաղաձուլական գործարանում։ Ամենից հետաքրքրական և ուշագրավ է գլանվածքի «400» հաստոցի լրիվ ավտոմատացումը, որի համար այդ նախագծի հեղինակներն ու իրականացնողներն արժանացան լենինյան մրցանակի։ Վերջերս այդ գործարանում արմատավորվեց պողպատի անընդմեջ ձուլման եզակի մեթոդ։ Ճիշտ է, պողպատն այդ մեթոդով արդեն ձուլում են նաև Շվեյցարիայում և Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայում, բայց նրանց ձուլվածքի ուժը 3 անգամ պակաս է մերից։ Այդ մեթոդը լայնորեն ներդնելուց հետո մեծ չափերով կավելանա պողպատի ձուլվածքը, կբարձրանա նրա որակը։ Դա իր հերթին կնպաստի արտադրանքի ինքնարժեքի իջեցմանը, աշխատանքի արտադրողականության և արտադրության արդյունավետության բարձրացմանը։

Նորարարական և ռացիոնալիզատորական շատ առաջարկներ են ներդրված Քութաիսիի ավտոմոբիլային գործարանում և ռեսպուբլիկայի համարյա բոլոր փոքր ու մեծ ձեռնարկություններում։ Այդ ամենի շնորհիվ շատ ձեռնարկություններ, որոնք առաջ վնասաբեր էին, հիմա դարձել են շահութաբեր։ Օրինակ, Ռուսթավիի մետաղագործական և Քութաիսիի ավտոմոբիլային գործարանները, որոնք առաջ պետությունից ստանում էին դոտացիա, ներդնելով պրոգրեսիվ նոր մեթոդներ, ո՛չ միայն աշխատում են առանց դոտացիայի, այլև երկրին մեծ եկամուտ են տալիս։ Ամեն տարի նրանք տնտեսում են մի քանի միլիոն ռուբլի։

Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները լավագույն ցուցանիշներով ավարտեցին անցած տնտեսական տարին։ 1965 թվականին, 1964 թվականի համեմատությամբ, արդյունաբերության արտադրանքը աճեց 11 տոկոսով։ Կատարված են արդյունաբերության արտադրանքի այնպիսի կարևոր տեսակների թողարկման պլանները, ինչպիսիք են՝ քարածուխը, մարգանեցը, չուգունը, սինթետիկ ամիակը, մագիստրալային էլեկտրաքարշները, բեռնատար ավտոմեքենաները, ցեմենտը, բրդեղենը, կոշկեղենը, միսը, կաթնամթերքը, թեյը և այլն։ Կատարված են աշխատանքի արտադրողականության և արտադրանքի ինքնարժեքի իջեցման պլանները։

Արդյունաբերության զարգացմանը, տեխնիկա-տնտեսական ցուցանիշ-

ների բարելավմանը և աշխատանքի արտադրողականության բարձրացմանը
նպաստել է արտադրության մեջ ռացիոնալիզատորական և նորարարական
առաջարկությունների ներդրումը։ Միայն անցյալ տարի արտադրության մեջ
ներդրվել են 9 հազարից ավելի ռացիոնալիզատորական առաջարկություններ,
որոնք տվել են մեկ միլիոն ռուբլու խնայողություն։

Յոթնամյակի տարիներին և, հատկապես, 1965 թվականին, արդյունաբե-
րության աշխատողների հետ մեկտեղ մեծ հաջողություններ են ձեռք բերել
նաև Վրաստանի գյուղատնտեսության աշխատողները։

Չնայած անբարենպաստ կլիմայական պայմաններին, անցյալ տարի
Վրաստանի կոլտնտեսականները, սովխոզների բանվորները և գյուղատնտե-
սության մյուս աշխատողները անձնազոհ ջանքերի շնորհիվ ստացան առատ
բերք և կատարեցին սոցիալիստական պարտավորությունները։

Մեր ռեսպուբլիկայի բոլոր նվաճումները, որոնք նշանակալից են ո՛չ միայն
Վրաստանի, այլև ամբողջ Սովետական Միության համար, կոմունիստական
պարտիայի, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի, սովետական կառավա-
րության հոգատարության արդյունք են։

Հայտնի է, որ գյուղատնտեսությունը վերջին տարիներին փաստորեն դո-
փում էր տեղում, խիստ դանդաղ զարգանում։ ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեն
անցյալ տարվա մարտին քննարկեց գյուղատնտեսության հետագա զարգաց-
ման անհետաձգելի միջոցառումների հարցը և ընդունեց կարևոր որոշում, որը
մեծ դեր կխաղա կոմունիստական հասարակության կառուցման համար մեր
պարտիայի և ժողովրդի մղած հերոսական պայքարում։

Գլխավոր խնդիրը, որ դրել է պլենումը, վերաբերում է գյուղատնտեսական
մթերքների արտադրության ավելացմանն ու դրանց վաճառքի սիստեմի բա-
րելավմանը։ Այդ գործում կային շատ թերություններ, որոնք մեծ կորուստ են
բերում տնտեսությանը և արգելակում գյուղատնտեսության աշխատողների
նյութական շահագրգռվածության բարձրացումը։

Պլենումը որոշեց միութենական բոլոր ռեսպուբլիկաների, երկրամասերի,
մարզերի, շրջանների, կոլտնտեսությունների ու սովխոզների համար սահմա-
նել հացահատիկային և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների մթերման
կայուն պլաններ, բարձրացնելով դրանց գնման գները։

Պլենումը քննարկեց նաև գյուղատնտեսության նյութատեխնիկական
բազայի ամրապնդման, գյուղատնտեսության մեջ կապիտալ ներդրումների և
շատ ուրիշ ակտուալ հարցեր, որոնք ուղղված են ամբողջ գյուղատնտեսության
հետագա արագ զարգացմանը։

Գյուղատնտեսության յուրաքանչյուր աշխատող, ՍՍՌՄ յուրաքանչյուր
քաղաքացի համոզվեց, որ պարտիայի Կենտրոնական կոմիտեի մշակած ար-
մատական միջոցառումները բխում են կյանքի պահանջներից և դրանց անշեղ
կենսագործմամբ կապահովվի գյուղատնտեսության հետագա վերելքը։ Հենց
մեր ռեսպուբլիկայի օրինակով կարող ենք ցույց տալ, թե ինչպիսի նշանակա-
լից նվաճումներ են ձեռք բերվել ՍՄԿՊ Կենտկոմի մարտյան պլենումի որոշում-
ների հետևողական կենսագործմամբ։

Անցյալ տարի մեծ հաջողությունների հասան վրաց խաղողագործները։
Նրանք այնպիսի բերք աճեցրին, ինչպիսին պատմությունը չի հիշում և պե-
տությանը վաճառեցին մոտ 2,5 միլիոն ցենտներ խաղող։ Առանձնապես աչքի



ընկան գուրջանցիները, թելավցիները, կվառելցիները և մյուս շրջանների խա-
ղողագործները։

Խաղողագործներից ետ չմնացին վրաց թեյաքաղները, որոնք արդեն մի
քանի տարի է, ինչ սիստեմատիկաբար գերակատարում են պլանները։ Վրաց
թեյի փառապանծ վարպետները, հաղթահարելով անցյալ տարվա բնակլիմայա-
կան անբարենպաստ եղանակի հետևանքով ծագած դժվարությունները, անձ-
նազոհ աշխատանքով կատարեցին վերցրած սոցիալիստական պարտավորու-
թյունները և պետությանը հանձնեցին 186 հազար տոննա «կանաչ ոսկի», իսկ
յոթնամյակի ընթացքում՝ 1 միլիոն 200 հազար տոննա։

30 տոկոսով գերակատարված է նաև պետությանը կարտոֆիլի վաճառքի
պլանը։ Պետությանը վաճառված է մոտ 60 հազար տոննա կարտոֆիլ։ Առանձ-
նապես հաջողությամբ աշխատեցին Ծալկայի դաշտավարները, որոնք նախա-
տեսվածից 2 անգամ ավելի կարտոֆիլ վաճառեցին պետությանը։

Գերակատարված են նույնպես պետությանը կաթի, բրդի, մրգի, բանջա-
րեղենի, հացահատիկի և գյուղատնտեսական մյուս մթերքների վաճառքի
պլանները։

Մեր կոլտնտեսականները, սովխոզների աշխատավորները, մասնագետ-
ներն ամեն ինչ անում են գարնան գյուղատնտեսական աշխատանքներին լավ
նախապատրաստվելու, ընթացիկ տարում նոր նվաճումների հասնելու համար։

Մենք մեծ հաջողությունների ենք հասել նաև ժողովրդի նյութական և կուլ-
տուրական մակարդակի բարձրացման գործում։ Այն փաստը, որ մեզ մոտ վե-
րացված է անգրագիտությունը, իրականացված է ընդհանուր պարտադիր
ութամյա ուսուցում, վաղուց ոչ ոքի չի զարմացնում։ Բոլորին է հայտնի, որ
մեր ռեսպուբլիկան ծածկված է դպրոցների, ակումբների, կուլտուրայի տների,
գրադարանների, թատրոնների, կինոթատրոնների, գիտական հաստատու-
թյունների, հիվանդանոց-պոլիկլինիկաների, սանատորիաների, հանգստյան
տների, կուլտուր-լուսավորական, կենցաղային և այլ հիմնարկների լայն ցան-
ցով։ Շատ է գրվել այն մասին, որ միջնակարգ և բարձրագույն կրթություն
ունեցող մարդկանց թվով Վրաստանը աշխարհում գրավում է առաջին տեղե-
րից մեկը, որ Վրաստանը աշխարհում գրավում է առաջին տեղերից մեկը նաև
բժիշկների թվով։ Ամբողջ Սովետական Միությանը և աշխարհին ծանոթ են
վրաց շատ գիտնականների և գրողների, բանաստեղծների ու նկարիչների, դե-
րասանների և կուլտուրայի այլ գործիչների ստեղծագործությունները։ Նրանց
հաջողությունների մասին են խոսում շնորհված մրցանակներն ու շքանշան-
ները։

Վրաց կուլտուրայի մեծ տոն էր ֆունդամենտալ գործի՝ վրաց լեզվի ութ-
հատորյա բառարանի հրատարակումը։ Բառարանը վրաց շատ գիտնականների
երկար տարիների տքնաջան աշխատանքի արգասիքն էր։ Հաջողությամբ
ավարտված այդ գործը մեծ ներդրում է մեր հնադարյան, հարուստ տրադի-
ցիա ունեցող մշակույթի գանձարանում։

Այդպիսի պատմական նշանակություն ուներ նաև Վրաստանի աշխար-
հագրական ատլասի հրատարակումը, որի ստեղծմանը մասնակցել են շատ ու
շատ գիտնականներ, նկարիչներ և այլ մասնագետներ։ Ատլասը մեր ժողովրդի
վաղեմի երազանքն էր, որը մեծ նշանակություն ունեցավ ոչ միայն աշխար-
հագրությամբ զբաղվողների, այլև ողջ ժողովրդական տնտեսության համար։

Վրաց մշակույթի զարգացման, նրա հետագա ծաղկման մասին է վկա-

յում նաև վրացական Հանրագիտարանի հրատարակման վերաբերյալ որոշումը: Հանրագիտարանը, որ կավարտվի մի քանի տարուց հետո, է՛լ ավելի կհարստացնի մեր մշակույթը: Գիտության ընդհանուր հարցերի հետ միասին այնտեղ լայնորեն կլուսաբանվեն մեր ռեսպուբլիկայի հերոսական անցյալը, նրա պատմությունը, երջանիկ ներկան ու պայծառ ապագան:

Վրաց ժողովուրդը, մեր մեծ հայրենիքի բոլոր ժողովուրդները, աշխարհի առաջադեմ մարդկությունը պատրաստվում են ընթացիկ տարվա աշնանը բստ արժանվույն նշելու վրաց մեծագույն փիլիսոփայի, հասարակական գործչի, մտածողի և բանաստեղծի՝ Շոթա Ռուսթավելու ծննդյան 800-ամյակը:

Մեր ողջ ժողովուրդը, գիտական և կուլտուր-լուսավորական հիմնարկները, գրողների, նկարիչների և կոմպոզիտորների միությունները, ռեժիսյորները, դերասանները մեծ սիրով նախապատրաստվում են պատշաճ ձևով անցկացնել ազգային այդ մեծ տոնը:

Ռեսպուբլիկայում բուռն տեմպերով են շարունակվում շինարարական աշխատանքները: Վրաստանի քաղաքներն ու գյուղերը ծածկվել են նորակառույցներով: Հիշատակության են արժանի, օրինակ, նոր տեխնիկայի վերջին խոսքով բնակելի ու հասարակական շենքերի կոմպլեքսների կառուցումը, Բարաթաշվիլու անվան կամրջի վերակառուցումը: Կառուցվեցին Դիդոմիի, Օրթաճալայի կամուրջները, վերակառուցվեց Մարքսի անվան կամուրջը:

Ինչպես ռեսպուբլիկայի մայրաքաղաքի աշխատավորներին, այնպես էլ ամբողջ վրաց ժողովրդին մեծ ուրախություն պատճառեց Թբիլիսիի մետրոյի առաջին հերթի գործարկումը: Ռեսպուբլիկայի համար այդ եղավ իսկական ժողովրդական տոն: Սովետական Միությունում Մոսկվայից, Լենինգրադից և Կիևից հետո Թբիլիսին այժմ չորրորդ քաղաքն է, որտեղ սկսել է աշխատել մետրոն: Տրանսպորտի այդ նոր ձևը մեծ դեր կխաղա մայրաքաղաքի բնակչության սպասարկման գործում:

Շատ մեծ գործ է կատարված Վրաստանում աշխատավորության նյութական բարեկեցության բարձրացման ուղղությամբ: Հնարավորություն չունենք մեկ հոդվածում թվարկելու մեր բոլոր հաջողությունները:

Այն փառավոր հաղթանակները, որոնք Վրաստանի աշխատավորները ձեռք են բերել անցյալ տարի, յոթնամյակում, հետպատերազմյան տարիներին, ըստ արժանվույն գնահատվեցին կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության կողմից. մեր ռեսպուբլիկան անցյալ տարվա վերջին պարգևատրվեց Լենինի երկրորդ շքանշանով: Հենց սա էլ ամենանշանակալից իրադարձությունն էր ռեսպուբլիկայի կյանքում:

Ամբողջ վրաց ժողովուրդը չտեսնված խանդավառությամբ ընդունեց մեծ
պարգևը: Բոլոր գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսություննե-
րում ու սովխոզներում, հիմնարկներում կազմակերպված միտինգներում աշ-
խատավորներն իրենց շնորհակալության ջերմ խոսքն էին ուղղում կոմունիս-
տական պարտիային, սովետական կառավարությանը՝ իրենց աշխատանքը
բարձր գնահատելու համար:

Վրաստանի աշխատավորների ներկայացուցիչները, որոնք դեկտեմբերի
30-ին Թբիլիսիի սպորտի պալատում հավաքվել էին այդ նշանավոր իրադար-
ձության առթիվ, ողջույնի նամակ ուղարկեցին Սովետական Միության կոմու-
նիստական պարտիայի Կենտրոնական կոմիտեին, ՍՍՌՄ Մինիստրների սովե-
տին և ՍՍՌՄ Գերագույն սովետի նախագահությանը, և այդ բարձր պարգևի



հապակցությամբ սոցիալիստական նոր պարտավորություններ վերցրին: Ողջույնի նամակում ասված է.

«Վրաստանի աշխատավորները լավ են գիտակցում, որ բարձր պարգևը շատ բան է պարտավորեցնում: Եվ մենք՝ միտինգի մասնակիցներս, մեր ամբողջ ժողովրդի անունից հավաստիացնում ենք ՍՄԿՊ Կենտրոնական կոմիտեին, ՍՍՌՄ Մինիստրների սովետին, Գերագույն սովետի նախագահությանը, որ վրաց ժողովուրդը, ռեսպուբլիկայի բոլոր աշխատավորները իրենց ուժն ու եռանդը չեն խնայի հանուն մեր մեծ սովետական տերության հետագա բարգավաճման, հանուն ամբողջ մարդկության պայծառ ապագայի՝ կոմունիզմի հաղթանակի»:

Հայտնի է, որ Սովետական Միության կոմունիստական պարտիայի XXIII համագումարը, որը կկայանա ընթացիկ տարվա մարտ ամսին, կքննարկի և կընդունի մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման նոր պլանը՝ հետագա հինգ տարիների համար: Այդ պլանն արդեն սկսել են կազմել միութենական բոլոր ռեսպուբլիկաներում, այդ թվում և Վրաստանում:

Ահա թե արդյունաբերության գլխավոր ճյուղերը նոր հնգամյակում ինչպես կզարգանան մեր ռեսպուբլիկայում:

Էլեկտրաէներգիայի արտադրությունը 1970 թվականին, 1965 թվականի համեմատությամբ, կավելանա մոտ երկու անգամ և կհասնի տարեկան 12 միլիարդ կիլովատ-ժամի: Էլեկտրաէներգիայի այդպիսի աճին կնպաստի այն բանը, որ 1970 թվականին կսկսեն աշխատել Էնգուրիի հիդրոկայանի առաջին ագրեգատը, Թբիլիսիի ջերմակայանի 4, 5 և 6 բլոկները (որոնցից յուրաքանչյուրի կարողությունը 150 հազար կիլովատ-ժամ է) և Նամախվանիի հիդրոկայանը՝ 360 հազար կիլովատ կարողությամբ: Կսկսվի Վարցիխեի կայանների, Ժինվալիի և Մցխեթայի հիդրոկայանների կառուցումը:

Էլեկտրաէներգիայի արտադրության այդպիսի աճը մեզ թույլ կտա հետագայում լրիվ ծածկել էլեկտրաէներգիայի պակասը և ստեղծել ավելի կուռ էներգասիստեմ:

Նախատեսված է հետագայում առավել չափով զարգացնել նավթարդյունաբերությունը, նավթի հանույթը կավելանա Տարիբանիի, Կիլա-կուպրիի և Սուփսայի ավազանի հաշվին: Կվերամշակվի մինչև 255 հազար տոննա նավթ:

Բուռն թափով կզարգանա ածխարդյունաբերությունը. շահագործման կհանձնվեն Տկվիբուլիի և Տկվարչելիի հանքերը, կսկսվի Շաորիի առաջին հանքի շինարարությունը:

Զգալիորեն կզարգանա սև և գունավոր մետալուրգիան, կավելանա պողպատի և չուգունի արտադրանքը: Սև մետալուրգիայի արտադրանքի թողարկումը հիմնականում կավելանա Ռուսթավիի մետաղամշակման և Զեստաֆոնիի երկաթաձուլվածքի գործարանների ընդարձակման հաշվին՝ արտադրական պրոցեսների ինտենսիֆիկացման և առաջավոր տեխնոլոգիայի ներդրման միջոցով:

Հատկապես մեծ չափերով կզարգանա գունավոր մետալուրգիան, որի ընդհանուր արտադրանքը, 1965 թվականի համեմատությամբ, կավելանա ավելի քան 11 անգամ: Այդպիսի մեծ աճը կապահովվի 1968 թվականին Մադնեուլիի հանքագործական կոմբինատի և Կվախիի հանքի նոր տեղամասի շահագործման միջոցով:

Զգալիորեն ավելանալու է քիմիական արդյունաբերության արտադրանքի

թողարկումը։ Նախատեսվում է այն ավելացնել 4,5 անգամ, ընդ որում, հանքային պարարտանյութերինը՝ 2, կանաչ տնկիների քիմիական պաշտպանության միջոցներինը՝ 4,6, պլաստմասսայե և սինթետիկ նյութերինը՝ 2,7 անգամ (այդ թվում կապրոլակտամինը՝ 182 տոկոսով), քիմիական սինթետիկ մանրաթելերինը՝ 7 անգամ և այլն։

Հնգամյակում, ինչպես և առաջ, սննդի արդյունաբերությունը կմնա մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության գլխավոր ճյուղերից մեկը. կզարգանան այդ բազմաճյուղ արդյունաբերության բոլոր տեսակները՝ գինու, գարեջրի, անալկահոլ խմիչքների, բուսական յուղի և պահածոների արտադրությունը։

Կաճի շինանյութերի արտադրությունը, ավելի կզարգանա անտառային, թղթի, փայտամշակման և մանածագործական արդյունաբերությունը, կծավալվի արդյունաբերական և բնակարանային կապիտալ շինարարությունը, կընդլայնվեն երկրաբանական հետազոտությունները։

Լայն հեռանկարներ են բացվում գյուղատնտեսական արժեքավոր կուլտուրաների մշակությունն ընդարձակելու համար։ Ռեսպուբլիկայի համար այդպիսի կուլտուրաներ են՝ խաղողը, թեյը, ցիտրուսները, մրգերը և այլն։

Նոր հնգամյա պլանի կենսագործումը յուրաքանչյուր բանվորից, կոլտնտեսականից, ինժեներից, գյուղատնտեսից, գիտնականից և մյուս մասնագետներից պահանջում է լարված և անդուլ աշխատանք։ Ի պատասխան կոմունիստական պարտիայի և սովետական կառավարության հոգատարության, Վրաստանի աշխատավորները կաշխատեն էլ ավելի լավ, կանեն ամեն ինչ, որպեսզի սովետական ժողովրդի հետ մեկտեղ պատվով կատարեն իրենց պարտքը հայրենիքի հանդեպ, ամբողջապես գործի վերածեն սահմանված սոցիալիստական պարտավորությունները և դրանով իրենց ավանդը մուծեն կոմունիստական հասարակության կառուցման մեծ գործում։

# ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔԻ ԷԱԿԱՆ ԳՈՐԾՈՆԸ*

Հ. ՌՈՒԹՄԱՋՅԱՆ

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի կառուցման պայմաններից մեկը բազմակողմանի զարգացած գյուղատնտեսության ստեղծումն է, որին կարելի է հասնել հասարակական արտադրության այդ ճյուղերում արտադրողական ուժերը որակական նոր մակարդակի բարձրացնելով։

Ինչ խոսք, որ մեր երկրում սոցիալիստական գյուղատնտեսությունը մեծ նվաճումների է հասել։ Սակայն, ինչպես Միության մասշտաբով, այնպես էլ մեր ռեսպուբլիկայում գյուղատնտեսության արտադրությունը ետ է մնում ոչ միայն կյանքի այսօրվա պահանջներից, այլև գյուղատնտեսության արտադրողական ուժերի զարգացման ներկա մակարդակից։

Վիճակագրական տվյալները ցույց են տալիս, որ վերջին տասնամյակում գյուղատնտեսության արտադրողական ուժերի նյութական տարրերն անընդհատ աճել են, իսկ գյուղատնտեսական մթերքների արտադրությունը որոշ չափով աճել է 1953—1958 թվականներին, իսկ յոթնամյակի տարիներին համարյա մնացել է նույն մակարդակին։ Ավելին, որոշ մթերքների արտադրությունը, 1958 թվականի համեմատությամբ, պակասել է։ Ստեղծվել է մեծ անհամամասնություն գյուղատնտեսության արտադրական հիմնական ֆոնդերի ու համախառն արտադրանքի աճի տեմպերի միջև։ Ցածր է ֆոնդահատույցը։

Ինչպես նշեց ՍՄԿՊ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումը, գյուղատնտեսության ետ մնալն ամենից առաջ հետևանք է այն բանի, որ սոցիալիստական արտադրության մեջ խախտվել, հաճախ նույնիսկ անտեսվել են տնտեսական օրենքները, հատկապես նյութական շահագրգռվածության օրենքը. ժամանակի պահանջի համեմատությամբ անբավարար են գյուղատնտեսության տեխնիկական բազան, քիմիացումն ու էլեկտրիֆիկացումը, ինչպես նաև գիտության նվաճումների ներդրումը արտադրության մեջ. արդյունավետ չեն օգտագործվում եղած տեխնիկան ու հողատարածությունները. աշխատանքի կազմակերպման, արտադրության պլանավորման, կադրերի ընտրության ու տեղաբաշխման գործում կան խրոնիկ բնույթ կրող թերություններ ու սխալներ։ Սակայն այդ բոլոր պատճառների մեջ, մեր կարծիքով, էականը անմիջական արտադրողների անձնական նյութական շահագրգռվածության սկզբունքի խախտումն է։ Ուստի և գյուղատնտեսության վերելքն ապահովելու կարևոր երաշխիքը, առաջին հերթին՝ արտադրողների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացումն է։

Կյանքը ցույց է տալիս, որ կարելի է ունենալ արտադրության համար անհրաժեշտ բոլոր նյութական միջոցները, բայց արտադրել քիչ, եթե պակասում է արտադրողների անձնական նյութական շահագրգռվածությունը արտադրանքի

---

* Առաջարկության կարգով։— Խմբ.։

Լենինի խոսքերով ասած՝ բաշխումը արտադրության բարձրացման մեթոդն է, գործիքն ու միջոցը (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 32, էջ 578)։

Կոմունիստական հասարակարգի առաջին փուլի բաշխման սկզբունքը հիմնականում նշել է Մարքսը։ Նա իր «Գոթայի ծրագրի քննադատությունը» աշխատության մեջ գրում է, որ կոմունիստական հասարակարգի առաջին փուլը ծագում է կապիտալիստական հասարակությունից և իր վրա կրում հին հասարակարգի դրոշմը նաև տնտեսության մեջ։ Դրան համապատասխան՝ յուրաքանչյուր առանձին արտադրող հասարակությունից ետ է ստանում ճիշտ այնքան, որքան ինքը տալիս է նրան՝ հանրային ֆոնդերի օգտին նրա աշխատանքը դուրս գալուց հետո։ Մարքսը նշել է նաև, թե ինչ տիպի հանումներ են կատարվելու յուրաքանչյուր արտադրողի՝ հասարակությանը տված աշխատանքի արդյունքից. դրանք են՝ հանումներ սպառած արտադրական միջոցները փոխհատուցելու և արտադրությունն ընդլայնելու համար, ռեզերվային կամ ապահովության ֆոնդ, վարչական ծախսեր, դպրոցների, առողջապահական հիմնարկությունների պահպանման ու թոշակների վճարման համար հատկացվող և այլ հասարակական ֆոնդեր։

Մարքսը, իհարկե, չի նշել և չէր էլ կարող նշել հասարակության համար տնտեսական անհրաժեշտություն կազմող այս հանումների չափը. նա նշել է, որ դրանց չափը որոշվում է առկա միջոցների և ուժերի հիման վրա, մասամբ նաև հավանականության տեսության հիման վրա (Կ. Մարքս և Ֆ. Էնգելս, Ընտիր երկեր, հ. 2, Երևան, 1950, էջ 16—17)։ Մարքսը չի նշել և չէր էլ կարող նշել նաև, թե արտադրողը հասարակությանը տված իր աշխատաքանակով սպառման առարկաների կամ դրանց դրամական ձևի ո՞ր մասն է ստանալու։ Բայց նրա սոցիալիզմի ուսմունքի էությունից բխում է, որ յուրաքանչյուր արտադրող պետք է ստանա այնքան վարձատրություն, որով կարողանա բավարարել իր ու իր ընտանիքի՝ կյանքի այսօրվա մակարդակից բխող նյութական ու հոգևոր այն պահանջները, որոնք չեն բավարարվում հասարակական ֆոնդերի միջոցով։

Ինչպես տեսնում ենք, Մարքսը սոցիալիզմի ժամանակվա բաշխման սկզբունքը կապում էր **աշխատանքի արդյունքի հետ**. արտադրողը հասարակությունից ետ է ստանալու այնքան սպառման առարկաներ, որքան ստեղծվում է հասարակությանը տված իր աշխատանքով՝ հանած բոլոր կարգի հանումները։

Սոցիալիզմի ժամանակ հասարակության սպառման առարկաներն ըստ աշխատանքի արդյունքի բաշխելու սկզբունքը կիրառելու համար անհրաժեշտ է բաշխման այնպիսի մեխանիզմ (սիստեմ), որի մեջ յուրաքանչյուր արտադրող պարզ ու որոշակի տեսնի, թե իր ծախսած աշխատուժով ստեղծված արդյունքի ո՞ր մասն է գնում հանրային ֆոնդերի օգտին և ո՞ր մասն է ստանալու ինքը։

Մեր երկրում սոցիալիստական էկոնոմիկայի ստեղծման սկզբնական շրջանում, մարքսյան վերոհիշյալ սկզբունքից բխող բաշխման այդպիսի սիստեմ կիրառվեց արդյունաբերության մեջ։ Ժողկոմխորհի 1921 թվականի ընդունած «Տարիֆային հարցի հիմնական կանոնները» դեկրետով (ստորագրված է Վ. Ի. Լենինի կողմից) պահանջվում էր՝ «Աշխատավարձի հաշվարկման սիստեմը պետք է լինի այնքան **հասարակ ու պարզ, որպեսզի արտադրողականության ու աշխատավարձի միջև եղած կապը հասկանալի լինի ամեն մի բանվորի ու ծառայողի համար**» (Экономическая жизнь СССР, М., 1961, էջ 86, ընդգծումը մերն է — Հ. Ու.)։

Դժբախտաբար աշխատանքի վարձատրության հաշվարկման՝ նման պարզ ու հասկանալի սիստեմ հենց սկզբից չդրվեց հողագործական կոլեկտիվ տնտեսության մեջ։ Թեև գյուղատնտեսական արտադրությունն իր բնույթով, պայմաններով ու հնարավորություններով տարբերվում է արդյունաբերությունից (էական տարբերություններից մեկն այն է, որ գյուղատնտեսության մեջ աշխատանքի արդյունքը երևում է միայն տարվա վերջում), բայց կոլեկտիվ տնտեսության մեջ ևս պետք է իշխի աշխատավարձի հաշվառման այդ սիստեմը։ Կոլեկտիվացման սկզբում կիրառվեցին արդյունքն ըստ շնչի բաժանելու և այլ



իրենց չարդարացնող ձևեր, ի վերջո ընդունվեց վարձատրման աշխօրի ձևը։

Վարձատրման աշխօրային սիստեմի մեջ կոլտնտեսականի համար պարզ ու հասկանալի չէ արտադրողականության ու աշխատավարձի կապը։ Կոլտնտեսության անդամների անհատական աշխատանքի վերջնական արդյունքը լցվում է մի ընդհանուր կաթսա՝ կոլտնտեսության պահեստը։ Տարվա վերջում կոլտնտեսությունն իր արտադրության վերջնական արտադրանքի համապատասխան որոշում է աշխօրի դիմաց տրվելիք վարձի չափը։ Թվում է, թե ամեն ինչ կարգին է, վարձատրությունը կատարվում է կոլտնտեսության հավաքական աշխատանքի վերջնական արդյունքի համապատասխան։ Բայց ամեն ինչ կարգին չէ։

Նախ՝ ընդհանուր կաթսայից տրվող վարձատրման այդ ձևի մեջ միշտ չէ, որ լավ աշխատողը լավ է ստանում։ Նա է շատ ստանում, ով շատ աշխօր ունի։ Դրա համար էլ ամբողջ տարվա ընթացքում յուրաքանչյուր կոլտնտեսական շահագրգռված է արտադրել ոչ այնքան շատ ու որակյալ մթերքներ, որքան շատ աշխօր վաստակել։ Այդ բանը առաջացնում է շահերի տարընթացություն կոլտնտեսության ու նրա անդամների միջև՝ առաջինը ձգտում է շատ արտադրել, երկրորդները՝ շատ աշխօր վաստակել և սկսում է հենց իրենց՝ կոլտնտեսականների վազքը դեպի այն աշխատանքները, որոնք շատ աշխօր են բերում։

Երկրորդ, այդ ընդհանուր կաթսայի մեջ (եթե անգամ հաշվի չառնենք կողմնակի շռայլումները) կորչում է ամեն մի կոլտնտեսականի աշխատանքի անհատական բաժինը և դրանով ստեղծված վերջնական արդյունքը։ Օրվա ընթացքում կոլտնտեսականի հաշվին գրանցվող աշխօրը նրա աշխատանքի չափն է, որի ռեալ արժեքի մասին կոլտնտեսականը պատկերացում անգամ չի ունենում օրվա և անգամ տարվա ընթացքում։ Միայն տարվա վերջում է նա իմանում, թե կոլտնտեսության ժողովը ինչքան վարձ է որոշում այդ աշխօրի դիմաց։ Ընդ որում, այդ որոշումները մեծ մասամբ կատարվում են քմահաճորեն, առանց հաշվի առնելու ընդհանուր արտադրանքի մեջ կոլտնտեսականի ներդրած կենդանի աշխատանքի չափը։ Կոլտնտեսականը չի տեսնում, թե տարվա ընթացքում կոլտնտեսությանը տված իր աշխատանքով որքան վերջնական արդյունք ստեղծվեց, որը նա ետ է ստանալու համապատասխան հանումներից հետո։ Նրա համար մութ է մնում իր աշխատանքի դիմաց ստացվելիք վարձի կապը իր աշխատանքի վերջնական արդյունքի հետ։

Վերջապես աշխօրային սիստեմում թերություն է և այն, որ կոլտնտեսականի աշխատանքի չափը կազմող աշխօրի արժեքը համադրված ու համաձայնեցված չէ ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում (արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և այլն) ընդունված վարձատրման չափի ու մակարդակի, ինչպես նաև գների ընդհանուր մակարդակի հետ։

Վարձատրման աշխօրային ձևի այս արատների հետևանքով կոլտնտեսականը չի տեսնում «**արտադրողականության ու աշխատավարձի միջև եղած** կապը» (Լենին), կոլտնտեսականի աշխատանքի վարձատրությունը չի կապվում նրա աշխատանքի վերջնական արդյունքի հետ։

Վերջին ժամանակներս շատ է գրվում կոլտնտեսականների վարձատրման սիստեմը բարելավելու մասին և արվում են կոնկրետ առաջարկություններ։ ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թվականի մարտյան պլենումն իրավացի կերպով նշեց, որ «Կոլտնտեսություններում և սովխոզներում աշխատանքի վարձատրության սիստեմը դեռ բնավ կատարյալ չէ։ Հարկավոր է հանձնարարել ՍՍՌՄ գյուղատնտեսության մինիստրությանը՝ միութենական ռեսպուբլիկաների հետ մեկտեղ, ներգրավելով գիտնականներին, մասնագետներին, կոլտնտեսային ակտիվին, ընդհանրացնել կուտակված փորձը և առաջարկներ նախապատրաստել կոլտնտեսություններում աշխատանքի **վարձատրությունը բարելավելու** վերաբերյալ, մշակել կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված վարձատրության դրամական ու բնամթերային ֆոնդեր ստեղծելու հարցը» (Ընդգծումը մերն է — Հ. Ու.)։

Կենտկոմի պլենումը մշակեց գործնական միջոցառումներ, որոնց անշեղ կենսագործումը, անշուշտ, կբարձրացնի կոլտնտեսականների ու կոլտնտեսությունների նյութական շահագրգռվածությունը, նոր քայլ կարվի հանրային ու

# ԿՐՈՆԸ ԵՎ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

Հ. ԽՏՐՅԱՆ

Բարոյականությունը մարդկանց վարքագծի պատմականորեն փոփոխվող
նորմերի ու սկզբունքների ամբողջությունն է։ Այն կանոնավորում է մարդկանց
վարքագիծը հասարակության, հայրենիքի և պետության նկատմամբ, դասա-
կարգերի, կուսակցությունների, աշխատանքի և սեփականության, ինչպես
նաև մարդկանց վարվելակերպը միմյանց նկատմամբ։

Բարոյականությունը հասարակական գիտակցության ձև է և յուրահատուկ
կերպով արտացոլում է հասարակական կեցությունը։ Այն, վերջին հաշվով,
պայմանավորված է հասարակության նյութական կյանքի պայմաններով։ Այդ
պայմանավորվածությունն լծորդվում է սոցիալ-քաղաքական հարաբերու-
թյունների հետ, դասակարգերի շահերի, քաղաքական և իրավական հայացք-
ների, ինչպես նաև արվեստի, կրոնի, գիտության, իրավունքի և փիլիսոփայու-
թյան հետ։

Բարոյականությունն առաջ է եկել մարդկային հասարակության սկզբնա-
վորման հետ միասին։ Ի տարբերություն բարոյականությունից, մարդկանց
իրավական և քաղաքական հայացքները, ինչպես նաև կրոնը, առաջ են եկել
բավականին ուշ։ Օրինակ, կրոնն առաջացել է մեզնից հարյուր հազար տարի
առաջ, իսկ մարդկության գոյությունը հաշվվում է մոտ մեկ միլիոն տարի։
Ուրեմն, մարդիկ մոտ ինը հարյուր հազար տարի ապրել են առանց կրոնի,
բայց ունեցել են իրենց բարոյական նորմերը, սովորությունները։ Ուստի և բա-
րոյականության առաջացումը չի կարելի կապել կրոնի հետ և բացատրել կրո-
նի ծագմամբ։ Չնայած դրան, մինչև օրս էլ եկեղեցու սպասավորները և մի
շարք իդեալիստ բարոյախոսներ պաշտպանում են այն տեսակետը, թե բարո-
յականությունը չի կարող ծագել և գոյություն ունենալ առանց կրոնի և աստծո
հեղինակության, որ այն կարող է առաջանալ միայն կրոնական գիտակցու-
թյան հիման վրա, աստծո կողմից և այլն։ Ամերիկյան գաղափարախոս Թոմսոն
Հիգինսը ուղղակի հայտարարում է, որ բարոյական նորմերն ստեղծում է
աստված։ Ժամանակակից աստվածաբաններից Էմիլ Բրունները գրում է. «Այն,
ինչ ուզում ու անում է աստված — լավ է, իսկ այն բոլորը, որ աստծո կամքին
հակառակ է, վատ է։ Բարիքը հիմնվում է բացարձակապես աստծո կամքի վրա
և գոյություն ունի նրա շնորհիվ»։ Եկեղեցու հայրերը քարոզում են, թե արա-



փիչն է մարդու հոգու մեջ դնում բարոյական օրենքները և մարդիկ գործում են
դրանց համապատասխան։

Մենք հաճախ օգտագործում ենք կրոնական բարոյականություն տերմի-
նը, բայց զուտ կրոնական բարոյականություն գոյություն չունի։ Գոյություն
ունի այս կամ այն իշխող դասակարգի բարոյականությունը, որը սրբացվում է,
գովերգվում, տարածվում ու պահպանվում է եկեղեցու և կրոնի կողմից։

Անտագոնիստական հասարակարգերում իշխող դասակարգերի բարոյա-
կանությունը հիմնականում երևան է գալիս կրոնական բարոյականության
ձևով և հանդիսանում է շահագործվողներին հոգեպես ճնշելու, քաղաքական
իշխանությունը պահպանելու միջոց։ Նրա նպատակը աշխատավոր մասսանե-
րին հնազանդության ոգով դաստիարակելն է, որպեսզի նրանք հլու, հեզաբար
կրեն իրենց վրա ընկած սոցիալական ծանր լուծը։ Կրոնական բարոյականու-
թյունն աղճատում է մասսաների ստեղծագործական նախաձեռնությունը, քա-
ղաքական ակտիվությունը, նրանց դարձնում ինքնամփոփ, սահմանափակ,
պասսիվ։ «Ուղղափառության սրբությունը նրանով է թանկ,— նշում է Վ. Ի.
Լենինը,— որ ուսուցանում է «անտրտո՛ւնջ» կրել վիշտը։ Իսկապես, այս ի՜նչ
շահավետ սրբություն է տիրապետող դասակարգերի համար։ Երբ հասարակու-
թյունն այնպես է կառուցված, որ չնչին փոքրամասնությունն օգտվում է
հարստությունից ու իշխանությունից, իսկ մասսան շարունակ «զրկանքներ» է
կրում ու «ծանր պարտականություններ» կատարում, ապա բոլորովին բնական
է շահագործողների համակրությունը կրոնի հանդեպ, որն ուսուցանում է
«անտրտունջ» տանել երկրային դժոխքն ի սեր երկնային, իբրև թե, դրախտի»
(Երկեր, հատ. 5, էջ 446)։

Եկեղեցականները ամենայն ջանասիրությամբ աշխատում են քողարկել
կրոնական բարոյականության դասակարգային բնույթը, այն ներկայացնել
համամարդկային, ապադասակարգային ու հավիտենական։

Իմպերիալիզմի էպոխայում կրոնական բարոյականությունը սերտաճում է
բուրժուական գաղափարախոսության հետ։ Նեոթոմիստները (Ժակ Մարիտեն,
Կրոնին, Էտիեն Ժիլսոն, Բուրկե, Ջ. Էստերլե) վերակենդանացնում են միջնա-
դարյան սխոլաստ Թովմա Աքվինացու ռեակցիոն հայացքները և աշխատում
դրանց օգնությամբ պաշտպանել արդի իմպերիալիստական բուրժուազիայի
շահերը։ Նրանք գտնում են, որ ժամանակակից պայմաններում գլխավոր սո-
ցիալական պրոբլեմը գտնվում է կրոնի և բարոյականության սահմաններում։
Նեոթոմիստները հայտարարում են, որ մարդու բարոյական իդեալը գտնվում
է հանդերձյալ կյանքում։ Նրանք ասում են, որ մեր բանականությունը միայն
կարող է հայտնագործել աստծո կողմից նախապես սահմանված բարոյական
օրենքը։ Մարդու ազատ ընտրությունը բարոյական չէ, ասում են նրանք, առա-
քինի է միայն «ավտոնոմիայի ազատությունը», երբ մարդ սահմանափակում
է իրեն, կտրվում արտաքին միջավայրից ու դառնում է ասկետ։ Նեոթոմիստ-
ները չեն ընդունում բարոյական պրոգրեսի գաղափարը, բարբաջելով, որ մի-
ջին դարերում մարդկանց բարոյական մակարդակը ավելի բարձր էր, քան
այժմ։ Նրանք իրենց բարոյախոսության մեջ առաջնորդվում են Ժակ Մարիտենի
նշանաբանով. մարդկանց բարոյական կերպարը բարձր պահելու համար «լա-
վագույնը, ինչ որ կարող է անել փիլիսոփան, դա փիլիսոփայության նվաս-
տացումն է սրբերի իմաստության առջև»։

***

Կրոնական բարոյախոսությունը բոլոր անտագոնիստական հասարակար-
գերում ձգնել է արդարացնել սոցիալական անհավասարությունը, մասնա-
վոր սեփականությունը և մարդու շահագործումը մարդու կողմից։ Եկեղեցա-
կանները միշտ հանդես են եկել ասածը անունից և քարոզել, որ դասակարգերը
միշտ գոյություն են ունեցել և միշտ գոյություն են ունենալու։ 1939 թ. նոյեմ-
բերի 1-ին Պիոս XII պապը ամերիկյան հոգևորականությանը հասցեագրած
իր ուղերձում ասում էր. «Բոլոր ժամանակների պատմությունը մեզ սովորեց-
նում է, որ միշտ եղել են հարուստներ ու աղքատներ և միշտ էլ լինելու են հա-
րուստներ ու աղքատներ»։

Հազարավոր տարիներ «սուրբ» հայրերը մասնավոր սեփականության գո-
յությունը և մարդու շահագործումը մարդու կողմից համարել են բարոյական
և բնական։ Նրանք աշխատավորներին քարոզել են չմեղանչել աստծո դեմ,
չընդդիմանալ շահագործողներին, լինել հլու ու հնազանդ տերերին և նույնիսկ
սիրել նրանց։ Մահմեդականների ղուրանում, հրեաների թալմուդում, քրիս-
տոնյաների ավետարանում բազմաթիվ ձևերով արդարացվում է սոցիալական
ստրկությունը։ Աստվածաշունչը սովորեցնում է. «Ծառաներն ամեն բանի մեջ
վախով թող հնազանդ լինեն իրենց տերերին, ոչ միայն նրանց, որոնք հեզ են
ու բարի, այլև նրանց, որոնք բիրտ են ու դաժան» (Պետրոսի Ա. Ընդհանրական
թուղթը, գլուխ 2-րդ, 18)։ Թովմա Աքվինացին ուղղակի հայտարարում էր, որ
«ստրկությունն աստվածային օրենք է»։ Նրա հետնորդները ոչ միայն կրկնում,
այլև աշխատում են «հիմնավորել» այդ։ Հռոմի Լևոն XIII պապը գտնում է,
որ ինչպես կենդանի օրգանիզմում բնության կողմից տրված ամեն մի օրգան
անհրաժեշտ է և ունի իր ֆունկցիան, այնպես էլ հասարակության մեջ արարչի
կողմից ստեղծված դասակարգերն են։ Նա հայտարարում է, որ մասնավոր սե-
փականությունը մարդկային բնության անքակտելի հատկությունն է և «հան-
դիսանում է կենդանական աշխարհի նկատմամբ մարդու ունեցած գլխավոր
տարբերությունը»։

Սոցիալական ստրկությունն «արդարացնելու» կրոնական բարոյախոսու-
թյան բոլոր դրույթներն ամրապնդվում են նաև գործով։ Շատ եկեղեցիներ ու
վանքեր հանդիսացել և հանդիսանում են խոշոր մասնավոր սեփականատերեր
և շահագործողներ։ 16-րդ դարում Ռուսաստանում վանքերին էր պատկանում
ամբողջ հողերի մեկ երրորդը, որտեղ շահագործվում էին ավելի քան 650.000
գյուղացիներ։ Մինչև հեղափոխությունը էջմիածնի «Մայր տաճարը» ուներ 47
հազար դեսյատին ընտիր հող։ Միայն 1914 թ. նրա եկամուտը կազմեց ավելի
քան մեկ միլիոն ռուբլի։ Վատիկանը սերտ կապերի մեջ է մոնոպոլիստական
բուրժուազիայի հետ, մի շարք խոշոր ակցիոներական ընկերությունների փա-
յատեր է, ունի իր բանկերը և գործարքներ է կատարում զանազան տրեստների
ու սինդիկատների հետ։ Վատիկանի հողերն այժմ գնահատվում են 50 միլիարդ
լիր։ Նապոլեոն Բոնապարտը խոստովանում էր, որ առանց կրոնի դժվար կլի-
նի կեղեքել մասսաներին և մնալ անպատիժ։ «Կրոնը,— գրում էր նա,—
հավասարության գաղափարը տեղափոխում է երկինք, իսկ դա թույլատրում է
հարուստներին ապրել, չվախենալով, որ աղքատներն իրենց կոչնչացնեն...
Գույքային անհավասարությունը չի կարող գոյություն ունենալ առանց կրոնի։
Երբ մեկը մահանում է քաղցից, իսկ դրա կողքին մյուսը խեղդվում է շքեղու-



թյան մեջ, նա չի կարող դրա հետ հաշտվել, եթե չկա հեղինակություն, որն ասի,
այդպիսին է երկնային կամքը,— երկրի վրա վայել է լինել և՛ աղքատ, և՛ հա-
րուստ, իսկ հանդերձյալ աշխարհում, հավիտենականության մեջ, բարիքները
կբաշխվեն այլ կերպ»։ Մարքսիզմի կլասիկները միշտ էլ նշել են, թե ինչպիսի
կրքոտություն է ցուցաբերում կրոնը սոցիալական ստրկությունն արդարացնելու
գործում։

«Քրիստոնեության սոցիալական սկզբունքները,— գրել է Կ. Մարքսը,—
արդարացնում էին անտիկ ստրկությունը, փառաբանում էին միջնադարյան
ճորտատիրությունը և կարիքի դեպքում գիտեն նաև պաշտպանել, թեկուզ և
խղճուկ ծամածռությամբ, պրոլետարիատի ժամանակակից ճնշումը»։
(К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. V, стр. 173)։

***

Ծանոթանալով սուրբ գրքերին՝ կարելի է մտածել, որ կրոնը մարդասի-
րության դրոշակակիրն է։ Իրականում նրա «մարդասիրական» պատվիրանն-
րը խիստ վերացական են, իրար հակասող, անսկզբունքային ու կեղծ։
Կրոնը խոսքով շատ բան է ասում, իսկ գործով թշնամանք և ատելություն
է սերմանում տարբեր ժողովուրդների և ազգերի միջև։ Ամեն մի կրոն իր հա-
վատացյալներին սովորեցնում է թշնամաբար վերաբերվել և հավատ չընծայել
դեպի այլադավները, օտարազգիները, արհամարհել նրանց, կասկածանքով
նայել նրանց վրա և զգուշանալ նրանցից։ Կրոնական բարոյականությանը
խորթ է ազգերի և ժողովուրդների բարեկամությունը։ Դարեր շարունակ Իսլա-
մը թշնամանք և ատելություն է սերմանում մահմեդականների մեջ դեպի քրիս-
տոնյաները և ամեն կերպ ոգեշնչում ազգամիջյան կոտորածներն ու ջարդերը։
Քրիստոնեությունն էլ իր հերթին նույն կերպ է վարվում մահմեդականների և
հրեաների նկատմամբ։ Սուրբ գրքերը թեորիապես «արդարացնում են» կրոնա-
կան նացիոնալիզմը, որն ըստ էության հակահումանիստական քարոզ է։ Աստ-
վածաշնչում, երկրորդ օրինաց գրքում ասվում է՝ որպեսզի ժողովուրդը սուրբ
մնա, արգելվում է ուրիշ ազգերի հետ հաղորդակցություն ունենալ։ «Այն ազ-
գերը, որոնք քեզանից մեծ են ու զորավոր, եթե աստված քո ձեռքը տա, պետք
է ոչնչացնես։ Նրանց հետ ուխտ չանես և ոչ էլ ողորմություն. նրանց հետ խնա-
միություն չանես, աղջիկդ նրանց տղային չտաս և նրանց աղջիկը քո տղային
չառնես» (գլուխ 7, 2—3)։ Կրոնը թշնամություն է սերմանում նաև նույն դա-
վանանքն ունեցող տարբեր ազգերի ու ժողովուրդների, ինչպես նաև ռասա-
ների միջև։ Այսպես, օրինակ, նա թշնամություն է սերմանում քրիստոնեու-
թյունը դավանող ֆրանսիացիների և գերմանացիների միջև, բողոքականների
ու կաթոլիկների միջև։
Կրոնական «մարդասիրությունը» սովորեցնում է չհակառակվել չարին, սի-
րել թշնամիներին, բարությամբ պատասխանել նրանց չար ձեռնարկումնե-
րին։ Միայն դրանով կարելի է երկնային հոր նախախնամությանն արժանանալ
և հանդերձյալ կյանքում վայելել նրա սերն ու համակրանքը։ Աստվածաշըն-
չում ասված է. «Չարին մի հակառակվեք և եթե մեկը ապտակում է աջ այ-
տիդ, ձախն էլ շրջիր թող ապտակի։ Եթե մեկն ուզում է շապիկդ հանել, վե-
րարկուդ էլ տուր... Սիրեցեք ձեր թշնամիներին, օրհնեցեք ձեզ անիծողներին,
լավություն արեք նրանց, որոնք ձեզ ատում են և աղոթեք նրանց համար,

որոնք ձեզ չարչարում ու հալածում են, որպեսզի ձեր երկնային հոր զավակնե-րը լինեք («Ավետարան ըստ Մատթեոսի», գլուխ 5-րդ, 39—44):

Կրոնական «հումանիզմի» էությունն է արտահայտում նաև 1948 թ. Վատիկանում կարդինալ Վան Ռոյի մշակած «Միջազգային բարոյականության կաթոլիկական կոդեքսը»: Այդ կոդեքսում պատապարտվում է մի շարք երկրների՝ իրենց ազգային ունեցվածքը տնօրինելու և օգտագործելու իրավունքը: Նշվում է, որ եթե մի որևիցե երկրի անհրաժեշտ են ռեսուրսներ, որոնք կան մեկ ուրիշ երկրի տերիտորիայում և «օգտագործվում են անբավարար», ապա թույլատրվում է «այդ ռեսուրսները խլել»: Պետության սուվերենության սկզբունքը հայտարարվում է «սուտ» և «քրիստոնեական բարոյականության կողմից ժխտվող»: Կոդեքսը գտնում է, որ ամեն մի պատերազմող երկիր իրավունք ունի գործադրել օդային, ստորջրյա, քիմիական և բակտերիոլոգիական միջոցներ: Նա մերժում է նաև պատերազմի ժամանակ խաղաղ բնակչության պաշտպանության գաղափարը, գտնելով, որ ժամանակակից պայմաններում «քաղաքացիական բնակչությունը դադարել է անմեղ լինելուց»:

Կրոնական «մարդասիրությունը» օրգանապես հակադիր, խորթ և օտար է սոցիալիստական հումանիզմին: Սոցիալիստական հումանիզմը իր սուր ծայրով ուղղված է մասնավոր սեփականության և մարդու կողմից մարդու շահագործման դեմ: Նրա գերագույն սկզբունքն է՝ բոլոր ազգերի և ռասաների աշխատավոր մասսաների լրիվ ազատագրումը սոցիալական ստրկությունից և անհատի բազմակողմանի զարգացումը: Սոցիալիստական հումանիզմը ամենաբարձր տիպի մարդասիրություն է, որը բոլոր ազգերին և ռասաներին դիտում է իրար հավասար և ըստ արժանվույն է գնահատում մարդուն, որպես ամենաթանկ կապիտալ:

***

Կրոնական բարոյախոսության՝ մարդու աշխատանքի հանդեպ ունեցած վերաբերմունքի մեջ կան իրար հակասող շատ դոգմաներ: Այստեղ նկատելի է արհամարհական վերաբերմունքը դեպի աշխատանքը: Դա պայմանավորված է աստծո կողմից աշխարհի ստեղծման, բնության և հասարակության մեջ որևիցե բան փոխելու անհնարինության կրոնական դրույթներով: Քանի որ միակ ստեղծագործ ուժը աստվածն է, ուրեմն մարդը, ըստ կրոնի, երկրի վրա ոչինչ փոխել կամ ստեղծել չի կարող, ուրեմն ամեն մի աշխատանք անիմաստ է, աննպատակ և ապարդյուն: Աստվածաշունչը սովորեցնում է. «Ունայնություն ունայնությանց, ամեն բան ունայնություն է: Ի՞նչ օգուտ կարող է ունենալ մարդ իր կատարած աշխատանքից» (Գիրք ժողովողի, գլուխ 1, 2—3): «Ինչ որ եղել է, նույնը պիտի լինի, ինչ որ գործում էր, նույնը պիտի գործի և արևի տակ երբեք նոր բան չկա» (9): «Արևի տակ կատարված բոլոր գործերն էլ ունայնություն են և հոգու տանջանք» (14—15):

Կրոնական բարոյախոսությունը հավատացյալներին ներշնչում է, որ ֆիզիկական աշխատանքի նման, աշխարհի ճանաչողությունն ու մտավոր աշխատանքն էլ մարդու համար անիմաստ են ու անօգուտ, վնասակար, վշտաբեր «հոգու տանջանք»: Աստվածաշնչում գրված է, որ «շատ իմաստության մեջ շատ տրտմություն կա և իր գիտությունն ավելացնողը իր վիշտն է ավելացնում» (Գիրք ժողովողի, գլուխ 1, 17—18): Աշխատանքը, սովորեցնում է կրո-



նը, դա երկրային, անցողիկ աշխարհի վշտի բեռ է, որից բարեպաշտները կազատվեն միայն հանդերձյալ կյանքում: Բուդդայական կրոնն ուսուցանում է, որ դրախտում միայն մարդիկ ի վիճակի կլինեն ազատվել ամեն տեսակ աշխատանքից: Նա դրախտը նկարագրում է որպես նիրվանա-անգործության թագավորություն: Չնայած մասնակի տարբերություններին, դրախտը հիմնականում նույն ձևով են նկարագրում և քրիստոնեությունը, և իսլամը, և հրեական կրոնը: Քրիստոնեությունը աշխատանքի վրա նայում է որպես աստծո կողմից սահմանված «մարդկային սեռի պատիժ», «աստծո անեծք՝ նախածին մեղքի համար»: Եկեղեցու հայրերից Տերտուլիանոսը գտնում էր, որ «Իրն իր բնական վիճակում դա աստծո ստեղծագործությունն է, իսկ աշխատանքը, որ նրան ձևափոխում է, դա սատանայի ստեղծագործությունն է»:

Սակայն շահագործող դասակարգերի շահը պահանջում է, որ աշխատավորները լինեն ջանասեր ու սիրեն աշխատանքը: Այստեղ շահագործողներին նորից օգնության է հասնում և իր ծառայություններն է առաջարկում կրոնը՝ հոգևոր մանիպուլյացիաների վաստակավոր սրբությունը: Նա քարոզում է, որ շահագործվողները պետք է սիրեն իրենց աշխատանքը, քանի որ «աշխատանքը սրբություն է», «աշխատանքը աստծո ստեղծագործությունն է» և որ «Քրիստոսը ինքն էլ աշխատավոր էր»:

Մեր օրերում կրոնական բարոյախոսներն աշխատում են վերանայել աշխատանքի նկատմամբ իրենց նախկին վերաբերմունքը: Ֆրանսիական կաթոլիկ աստվածաբան Շենուն գտնում է, որ քրիստոնեության մեջ պետք է լրացնել նախկին պակասը, ստեղծել «աշխատանքի թեոլոգիա»: Այդ նկատառումով էլ 1955 թ. Պիոս XI պապը հայտարարեց, որ այսուհետև եկեղեցին նույնպես ամեն տարի տոնելու է Մայիսի 1-ը որպես «աշխատավոր սուրբ Հովսեփի» տոն:

Կրոնական բարոյախոսությունը գնալով ավելի շատ է պահանջում, որ հավատացյալները լավ աշխատեն, քանի որ աշխատանքը «աստվածահաճո գործ է», որ անհրաժեշտ է «աշխատել և աղոթել», «աշխատել մրջյունների և մեղուների պես», զգալ «աշխատանքի գեղեցկությունը» և այլն:

***

Կրոնական բարոյախոսությունը կնոջը չի համարում տղամարդուն հավասար մարդ: Միանգամայն կեղծ են ժամանակակից բազմաթիվ եկեղեցականների պնդումները, որ իբր թե կրոնը կանանց լավագույն բարեկամն է, որ առանց կրոնի և աստծո կանանց դժվար կլինի ապրել: Առավել կեղծ են և ապակողմնորոշող հատկապես սուրբ հայրերի այն քարոզները, որ իբր կանանց հարցի լուծումը հնարավոր եղավ միայն քրիստոնեության շնորհիվ: Նման քարոզի հանդիպում ենք Ն. Վասիլևայի «Կինը քրիստոնեության մեջ» հոդվածում, որը տպված է Մոսկովյան պատրիարքության ամսագրերից մեկում:

Կրոնը դարեր շարունակ պաշտպանել, գովերգել և սրբացրել է կանանց ստրկացված վիճակը, ամեն կերպ ոտնահարել նրանց իրավունքները և մարդկային արժանապատվությունը: Հայտնի է, որ քրիստոնյա եկեղեցականները 585 թ. Մակոնի վեհաժողովում հատուկ քննեցին այն հարցը, թե արդյոք կինը հոգի ունի թե ոչ: Բազմաթիվ վեճերից հետո, միմիայն մեկ ձայնի առա-

վելությամբ, սուրբ հայրերը ձևականորեն ընդունեցին, որ կինը հոգի ունի։ Եկեղեցու հայրերից Աֆանասին հայտարարում էր, որ կինը «այծից էլ զզվելի է և սատանայից էլ վտանգավոր»։ Միջին դարերում կաթոլիկ եկեղեցին հորինեց այն առասպելը, որ իբր թե կանայք ընդունակ են կապերի մեջ մտնելու սատանայի հետ և կախարդ դառնալու։ Կաթոլիկ եկեղեցին ինկվիզիցիայի տարիներին Գերմանիայում, Ֆրանսիայում, Իսպանիայում և այլ երկրներում խարույկների վրա այրեց տասնյակ հազարավոր կանանց, մեղադրելով նրանց կախարդության մեջ։

Կրոնական բարոյախոսությունը սովորեցնում է, որ տղամարդը բոլոր տեսակետներից էլ բարձր է կնոջից, ուստի և իրավունք ունի կնոջ հետ վարվելու ցանկացած ձևով։ Ըստ իսլամի՝ եթե տղամարդը կնոջն սպանում է, պետք է տուգանք վճարի երկու անգամ ավելի պակաս այն տուգանքից, որը սահմանվում է տղամարդ սպանելու համար։ Մահմեդականները կնոջ գերեզմանը պատրաստելիս փոսը փորում են մեկ քառորդով ավելի խոր, քան տղամարդունը, որպեսզի հանդերձյալ կյանքում էլ տղամարդը և կինը իրար հավասար չլինեն, որ կինն ավելի ցածր լինի։ Ըստ իսլամի կրոնական դատի ժամանակ կնոջ վկայությունը ոչ մի արժեք չի ներկայացնում և ապացույց չի համարվում։ Հրեական սինագոգում աղոթքն սկսելու համար ամենապակասը պետք է 10 տղամարդ լինի, իսկ կանայք հաշվի չեն առնվում, որովհետև աստծո առաջ նրանք մարդ չեն համարվում։ Կրոնական բարոյականությունը նույնիսկ թույլ չի տալիս, որ կանայք հագնվեն այնպես, ինչպես հարմար է իրենց։ Մուսուլմանական ժողովուրդների մոտ կանայք ստիպված են կրել ֆարաջա, չադրա, չաչվան, յաշմակ և այլն։ Այդ բոլորը համարվում է աստծո կողմից սահմանված կարգ։

Կրոնական բարոյականությունը թույլատրում է բազմակնություն, անչափահասների ամուսնություն, աղջիկների առևանգում ու վաճառք, գովերգում կանանց մենակեցությունն ու փակվածությունը։ Ըստ Ղուրանի տղամարդն իրավունք ունի անհնազանդ կնոջը առանց դատի սպանել (գլուխ 4, տուն 19)։ Ըստ հրեական կրոնի «տղամարդը քանի կին ուզում է, կարող է ունենալ, միայն թե նրանց նյութապես ապահովի»։ Իսլամը նույնպես ամուսնությունից բացի, տղամարդկանց թույլատրում է «փնտրել նաև ուրիշ բավականություն ունեցվածքի սահմաններում»։ Միաժամանակ տղամարդկանց առջև նա պայման է դնում. «այն կանանց, որոնց դուք օգտագործում եք, տվեք նրանց հասանելիք վարձատրությունը» (Ղուրան, գլուխ 4, տուն 28)։

1930 թ. Պիոս պապն իր ուղերձներից մեկում հայտարարեց, որ կինը պետք է լինի տղամարդու սեփականությունն ու ստրուկը, որ կնոջ մասնակցությունը հասարակական կյանքին փչացնում է նրա կանացիությունը։

Կոմունիստական բարոյականությունը կնոջ նկատմամբ ունեցած իր վերաբերմունքով արմատապես հակադրվում է կրոնական բարոյականությանը։ Նա կնոջը դիտում է որպես տղամարդուն իրավահավասար քաղաքացի, առանց որի հնարավոր չէ ստեղծել ամենաբարձր ամուսնաձևը, ամրացնել սովետական ընտանիքի հիմքերը և մոնոգամ ընտանիքն ազատել իր նեխված հավելումներից։ Պատմությունը տվել է հազարավոր փաստեր, որ իր ծագման սկզբից մինչև սոցիալիստական ռևոլյուցիան մոնոգամ ընտանիքը ենթարկված լինելով այս կամ այն կրոնի դոգմաներին ու կանոններին, իրականում կրկնակի է ճնշվել և այդ ճնշումը, ամենից առաջ, ընկել է կնոջ ուսերին։



***

Կրոնական բարոյախոսությունը քարոզում է. «մի գողանա», «մի սպանիր», «մի շնանա», «հարգիր ծնողներիդ», «հեզությամբ տար ամեն մի տանջանք», «չարին մի հակառակվիր», «սիրիր թշնամիներիդ» և այլն։ Առաջին հայացքից թվում է, որ ամեն ինչ լավ է և դրանք ընդունելի են բոլորի կողմից։ Բայց իրականում ում են մատուցվում այդ պատվիրանները անտագոնիստական հասարակարգում։ Դա որոշում են իրենք, եկեղեցու հայրերը, որոնք հանդիսանում են միջնորդ հավատացյալների և աստծո միջև։ Այդ պատվիրանները մատուցվում են, իհարկե, շահագործվողներին։

Պարտքի կատեգորիան, որն արտահայտում է մարդու պարտականությունները հասարակության, հայրենիքի, պետության, դասակարգի, կոլեկտիվի, ընկերոջ, ընտանիքի նկատմամբ, կրոնի կողմից մեկնաբանվում է յուրովի։ Նա սովորեցնում է, որ պարտքը պայմանավորվում է ոչ թե օբյեկտիվ իրականությամբ, հասարակական հարաբերություններով, այլ ամենակարող տիրոջ կամքով։ Ուրեմն մարդու պարտքը կապված է աստծո ողորմածությամբ սահմանված այն սոցիալական դրության հետ, որի մեջ նա ապրում է։ Սեփականատերերի պարտքն է շահագործել, իսկ աշխատավորների պարտքը՝ շահագործվել, լինել հեզ ու հնազանդ, չտրտնջալ։ Հռոմի պապերից Լևոն XIII-ն իր պաշտոնական շրջաբերականում դիմելով հավատացյալ հոտին՝ հորդորում է. «Պահեցեք ձեր հոգին խաղաղության մեջ, հույս դնելով քրիստոնյա տերերի վրա, որոնք այնպիսի խելացիությամբ ղեկավարում են ձեր աշխատանքային առօրյան... սիրեցեք ձեր տերերին... վնաս մի հասցրեք նրանց սեփականությանը, մի վիրավորեք ձեռնարկատերերին»։

Խղճի կատեգորիան կրոնական բարոյախոսության կողմից նույնպես մեկնաբանվում է յուրովի։ Կրոնը ժխտում է մարդկանց զանազան արարքների, արդար և անարդար, խղճով և անխիղճ գործելակերպի գնահատման օբյեկտիվ չափանիշը։ Կրոնը սովորեցնում է, որ մարդը գործում է ոչ թե իր ներքին համոզմունքներին համապատասխան, այլ առաջնորդվում է գերբնական ուժերի կանխորոշմամբ, ճակատագրի կամ ամենազոր աստծո կամքի թելադրանքով։ Այսպիսի պայմաններում մարդու վարքագծի, խղճի, բարոյական պատասխանատվության գիտակցման նշանակությունը ոչ մի արժեք չի ունենա։

Խղճի կատեգորիայի կրոնական մեկնաբանության մեջ եղած հակասությունը հատկապես ցայտուն է երևում կաթոլիկ բարոյախոսների մոտ։ Նրանք մի կողմից, քարոզում են, որ խիղճը ազատ է, իսկ մյուս կողմից՝ գտնում, որ խիղճը զրկված է ինքնուրույնությունից և գտնվում է աստծո խնամակալության տակ։ Դա, իհարկե, ինքնանպատակ չէ, քանի որ կաթոլիկ բարոյախոսներն ամեն կերպ «արդարացնում են» իշխող դասակարգերի խղճի ազատությունը անխիղճ շահագործման համար, մինչդեռ աշխատավոր մասսաներին թույլ չեն տալիս նույնիսկ խղճի ազատության բաժին ունենալ։

Եկեղեցականները շատ հաճախ բարբաջում են այն մասին, որ «աստված մարդու խիղճն է»։ Դրանով նրանք միանգամից երկու նպատակ են հետապնդում։ Նախ՝ ցանկանում են ապացուցել աստծո գոյությունը և երկրորդ՝ հավատացնել, որ խիղճը սերում է աստծուց և ամբողջովին նույնանում է նրա հետ։

Ըստ կրոնական բարոյախոսության մեղք գործող և հետո խղճի խայթ

զգացող ու զղջացող մարդն ավելի մոտ է աստծուն, քան ոչ մի անբարոյական արարք չկատարող բարեպաշտը։ Մատթեոսի ավետարանում ասվում է, որ աստված այնքան գթասիրտ է, որ ամեն մի մեղք գործող կարող է նույնիսկ չկասկածել, որ տերը իր մեղքերին թողություն կտա, և այն էլ ոչ թե մեկ, այլ բազմաթիվ անգամ։ Պարզ է, թե խղճի հետ կապված նման սկզբունքայնությամբ հագեցած ներշնչումները ինչպիսի հետևանքների կարող են հասցնել հավատացյալներին։ Ըստ երևույթին խղճի նման ըմբռնում է ունեցել Ստավրապոլի երկրամասում ծառայող եկեղեցական հայր Ալեքսանդրը, որը հույսը դնելով աստծո գթասրտության վրա և առանց խղճի խայթ զգալու միաժամանակ սեռական կյանքով ապրում էր ինչպես իր տնային ծառայողի, այնպես էլ նրա 14-ամյա աղջկա հետ։

1957 թ. ՍՍՌՄ-ում հրապարակվող քրիստոնյա-բապտիստների Համամիութենական խորհրդի պաշտոնական օրգանի հոդվածներից մեկում փառաբանվում է առասպելական մարգարե Սամվելի մոր՝ Աննայի արարքը և նշվում. «Ինչքան քիչ են մեզ մոտ Աննայի նման մայրերը։ Նա պատրաստ է հանուն աստծո թագավորության շահերի զրկվել իր տղայի գանգրահեր գլխից, մանկական ծիծաղից, սիրալիր թոթովանքից... Ամեն ինչից, որն այնքան թանկ է յուրաքանչյուր մոր համար։ Նա պատրաստ է նրան դնել աստծո զոհասեղանին — հենց որ կարվի կրծքից և սկսի աճել։ Նա պատրաստ է տալ իր տղային աստծուն մշտապես»։ Անկասկած է, որ նման քարոզները կբթացնեն, կկուրացնեն և կխեղդեն մարդկային խիղճը, կմթագնեն գիտակցությունը և պատճառ կհանդիսանան անխիղճ հանցագործությունների։ Այդ մասին է վկայում 1959 թ. մեր երկրում կատարված փաստը, թե ինչպես Բորոդին ամուսինները զատկի նախօրյակին սրբիչով խեղդեցին իրենց 8 տարեկան տղային, որպեսզի զոհ մատուցեն աստծուն։

Անխիղճ է ոչ միայն կրոնական բարոյախոսությունը, այլ նաև կրոնի սպասավորների բարոյականությունը։ Պոչաևյան վանքի հայր Նիկոլայը «խղճալով» հավատացյալներին, որոնք հեռու տեղերից գալիս էին վանքին նվիրատվություններ անելու, որոշեց «օգնել» նրանց։ Նա ասաց, որ կարիք չկա անձամբ գալու վանք, քանի որ ինքը ավելի մոտ է աստծուն և հավատացյալները կարող են վանքին նվերներ հանձնել հեռակա կարգով, իր միջոցով։ Միայն երկու տարվա ընթացքում նա հավատացյալներից փոստով ստացավ հազարից ավելի ծանրոցներ՝ վանքին հանձնելու համար, որոնց ընդհանուր քաշը անցնում էր 10 տոննայից, և 500 դրամական փոխադրություն՝ 10 հազար ռուբլի ընդհանուր գումարով։ Յուրացնելով այդ բոլորը, հայր Նիկոլայ Տարասովը ծլկեց վանքից։

Պատվի կատեգորիան արտահայտում է մարդու քաղաքացիական և անձնական արժանապատվությունը, նրա վարմունքի հասարակական նշանակությունը և բարոյական արժեքը։ Այն սերտորեն կապված է պարտքի կատեգորիայի հետ։ Ըստ կրոնական բարոյախոսության ինչպես պարտքը, այնպես էլ պատիվը գոյություն ունեն միայն աստծո ողորմածությամբ։ Ինչքան էլ չար ու դաժան լինեն տերերն այս աշխարհում, միևնույն է, աշխատավորները պետք է նրանց ամենաբարձր պատիվը տան, որպեսզի հանդերձյալ կյանքում իրենք էլ պատիվ վայելեն։ Քրիստոնեությունը սովորեցնում է. «Այն բոլորը, որ ծառայության լծի տակ են, իրենց տերերին ամեն տեսակի պատվի թող արժանի համարեն»։

Կրոնը քարոզում է, որ աստված աշխարհը գիտակցաբար ստեղծել է այնպես, որ լինեն դասակարգեր և շահագործում, որպեսզի նա, հանդիսանալով միակ «անսխալականը», կարողանա փորձել մարդկանց ու տեսնել նրանց արժանիքները։ Պիոս XII պապը 1939 թ. նոյեմբերի 1-ի իր ուղերձում նշում է, որ աստված գերազանցորեն տնօրինելով մեր ճակատագրերը, սահմանել է, որ աշխարհում լինեն հարուստներ և աղքատներ, որպեսզի կարողանա լավ փորձել մեր մարդկային արժանապատվությունը»։ Քրիստոնեական բարոյականության՝ մարդու պատվի մասին ունեցած վերաբերմունքի առթիվ դիպուկ է նկատել Կ. Մարքսը. «Քրիստոնեության սոցիալական սկզբունքները դրվատում են արհամարհանքը մարդու նկատմամբ, վախկոտությունը, ինքնանվաստացումը, հնազանդությունը, հեզությունը»։ Կրոնական բարոյականության մեջ պատվի կատեգորիան հակասության մեջ լինելով մարդկանց աշխատանքային գործունեության, հասարակական պարտքի և խղճի հետ, զրկվում է բարոյական բովանդակությունից։ Այս և նման կարգի երևույթների արդյունք է այն, որ 19-րդ դարի մտածող, կրոնի խոշոր ընդդիմախոս Գալուստ Կոստանդյանը կրոնական բարոյականությունը որակեց որպես «սրբազան անբարոյականություն»։

***

Կրոնական բարոյախոսությունը՝ դա մարդկանց վարքագծի իրար հակասող նորմերի, խայտաբղետ դրույթների ու դոգմաների անսիստեմ մի հավաքածու է։ Ունենալով դասակարգային բնույթ, այն աչքի է ընկնում իր անսկզբունքայնությամբ, պահպանողականությամբ և հենվում է աստծո հեղինակության վրա, ճիշտ չի արտահայտում հասարակության զարգացման կենսական պահանջները, աշխատավոր մասսաների և առաջավոր մարդկության շահերն ու նպատակները։

Կրոնական բարոյականությունն արմատապես հակադիր է կոմունիստականին, ուստի և հակադարձ համեմատական հասարակության զարգացմանը։ Կոմունիստական բարոյականության հաղթանակը կրոնականի նկատմամբ պատմականորեն նույնպիսի անխուսափելի անհրաժեշտություն է, ինչպես կոմունիզմի հաղթանակը կապիտալիզմի նկատմամբ։ Կոմունիստական բարոյականությունը պահանջում է՝ անհաշտ պայքար մղել կրոնի և կրոնական բարոյականության դեմ, ամեն կերպ բացահայտել նրա կեղծությունն ու վնասակարությունը կոմունիզմի կառուցման գործում։

ՄԱՐՔՍԻԶՄ-ԼԵՆԻՆԻԶՄԻ հիմունքների դպրոց

# ԿՈԼԵԿՏԻՎԸ ԵՎ ԱՆՀԱՏԸ

Ս. ԵԼԻԶԱՐԵՆԿՈ

Ինչով էլ որ զբաղվի պարտիական կազմակեր-
պությունը, ինչ հարցեր էլ որ լուծի, նա գործում
է՝ հենվելով կոլեկտիվի վրա, ձգտում շարժման
մեջ դնել կոլեկտիվի ամբողջ ուժերը, առավելա-
գույն չափով օգտագործել բոլոր հնարավորու-
թյունները: Կոլեկտիվը սերտորեն համախմբելու,
բոլոր աշխատավորների համատեղ, համերաշխ
գործունեությունը կարգավորելու, կոմունիստական
շինարարության կոնկրետ խնդիրների կենսագործ-
ման նպատակով նրանց ջանքերը գլխավորելու
և ուղղություն տալու հմտությունն է պարտիա-
կան-քաղաքական աշխատանքի ողջ էությունը:

Կոլեկտիվում ճիշտ դրված կազմակերպական
ու դաստիարակչական աշխատանքի միջոցով
միայն կարելի է ապահովել ամենօրյա պար-
տիական ազդեցությունը կոլեկտիվի բոլոր ան-
դամների վրա, հասնել յուրաքանչյուր մարդուն,
բոլորին նպատակամղել ակտիվ, գիտակցական
ստեղծագործության: «Դաստիարակելով առանձին
անհատին,— գրել է սովետական ականավոր
մանկավարժ Ա. Ս. Մակարենկոն,— մենք պետք
է մտածենք ամբողջ կոլեկտիվի դաստիարակու-
թյան մասին: Գործնականում այդ երկու խնդիր-
ները պետք է լուծվեն միայն համատեղ և միայն
մեկ ընդհանուր նվագում: Անհատի վրա մեր ներ-
գործության ամեն մի պահին այն անպայման
պետք է լինի ներգործություն նաև կոլեկտիվի
վրա: Եվ, ընդհակառակը, կոլեկտիվի հետ մեր
յուրաքանչյուր շփումը անպայման կլինի նաև
կոլեկտիվի մեջ մտնող յուրաքանչյուր անհատի
դաստիարակություն»:

### ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅՈՒՆԸ, ԿՈԼԵԿՏԻՎԸ, ՄԱՐԴԸ

Աշխատանքը կոլեկտիվում հմտորեն վարե-
լու, նրա անդամների միջև **կոմունիստական հի-
մունքներին համապատասխան փոխհարաբերու-
թյուններ ստեղծելու** համար անհրաժեշտ է ամե-
նից առաջ պարզել կոլեկտիվի դերը և նրա տեղը
մեր հասարակության կյանքում ամբողջությամբ
վերցրած և յուրաքանչյուր առանձին մարդու
կյանքում:

Պատմական մատերիալիզմը սովորեցնում է, որ
մարդու, որպես գիտակցական, բանական արա-
րածի, կյանքը անիմաստ է հասարակությունից
դուրս: Հասարակության մեջ իշխող արտադրա-
կան հարաբերություններ, քաղաքական կա-
ռուցվածք, գաղափարախոսություն, ահա մարդու,
որպես անհատի, ձևավորման արմատական, հիմ-
նական գործոնները: «Եթե մարդն իր բնությամբ
հասարակական արարած է, ապա նա, հետևա-
պես, միայն հասարակության մեջ կարող է զար-
գացնել իր իսկական բնությունը, և նրա բնու-
թյան ուժի մասին հարկավոր է դատել ոչ թե
ըստ այն ուժի, որ ունեն առանձին անհատները,
այլ ըստ այն ուժի, որ ունի ամբողջ հասարա-
կությունը» — գրում էին Կ. Մարքսը և Ֆ. Էն-
գելսը (Երկեր, 2-րդ հրատ., հատ. 2, էջ 146):
Միաժամանակ պատմությամբ ապացուցված է, որ
միայն սոցիալիստական հասարակությունում են
ստեղծվում անհրաժեշտ իրական պայմաններ ան-
հատի ազատ, **բազմակողմանի** զարգացման հա-
մար: Այն ամենը, ինչով ուժեղ ու փառապանծ
է մեր սովետական մարդը, իր հիանալի, ազնիվ
հատկությունների, իր բոլոր նվաճումների համար
ամենից առաջ նա պարտական է սոցիալիստա-
կան ռևոլյուցիայի հաղթանակին, մեր երկրի սո-
ցիալիստական իրավակարգին, որի տնտեսական
հիմքը արտադրամիջոցների հանրային սեփակա-
նությունն է: Ի տարբերություն մասնավոր սե-



փականության, որը տարաբաժանում է մարդ-
կանց, հանրային սեփականությունը միավորում,
համախմբում է նրանց: Սոցիալիստական հասա-
րակարգը ինքնին այն բարերար միջավայրն է,
որտեղ կոմունիզմի կառուցման համար մղվող
պայքարի պրոցեսում աճում ու կազմավորվում
է նոր տիպի կոլեկտիվ, ձևավորվում է նոր մար-
դը, ապագայի մարդը: Մեր իրավակարգի ուժն
այն է, որ նա իր բնությամբ **կոլեկտիվիստական**
կառուցվածք է: Այդ նշանակում է, որ գլխավոր
տեղն այնտեղ գրավում է կոլեկտիվը: Գերազան-
ցապես կոլեկտիվի միջոցով է մարդը հաղորդակից
դառնում հանուն ժողովրդի բարօրության ծավալ-
ված աշխատանքին, հասարակական գործունեու-
թյանը, անմիջականորեն մասնակցում արտադրու-
թյան, պետական գործերի կառավարմանը: Այս-
տեղ՝ ընկերների ազդեցությամբ, համատեղ աշ-
խատանքի գործնական խնդիրների կենսագործ-
ման պրոցեսում ձևավորվում են նրա հայացքներն
ու համոզմունքները, կազմավորվում են նրա բա-
րոյական հիմքերը, ողջ հոգեկան կերպարը:

Ամենավաղ հասակից մեր մարդը մտնում է
կոլեկտիվի շարքերը, ընկնում հասարակական մի-
ջավայր, սկսում է իր վրա անմիջականորեն զգալ
այդ միջավայրի ազդեցությունը: Մանկական,
դպրոցական կոլեկտիվին փոխարինում է ուսա-
նողական կոլեկտիվը: Եվ, վերջապես, մարդը
մտնում է աշխատանքային, արտադրական կոլեկ-
տիվ, որը նրա վրա առավել մեծ չափով է ազ-
դեցություն թողնում, որովհետև հենց այստեղ,
տնտեսական պլանների ու կուլտուրական շինա-
րարության կենսագործման համար մղվող ամեն-
օրյա համատեղ պայքարում նա իր մեջ մշա-
կում է ամենաարժեքավոր հատկությունը՝ պետա-
կանորեն վերաբերվել հանձնարարված գործին,
խորապես ըմբռնել իր քաղաքացիական պարտքը:
Աշխատանքային կոլեկտիվում կան հասարակա-
կան ինքնագործունեության կազմակերպություն-
ներ: Մտնելով դրանց մեջ, մասնակցելով դրանց
կյանքին ու գործունեությանը՝ մարդը ավելի ու
ավելի է դրսևորում ու բացահայտում իր ընդու-
նակությունները, կազմավորվելով, զարգանալով
և կատարելագործվելով որպես աշխատող և
որպես անհատ: Այստեղից էլ բխում է **հասարա-
կության, ժողովրդի հանդեպ կոլեկտիվի հսկայա-
կան պատասխանատվությունը** իր անդամներից
յուրաքանչյուրի, այն բանի համար, թե ինչպես է
ապրում ու աշխատում նա, նրա դաստիարակու-
թյան համար: Պարտկազմակերպությունն էլ հենց
կոչված է կոլեկտիվում զարգացնելու պատաս-
խանատվության բարձր զգացում, միաժամանակ
այդպիսի զգացում դաստիարակելով յուրաքանչյուր
մարդու մեջ:

Մարդկանց վրա կոլեկտիվի ազդեցության
բնույթն ու ուժը որոշվում են. նախ նրանով, թե
ինչպիսին է ինքը՝ կոլեկտիվը: Այդ կապակցու-
թյամբ էլ հարց է ծագում. իսկ ինչպիսի՞ն պետք
է լինի իսկական սովետական կոլեկտիվը, ի՞նչ
պայմանների առկայությամբ է նա ի վիճակի
կատարել մարդկանց իսկական դաստիարակի իր
դերը:

Հանդիսանալով սովետական հասարակության
մի մասը, սոցիալիստական կոլեկտիվն իր մեջ
կրում է այդ հասարակության բոլոր բնորոշ
գծերը: Սովետական յուրաքանչյուր կոլեկտիվ օր-
գանապես պետք է օժտված լինի մեր ողջ հա-
սարակությանը հատուկ այնպիսի կարևորագույն
գծերով, ինչպիսիք են՝ **կոլեկտիվի անդամների
նպատակների, ձգտումների և բարոյա-քաղաքա-
կան հայացքների միասնությունը, բարձր կազմա-
կերպվածությունն ու գիտակցական կարգապահու-
թյունը թե՛ մեծ, թե՛ փոքր գործերում, ծավալված
աշխատանքը հանուն կոմունիստական պարտիայի
քաղաքականության կենսագործման, ընկերակա-
նությունն ու փոխադարձ օգնությունը աշխատան-
քում և կյանքում, մարդասիրությունը, ուշադրու-
թյունը, զգայունությունը մարդկանց հարաբերու-
թյուններում և այլն:** Կոմունիստների, պարտկազ-
մակերպությունների կարևորագույն պարտակա-
նությունն էլ այն է, որ նրանք յուրաքանչյուր կո-
լեկտիվում հմտորեն արմատավորեն, ամրապնդեն
այդպիսի գծեր:

Ընդգծելով կոլեկտիվիզմի սկզբունքները մեր
ամբողջ կյանքում ամեն կերպ ամրապնդելու ան-
հրաժեշտությունը, Մ. Ի. Կալինինը ասում էր, որ
պետք է կարողանալ **իսկական կոլեկտիվիզմը**
տարբերել մտացածին կոլեկտիվիզմից, դրա սո-
վորական հոտային դրսևորումներից:

Կոլեկտիվը հենց նրանով էլ տարբերվում է
ամբոխից, միմյանց միջև ընդհանուր շատ քիչ
բան ունեցող մարդկանց պատահական կուտա-
կումներից, որ նրա հիմքում միշտ ընկած է խոր,
հաստատուն մի ընդհանրություն, որը հիմնված է
այդ կոլեկտիվի մեջ մտնող մարդկանց հայացք-
ների, համոզմունքների ու ձգտումների միասնու-
թյան վրա և ուղղված է հիրավի բարձր, հիրավի
ընդհանուր նպատակների կենսագործմանը: Վերց-
նենք մարդկանց այն ընկերախումբը, որն ստեղծ-
վել է համատեղ կոնծաբանության կամ մոլեխա-
ղերով տարվելու հիման վրա: Կարելի՞ է արդյոք
այդպիսի ընկերախումբը կոլեկտիվ անվանել:
Հասկանալի է՝ ո՛չ: Ինչպես արդարացիորեն մատ-
նանշել է Ա. Ս. Մակարենկոն, կոլեկտիվն առկա
է, եթե այն միավորում է մարդկանց՝ հասարա-
կության համար իրոք օգտակար գործեր կատա-
րելու նպատակով: Դա աշխատանքային, արտա-
դրական, կուլտուր-լուսավորական, գիտա-հետա-
զոտական, հասարակական գործունեությունն է,
ուսումը, սպորտով, գրականությամբ ու արվես-

տով կբաղվելը և այլն: Ըստ այն բանի, թե ինչ հիման վրա են միավորվում մարդիկ, մենք էլ հենց խոսում ենք արտադրական, դպրոցական, ուսանողական, գիտական, սպորտային կոլեկտիվի, կոմերիտական կամ արհմիութենական կոլեկտիվի, գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվի առկայության մասին: Այդ բոլորը մեկ ընդհանուր ամբողջության տարատեսակներն են, որ ամփոփվում են **սոցիալիստական կոլեկտիվ** միասնական հասկացողությամբ:

Ասվածից բխում է այն հետևությունը, որ ձեռնարկությունում, հիմնարկում, կոլտնտեսությունում, ուսումնական հաստատությունում ամուր, առողջ, բառիս լիակատար իմաստով սովետական կոլեկտիվ ստեղծել կարելի է միայն մարդկանց խոր գաղափարական հիմքի վրա, հանուն տնտեսական ու կուլտուրական շինարարության գործնական խնդիրների կատարման՝ նրանց միավորելու և համախմբելու դեպքում, կազմակերպելով նրանց պայքարը համաժողովրդական շահերի իրականացման, կոմունիստական գաղափարների կենսագործման համար: Իսկ եթե կոլեկտիվի ամրոցը միայն ձևական բնույթ է կրում, երբ մարդկանց, այսպես կոչված, հայացքների ու գործողությունների միասնության տակ թաքնված է կանական անպնիվ մեքենայությունների միջոցով իրենց համար ավելի շատ գռփելու ձգտումը, ապա այդ ոչ մի ընդհանուր բան չունի և ունենալ չի կարող կոլեկտիվի մասին մեր պատկերացման հետ: Եվ պարտկազմակերպությունը, կոմունիստները պետք է անհաշտ լինեն կեղծ կոլեկտիվիզմի ամեն տեսակ դրսևորումների հանդեպ:

Կոլեկտիվի ամրությունը, հստակությունը, նրա բոլոր անդամների համերաշխ, համատեղ աշխատանքը, ստեղծագործական եռանդը կարող են ապահովվել միայն այն պայմանով, եթե կոլեկտիվի ամբողջ կյանքն ու գործունեությունը կառուցվեն իսկական սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքներով: Իսկ դրա համար պարտիական կազմակերպությունն ու ղեկավարությունը պետք է հոգան, որ նորմալ և արդյունավետ գործեն կոլեկտիվը ներկայացնող, նրա կարծիքն ու կամքն արտահայտող բոլոր օրգանները:

Կոլեկտիվի ուժը կախված է այն բանից, թե որքան ակտիվ են գործում հասարակական կազմակերպություններն ու աշխատավորների կամավորական միավորումները՝ արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունները, սպորտային, պաշտպանական, գիտական, տեխնիկական ընկերությունները: Որքան ավելի լավ են աշխատում նրանք, այնքան ավելի ամուր կլինի կոլեկտիվը, նրա կյանքը կդառնա ավելի լիարժեք, իսկ ազդեցությունն՝ ավելի ուժեղ: Ուստի, պարտկազմակերպությունը, կոմունիստները խորապես շահագրգռված են ամեն կերպ զարգացնելու նրանց ինքնագործունեությունը, նախաձեռնությունը և ակտիվությունը:

Կոլեկտիվի կյանքում և գործունեության մեջ սոցիալիստական դեմոկրատիզմի սկզբունքների հաստատումն ու զարգացումը չի կարելի պատկերացնել, եթե կոլեկտիվի անդամները պարբերաբար չհավաքվեն՝ միասին քննարկելու կենսական գործերը. անմիջականորեն կամ իրենց ներկայացուցիչների միջոցով չարտահայտեն իրենց կարծիքը արտադրության, աշխատանքի ու կենցաղի կազմակերպման, դաստիարակության արմատական հարցերի վերաբերյալ: Եվ անհրաժեշտ է այնպես անել, որ ադմինիստրացիան, կոլեկտիվի կառավարման օրգանները ունկնդրեն աշխատավորների ձայնին, մշտապես խորհրդակցեն նրանց հետ, հաշվի առնեն նրանց առաջարկությունն ու նկատառումները: Միայն այդ պայմանով նրանք ճիշտ կարտահայտեն ողջ կոլեկտիվի կամքն ու շահերը, կկարողանան ամեն ինչում հենվել նրա աջակցության վրա, ապահովել կոլեկտիվի բոլոր անդամների համաձայնեցված, նպատակասլաց աշխատանքը:

Ամեն մի կոլեկտիվի նորմալ կյանքն ու գործունեությունը անիմաստ է, եթե նրա անդամներից յուրաքանչյուրը չենթարկվի մեծամասնության կամքին: Չի կարելի գտնվել կոլեկտիվում և հաշվի չառնել նրա պահանջները, գործել հակառակ ընդհանուր կարծիքի: Կոլեկտիվի ուժը թուլանում է այնտեղ, որտեղ գլուխ են բարձրացնում անկարգապահությունը, անկազմակերպությունը այն հարցերի լուծման ժամանակ, որոնցում շահագրգռված են կոլեկտիվի անդամները: «Երբ ընկերների միջև համաձայնություն չկա, նրանց գործը հաջող չի գնա»՝ կռիլովյան այս խոսքերը ուսանելի խոր իմաստ են պարունակում:

Պարտկազմակերպությունը, կոմունիստները իրենց ջանքերը չպետք է խնայեն մեր մարդկանց կոլեկտիվիզմի ոգով դաստիարակելու համար: Իսկ իսկական սոցիալիստական կոլեկտիվիզմը ենթադրում է իր գործողություններն ու արարքները ենթարկել ընդհանուր գործին, հասարակական շահերը բարձր դասել անձնական շահերից: Ահա մեր կոմունիստական բարոյականության կարևորագույն պահանջներից մեկը: Եվ այն պետք է դառնա յուրաքանչյուր կոլեկտիվի, յուրաքանչյուր մարդու կյանքի անխախտելի օրենքը:

Այդ նշանակո՞ւմ է արդյոք, թե կոլեկտիվը ճնշում է անհատին, զրկում նրան իր անհատականությունից: Ո՛չ, իհարկե: Այն պնդումը, թե իբր սոցիալիզմը բացասում է անհատի ազատությունը, անհատին տարրալուծում մի գորշ, միատարր զանգվածի մեջ, փոխառնված է հակակոմունիզմի զինանոցից և մինչև ուղնուծուծը սուտ է, զրպարտչական:

Կոմունիստները ելնում են այն բանից, որ անհատը միայն կոլեկտիվում կարող է լիակատար չափով դրսևորվել: «Միայն կոլեկտիվում է անհատը այնպիսի միջոցներ ստանում,— մատնանշում էին Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը,— որոնք նրան հնարավորություն են տալիս բազմակողմանիորեն զարգացնելու իր ընդունակությունները, և, հետևապես, միայն կոլեկտիվում է հնարավոր անձնական ազատությունը» (Երկեր, 2-րդ հրատ., հատ. 3, էջ 75): Եվ մեր պարտիան անշեղ հետևել և հետևում է մարքսիզմի այդ դրույթին: Պարտիան միշտ ձգտել և այժմ էլ ձգտում է ապահովել յուրաքանչյուր մարդու բազմակողմանի զարգացումը, անձնական և հասարակական շահերի հարմոնիկ զուգակցումը: Վերցնենք կոլեկտիվներից մեկը, որոնցից յուրաքանչյուրը կազմված է այնպիսի մարդկանցից, ովքեր ընդհանուր շատ բան ունեն և դրա հետ միասին ինչ-ինչ կողմերով տարբերվում են միմյանցից. ամեն մեկն ունի իր բնավորությունը, օժտված է որոշակի ընդունակություններով, հակումներով, ունի իր շահերը և այլն: Մի խոսքով, մարդն ունի իր վառ արտահայտված անհատականությունը: Եվ հաշվի չնստել դրա հետ, հաշվի չառնել այդ՝ ոչ մի կերպ չի կարելի: Պարտկազմակերպությունը, հասարակայնությունը պետք է կենսականորեն շահագրգռված լինեն, որպեսզի յուրաքանչյուրը կարողանա լիովին դրսևորել իր անհատականությունը կոլեկտիվի շրջանակներում, ամեն կերպ զարգացնի իր ընդունակությունները: Չէ՛ որ որքան լիովին են բացահայտվում յուրաքանչյուրի դրական հատկությունները, անհատական բնորոշ գծերը, այնքան ավելի հարուստ, ավելի բազմակողմանի, ավելի հետաքրքրական և ավելի բովանդակալից է դառնում կոլեկտիվի կյանքը, այնքան ավելի մեծ հաջողությունների կհասնի նա ամենուր:

Մեր խնդիրն է՝ ամեն կերպ զարգացնելով մարդու անհատական ընդունակություններն ու հակումները, կարողանալ դրանք ծառայեցնել կոլեկտիվին, ենթարկել ընդհանուր գործի, կոմունիստական շինարարության գործնական խնդիրների կենսագործման շահերին: Իսկ ցանկության և հմտության դեպքում միշտ էլ կարելի է այդ անել: Ասենք, մեկը տարվում է տեխնիկայով, անընդհատ ինչ-որ բան է հնարում, ստեղծագործում: Ինչո՞ւ նրան չհանձնարարել գլխավորելու հասարակական կոնստրուկտորական բյուրոն: Մյուսը՝ երաժշտական արվեստի մեծ սիրահար է և կարող է դառնալ ինքնագործ նվագախմբի ղեկավար: Մի խոսքով, յուրաքանչյուրին իր ուժած զբաղմունքը: Որքա՜ն բարերար ազդեցություն կունենար այդ թե՛ առանձին մարդկանց, թե՛ ամբողջ կոլեկտիվի վրա: Կարելի է չտարակուսել, որ նման մոտեցման դեպքում կշահեն բոլորը:

Մարտական, համերաշխ, կոմունիստաբար համակված կոլեկտիվ կարելի է ստեղծել միայն խոր գաղափարական հիմքի վրա: Դրա համար պատասխանատվություն են կրում կոմունիստները, պարտկազմակերպությունը: Նրանք կոչված են լինելու կոլեկտիվի իսկական միջուկը, նրա մարտական կազմակերպիչն ու ոգեշնչողը բոլոր գործերում, ցույց տալու իսկական կոմունիստական կոլեկտիվիզմի օրինակ:

## ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂԻ ԲԱՐՈՅԱԿԱՆ ԿՈԴԵՔՍԸ ԿՅԱՆՔՈՒՄ

Կարևոր է, որ կոլեկտիվի ամբողջ կյանքը, նրա անդամների փոխհարաբերությունները կառուցվեն կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքներին խիստ համապատասխան: **Յուրաքանչյուր մարդու գիտակցության մեջ կոմունիստական բարոյականության բարձր սկզբունքների արմատավորումը** ամեն մի կոլեկտիվի արդյունավետ գործունեության վճռական պայմաններից մեկն է, նրա բոլոր հաջողությունների գրավականը:

Իրականում դրա ապահովումը պարտկազմակերպության, նրա ամբողջ կազմակերպական ու դաստիարակչական աշխատանքի կենսական խնդիրներից մեկն է: ՍՄԿՊ կանոնադրությունը սկզբնական պարտկազմակերպությունից պահանջում է հասնել այն բանին, որ յուրաքանչյուր կոմունիստ ինքը պահպանի և աշխատավորների մեջ պատվաստի այն բարոյական սկզբունքները, որոնք շարադրված են ՍՄԿՊ ծրագրում՝ կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսում: Իսկ ի՞նչ կերպ նա կարող է հասնել առաջադրված նպատակին:

Այստեղ ևս, ինչպես և մյուս բոլոր գործերում, առաջնակարգ, վճռական նշանակություն ունի կոմունիստների անձնական օրինակը: Եթե կոմունիստներից յուրաքանչյուրը կոմունիստական բարոյականության պահպանման օրինակ ծառայի, իր մեջ մարմնավորի բարձր բարոյական հատկություններ, ապա դրանով իսկ նա ամենաբարերար ազդեցությունը կունենա կոլեկտիվի մյուս անդամների վրա: Եվ նրան կընդօրինակեն բոլոր աշխատավորները: Այդ դեպքում նա բարոյական իրավունք ունի ամենքից և յուրաքանչյուրից հաշիվ պահանջելու կոմունիստական բարոյականության սկզբունքներին հակասող ամեն մի խախտման, ամեն մի զանցանքի համար:

Մարդկանց գործերում ու վարմունքում մարմնավորելով բարոյական կոդեքսի սկզբունքները, կոմունիստներն աշխատում են ադմինիստրացիայի, մյուս բոլոր մասսայական կազմակերպությունների հետ համատեղ, հենվում են կոլեկտիվի վրա, **հասարակական կարծիքի** ուժի վրա: Ընդհանուր ջանքերով նրանք համառորեն պարզաբանում են մարդկանց կոմունիստական բարոյականության

պահանջների իմաստն ու նշանակությունը, ամենօրյա կյանքից վերցրած կոնկրետ օրինակներով, սեփական և ուրիշ կոլեկտիվների փորձով աշխատավորներին համոզում են, որ սովետական յուրաքանչյուր քաղաքացու շահերից է բխում այդ պահանջների խիստ պահպանումը և միշտ ու ամեն բանում դրանց հավատարիմ մնալը: Եվ որքան մեծ է այդ գործով զբաղվող ակտիվը, որքան ավելի բազմազան են այդ նպատակով օգտագործվող գաղափարական ներգործության միջոցները, այնքան ավելի հաջողությամբ կլուծվի առաջադրված խնդիրը:

Բայց կոմունիստական բարոյականության ըսկըզբունքները մարդկանց գիտակցության մեջ արմատավորվում, նրանց համար անխախտելի օրենք են դառնում ո՛չ միայն կոչերի, զրույցների, պարզաբանումների, խոսքով համոզելու միջոցով, այլ ամենից առաջ **համատեղ աշխատանքի ու կյանքի պրոցեսում,** այն ամբողջ իրադրության ազդեցության ներքո, որ ամեն օր ստեղծվում է կոլեկտիվում: Եվ խիստ կարևոր է կոլեկտիվում այնպիսի մթնոլորտ ստեղծելը, որն ակտիվորեն կընպաստեր կոմունիստական բարոյականության արմատավորմանը: Իսկ ի՞նչ իրադրություն է այդ, ինչպե՞ս ապահովել այն:

Ինչպես հայտնի է, մեր բարոյականության կարևորագույն, հիմնական պահանջը, որ ներկայացվում է մարդուն, ի բարօրություն հասարակության բարեխիղճ աշխատելն է: Պրակտիկան ցույց է տալիս, որ **աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի զարգացումը** անխզելիորեն կապված է յուրաքանչյուր կոլեկտիվում համերաշխ, իսկական ստեղծագործական աշխատանքի մթնոլորտ, աշխատանքի արդյունքներում մարդկանց խոր շահագրգռվածություն, առողջ մրցություն ստեղծելու հետ: Իսկ այդ պահանջում է ամենօրյա հոգատարություն աշխատանքի կազմակերպման ու պայմանների բարելավման նկատմամբ, լավագույն աշխատողների ամեն կերպ խրախուսում, գիտակցական կարգապահության ամրապնդում, հետևողական պայքար ծուլության, գործալքության, գռփողության, գործի նկատմամբ անփույթ վերաբերմունքի դեմ:

Կոմունիստական բարոյականության, աշխատանքի նկատմամբ բարեխիղճ վերաբերմունքի, հասարակական պարտքի բարձր գիտակցության, իր գործերի ու վարմունքի համար պատասխանատվության ոգով մարդկանց դաստիարակությունը ամենից լավ կենսագործվում է այն կոլեկտիվներում, ուր գոյություն ունի **փոխադարձ բարձր պահանջկոտություն,** որտեղ անհաշտ են վերաբերվում անարդարացիության, եսասիրության, շահասիրության, ոչ ճիշտ վարքագծի ամեն տեսակ դրսևորումների դեմ, որտեղ չեն լռում, չեն կոծկում զանազան սխալները, արատներն ու թերությունները, այլ համարձակ բացահայտում են դրանք և ընդհանուր ուժերով արմատախիլ անում:

Հասկանալի է, բարձր պահանջկոտությունը միայն այն դեպքում է արդյունք տալիս, երբ այն զուգորդվում է մարդու նկատմամբ կոլեկտիվի զգայուն, ուշադիր, հոգատար վերաբերմունքով, հիմնվում **փոխադարձ վստահության ու փոխադարձ հարգանքի վրա:** Իսկ այդ նշանակում է, որ կոլեկտիվը պետք է կարողանա ո՛չ միայն խիստ պահանջներ ներկայացնել մարդուն, այլև պատրաստ լինել ամեն պահի օգնության հասնելու, իր տրամադրության տակ ունեցած բոլոր միջոցներով աջակցելու իր անդամներից յուրաքանչյուրին, ով դրա կարիքն է զգում: Այդպիսի պայմաններում մարդիկ կհամոզվեն, որ «մարդը մարդուն բարեկամ է, ընկեր և եղբայր» սկզբունքը պարզապես ինչ-որ մի գեղեցիկ լոզունգ չէ, այլ մեր կյանքի անխախտելի օրենքը, և իրենք էլ կսովորեն վարվել այդ սկզբունքին համապատասխան:

Խիստ կարևոր է այնպես անել, որ կոլեկտիվի անդամների միջև հարաբերությունները կառուցվեն **պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկըզբունքների,** ժողովուրդների բարեկամության ու եղբայրության զգացմունքի **հիման վրա:** Իսկական սովետական կոլեկտիվը, գաղափարապես հասունացած յուրաքանչյուր մարդ չեն կարող անտարբեր լինել ազգային կամ ռասայական անբարյացակամության, շովինիզմի ու նացիոնալիզմի, ազգային արժանապատվությունը վիրավորելու ամեն մի դրսևորման նկատմամբ՝ ինչում էլ որ դրանք կոնկրետ արտահայտվեն: Պարտկազմակերպությունը, կոլեկտիվը կոչված են բոլոր մարդկանց դաստիարակելու իսկական սոցիալիստական ինտերնացիոնալիզմի, տարբեր ազգությունների ու ժողովուրդների միջև բարեկամության ու սերտ համագործակցության ոգով, նրանց ջանքերը կոմունիզմի կառուցման համար մղվող պայքարում համախմբելու ոգով:

Փորձը սովորեցնում է, որ բոլոր աշխատավորներին **հասարակական գործունեության, արտադրության կառավարման,** զանազան տեսակի հասարակական հանձնարարությունների կատարման գործերում ակտիվ ներգրավելը ամեն կերպ նըպաստում է կոլեկտիվիզմի սկզբունքների ամրապնդմանը, հասարակական պարտքի, հասարակական շահերի պահպանման համար պատասխանատվության զգացումի բարձրացմանը: Միաժամանակ այդ լավ միջոց է անհատի կատարելագործման, նրա բազմակողմանի զարգացման համար: Ինչպես նկատել է ռուս մեծ գիտնական Դ. Ի. Մենդելեևը, «մարդն այնքան ավելի կատարյալ է, որքան ավելի օգտակար է նա հասարակական, պետական և ամբողջ մարդկության լայն շրջանակի շահերի համար»:



Կոմունիստական բարոյականությունը, ինչպես հայտնի է, մեր կյանքում արմատավորվում է ոչ առանց խոչընդոտների, այլ մարդկանց գիտակցության մեջ մեր իրավակարգին խորթ մնացուկների, վնասակար սովորույթների դեմ մղվող պայքարում: Կոլեկտիվի կյանքը կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի սկզբունքների հիման վրա կառուցելու համար հարկավոր է հետևողականորեն և վճռականապես **հաղթահարել անցյալի մնացուկներն ու նախապաշարմունքները:** Պարտկազմակերպությունը, ամբողջ հասարակայնությունը պետք է ձգտեն իսպառ արմատախիլ անել դրանք մեր կյանքից: Չէ՞ որ մարդկանց նույնիսկ մի որոշ մասի մեջ մասնավոր սեփականատիրական հոգեբանության, եսասիրության, կրոնական նախապաշարմունքների, իսկ առավել ևս այնպիսի վնասակար բարքերի առկայությունը, ինչպես հարբեցողությունն է, խուլիգանությունը և ընտանեկան սանձարձակությունը, թուլացնում է կոլեկտիվը, մեկուսացնում մարդկանց, նվազեցնում նրանց աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը:

Հանդես գալով որպես անցյալի մնացուկների դեմ մղվող պայքարի կազմակերպիչներ, կոմունիստները ձգտում են այդ պաքարում ներգրավել ամենալայն հասարակայնությանը, ամբողջ կոլեկտիվին, որին այդ պայքարում վճռական դեր է պատկանում: Կոլեկտիվի ուժը հասարակական կարծիքն է, կոմունիստական բարոյականության հետ անհամատեղելի արարքների ընկերական դատապարտումն ու խիստ քննադատությունը: Հասկանալի է, որ, կիրառելով հասարակական ներգործության միջոցներ, անհրաժեշտ է դիֆերենցված մոտեցում ունենալ մարդկանց հանդեպ, խնամքով պարզել, թե ինչն է այս կամ այն մարդու սխալ, հասարակայնության շահերին հակասող վարքագծի սկզբնապատճառը: Եթե այդ վարքագիծը առաջացել է անկեղծ մոլորությունից, անբավարար գիտակցությունից, ապա հարկավոր է փորձել ներգործել համոզումով, բացատրական աշխատանքի միջոցով: Իսկ այն դեպքում, երբ կոլեկտիվը տեսնում է, որ որևէ մեկը չարամտորեն խախտում է վարքագծի համընդհանուր նորմերը, հարկավոր են խիստ միջոցներ նման արարքները կանխելու համար:

**Հասարակական կարծիքը** այնպիսի ուժ է, որի հանդեպ ոչ-ոք և ոչինչ դիմակայել չի կարող: Միայն պետք է հմտորեն օգտագործել այդ ուժը, այն ամբողջովին ի սպաս դնել կոմունիզմի համար մղվող պայքարի շահերին, մարդկանց դաստիարակության շահերին: Եվ պարտկազմակերպությունը պարտավոր է հոգալ այն մասին, որ կոլեկտիվում կազմվի և մշտապես արտահայտվի ճիշտ, կոմունիստական գաղափարներին համապատասխանող հասարակական կարծիք:

Սովետական մարդկանց կոմունիստական բարոյականության սկզբունքների հիմքում ընկած են նրանց խոր գաղափարական համոզվածությունը, նվիրվածությունը կոմունիզմի գործին: Եվ այնքան ավելի կամրապնդվեն, այնքան ավելի կխորանան դրանք, որքան ավելի ակտիվ տարվի նպատակասլաց դաստիարակչական աշխատանքը, ավելի հագեցված, հարուստ և բազմակողմանի լինի կոլեկտիվի գաղափարական կյանքը, ավելի լիակատար բավարարվեն աշխատավորների հոգեկան պահանջները: Այս հասարակական կարծիքի ձևավորման անհրաժեշտ պայմաններից մեկն է: Եվ շատ կարևոր է, որ պարտկազմակերպությունը, հասարակայնությունը այդ նպատակով օգտագործեն բոլոր միջոցները, գաղափարական ազդեցության բոլոր ձևերը, դրանք ենթարկելով կոլեկտիվը համախմբելու, նրան անձնուրաց աշխատանքի մոբիլիզացնելու խնդիրներին:

Իսկ ի՞նչ ձևեր ու միջոցներ են դրանք,

## ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱԶԴԵՑՈՒԹՅԱՆ ՁԵՎԵՐԸ ԿՈԼԵԿՏԻՎՈՒՄ

Ողջ կոլեկտիվի կարծիքը, նրա կամքը առավել լրիվ արտահայտում են **աշխատավորների ընդհանուր ժողովները:** Պրակտիկան ցույց է տալիս, որ այդ ժողովներում կոլեկտիվի կյանքի ու գործունեության հրատապ հարցերի քննարկումը զգալիորեն բարձրացնում է նրա անդամների ակտիվությունը, նրանց լուրջ պատասխանատվություն է պատվաստում հասարակական գործերի համար, շատերին ստիպում է ինչպես հարկն է խորհել իրենց վարմունքի մասին, մոբիլիզացնում թերությունները հաղթահարելու: Հասկանալի է, ընդհանուր ժողովները պատշաճ ներգործություն են ունենում միայն այն ժամանակ, երբ դրանք խնամքով են նախապատրաստվում, երբ դրանց քննարկմանն են դնում այնպիսի հարցեր, որոնք հուզում են կոլեկտիվին և այդ պատճառով էլ մարդկանց մեջ պահանջ են առաջացնում արտահայտելու սեփական կարծիքը, անմիջականորեն մասնակցելու ժողովի նշած գործնական միջոցառումների կենսագործմանը:

Եվ, ընդհակառակը, ժողովները նպատակին չեն հասնում, դառնում են մի դատարկ հնարանք, եթե անց են կացվում ձևականորեն, եթե դրանցում հանդես են գալիս միևնույն հաստիքային հռետորները, իսկ կոլեկտիվի շատ անդամներ նույնիսկ չեն էլ մասնակցում ժողովին: Ընդհանուր կարծիքի ի՞նչ արտահայտություն է այդ: Պարտիական կազմակերպությունը նման երևույթներ չպետք է թույլ տա: Հարկավոր է ստեղծել այնպիսի իրադրություն, որպեսզի ամեն ոք, քննարկելով այս կամ այն հարցը, իրեն զգա իր ձեռնարկության, կոլտնտեսության, սովխոզի կամ հիմնարկի տերը, պետության հանդեպ պատաս-

խանդավառություն զգա նրա համար: Լավ է, երբ որպես զեկուցող հանդես են գալիս ո՛չ միայն ղեկավարները, այլև շարքային բանվորները, կոլտնտեսականները, արտադրության նորարարները: Չէ՞ որ ընդհանուր ժողովը աշխատավորներին հասարակական գործերի կառավարմանը ներգրավելու ձև է, դաստիարակության մեծ դպրոց:

Բայց աշխատավորների ընդհանուր ժողովներից բացի, պարտիական կազմակերպությունն ունի նաև ավելի օպերատիվ միջոց: Դա **քաղաքական ագիտացիան է,** որը թույլ է տալիս արագ արձագանքելու այս կամ այն երևույթին, ճիշտ գնահատելու դրանք, աշխատավորներին ժամանակին իրազեկ պահելու երկրի ներսում և արտասահմանում տեղի ունեցող իրադարձություններին, ձևավորելու նրանց վերաբերմունքը այդ իրադարձությունների նկատմամբ: Որպեսզի քաղաքական ագիտացիան լինի իսկապես մարտական և գործուն, հարկավոր է, որ այն վարեն բանիմաց, հեղինակավոր մարդիկ: Չէ՛ որ ագիտատորների կազմից է կախված մասսայական-քաղաքական աշխատանքի հաջողությունը:

Սակայն ագիտատորների հմուտ ընտրությունը դեռ քիչ է, կարևորը նրանց գործունեությանն ամեն օր ուղղություն տալն է: Սովորաբար նրանք միավորվում են **ագիտկոլեկտիվում:** Բայց լինում է այնպես, որ ագիտկոլեկտիվ կա, նրա ղեկավար նշանակված է, պլան կազմված է, իսկ աշխատանք չկա, ագիտատորների ազդեցությունը քիչ է զգացվում: Դա նշանակում է, որ պարտիական կազմակերպությունը ինչպես պետք է չի ղեկավարում ագիտատորներին: Միանգամայն այլ է բանը, երբ պարտկազմակերպությունը մշտապես ուղղություն է տալիս նրանց, հրահանգավորում, սովորեցնում քաղաքական ագիտացիայի արվեստը, օգնում է ճիշտ որոշելու զրույցների թեմատիկան: Ամեն կերպ սարգացնելով ու պաշտպանելով հենց իրենց՝ ագիտատորների նախաձեռնությունը, պետք է ժամանակին հուշել նրանց, թե նախ որ իրադարձություններին է հարկավոր արձագանքել, ինչ հարցերի շուրջ անհատական աշխատանք տանել: Իսկ այնուհետև ամփոփել ագիտատորների փորձը, պաշտպանել ու տարածել աշխատանքի առավել արդյունավետ մեթոդները, նկատել բնորոշ թերությունները և օգնել դրանց վերացմանը: Այդ ամենը կհարստացնի քաղաքական ագիտացիան, ավելի բովանդակալից կդարձնի այն:

Բանավոր ագիտացիան լրացվում է **դիտողական** ագիտացիայով, որը կարևոր դեր է խաղում հասարակական կարծիքի ձևավորման գործում: Եթե այն նպատակասլաց է, ապա միշտ էլ լավ է ընդունվում, մարդու մեջ առաջացնում է որոշակի տրամադրություն, ակտիվ վերաբերմունք է դաստիարակում երևույթների, փաստերի նկատմամբ: Խելացիորեն տրված կոչը, լոզունգը աչքի է զարնում, կենտրոնացնում է և մոբիլիզացնում: Սուր ծաղրանկարը հարվածում է դիպուկ, իսկ լավ ձևավորված ստենդը պինում է փորձով: Եվ այդ ամենը կարելի է ստեղծել ուժեղ կոլեկտիվում: Նախաձեռնություն և հնարամտություն՝ ահա լավ դիտողական ագիտացիայի գլխավոր ուղեկիցները:

Յուրաքանչյուր պարտիական կազմակերպություն կարող է և պետք է դիտողական ագիտացիան դարձնի իսկապես մարտական, եթե դրա հանդեպ ցուցաբերի իսկական պարտիական հոգատարություն: Իհարկե, ամենուրեք չէ, որ լավ նկարիչ-ձևավորողներ կան, ամեն մի արտադրամասում, բրիգադում չէ, որ գիտեն, թե ինչպես է ավելի լավ և ինչպիսի դիտողական ագիտացիա է հարկավոր ձևավորել: Պետք է նրանց հուշել: Իսկ ինչո՞ւ չստեղծել դիտողական ագիտացիայի խորհուրդ, ինչպես դա անում են մի շարք կոլեկտիվներում, այդ խորհրդում մտցնելով ո՛չ միայն պարտիական կազմակերպության, այլև մյուս հասարակական կազմակերպությունների, կուլտուրայի հիմնարկների ներկայացուցիչներին: Հատկապես կարևոր է, որ դիտողական ագիտացիան օպերատիվ լինի: Մարդը վերջացրեց հերթափոխությունը, մոտենում է ցուցանիշների տախտակին և տեսնում է իր բրիգադայի, արտադրամասի աշխատանքի արդյունքը, ով է առաջ, ով է ետ մնում:

Հասարակական կարծիքի ձևավորման հարցում մեծ դեր ունեն **պատի թերթերը:** Բայց այստեղ ևս պատահում են դեպքեր, երբ դրանք լույս են ընծայվում ոչ կանոնավորապես, այլ միայն տոնական օրերին, ձևավորվում են վատ, և, որպես կանոն, դրանք չեն կարդում: Մինչդեռ գործը հմտորեն կազմակերպելու դեպքում կոլեկտիվի ձեռքում սուր զենք են դրանք: Իսկ պարտիական կազմակերպությունն ինչպե՞ս կարող է օգտագործել այդ զենքը: Նախ պետք է հոգ տանել խմբագրական կոլեգիայի կազմի մասին, առաջադրել գրագետ, սկզբունքային ակտիվիստների, իրենց գործին քաջ գիտակ մարդկանց, իսկ այնուհետև ուղղություն տալ նրանց գործունեությանը, հուշել, թե ի՛նչ հարցերի վրա պետք է ուշադրություն դարձնել, պարտիական բյուրոյում պարբերաբար լսել խմբագրի ինֆորմացիան, հետաքրքրվել աշխատանքի պլաններով, այն բանով, թե որքան գործարար են զետեղվող նյութերը:

Մի խոսքով, կոլեկտիվում պարտիական աշխատանքը կազմակերպելիս էական նշանակություն ունի քաղաքական ագիտացիայի ամեն մի ձև, եթե միայն այդ օգտագործվում է մտածված: Վերցնենք **ակումբները:** Այստեղ կազմակերպվում են դասախոսություններ, զեկուցումներ, հանդիպումներ, անց են կացվում պարապմունքներ, պրոպագանդվում են քաղաքական և գիտական գիտելիքներ: Բայց չէ՞ որ լինում է նաև այնպես, որ ակումբները երբեմն դառնում են միայն պարատեղեր, դրանք դիտում որպես առևտրային ձեռնարկություն: Հասկանալի է, պարտկազմակերպությունն այդ դեպքում չի կարող մի կողմ քաշվել: Շատ բան է կախված նրանից, թե պարտկազմակերպությունն ինչպես է ղեկավարում կուլտուր-մասսայական աշխատանքը: Եթե պարտիական կազմակերպությունը մշտապես զբաղվում է ակումբով, ինչպես պետք է խորամուխ է լինում նրա գործունեության բովանդակության մեջ, ապա թերություններ քիչ կլինեն, ակումբն իսկապես կդառնա կուլտուր-լուսավորական աշխատանքի կենտրոն: Այդ դեպքում կլինեն և՛ ինքնագործ կոլեկտիվներ, և՛ գրական խմբակներ, և՛ այլ հետաքրքրական միավորումներ, որոնք կգրավեն երիտասարդության ուշադրությունը, կնպաստեն նրա գաղափարական ու էսթետիկական դաստիարակությանը: Իսկ պարտիական կազմակերպությունը, հասկանալի է, կհետաքրքրվի ինքնագործունեության ռեպերտուարով, գրական կամ որևէ այլ միավորման աշխատանքի բովանդակությամբ, կանհանգստանա նրանց գաղափարական ուղղության և նպատակասլացության համար:

Ամենօրյա ուշադրություն են պահանջում **գրադարանները**, որոնք մեծ դեր ունեն կուլտուրային, գրականության և արվեստի երկերին մարդկանց հաղորդակից դարձնելու գործում: Պարտկազմակերպությունը չի կարող անտարբեր վերաբերվել այն բանին, թե գրադարանն ինչպես է պրոպագանդում գրքերը, ղեկավարում ընթերցանությունը: Արդյոք հաճախ են անցկացվում ընթերցողների կոնֆերանսներ, կազմակերպվում ցուցահանդեսներ, ի՞նչ գրականություն է քննարկվում, բավարարվում են արդյոք ընթերցողների պահանջները — այս ամենը պետք է հետաքրքրի պարտիական կազմակերպությանը և դառնա կոլեկտիվում տարվող նրա պարտիական աշխատանքի մշտական տարրը:

Մենք կանգ առանք մարդու նկատմամբ **կոլեկտիվ** ներգործության մի քանի մասսայական ձևերի վրա: Բայց, զարգացնելով այդ ձևերը, երբեք չի կարելի մոռանալ մարդկանց հետ տարվող **անհատական աշխատանքը:** Պրակտիկան ցույց է տալիս, որ շատ պարտիական կազմակերպություններ մասսայական միջոցառումների «ընդգրկման» թվերի հետևից ընկնելով, երբեմն անուշադրության են մատնում կենդանի մարդուն: Բայց չէ՞ որ լավ հայտնի է, և այդ ապացույցներ չի պահանջում, որ կոլեկտիվը միայն այն դեպքում է լիարյուն, այն ժամանակ է պատշաճ միավորում, ցեմենտավորում մարդկանց, երբ մարդը գտնվում է կոլեկտիվի ամբողջ կյանքի ու գործունեության կենտրոնում: Հենց այստեղից էլ բխում է կոլեկտիվում տարվող պարտիական աշխատանքի անխախտելի պահանջներից մեկը՝ **կարողանալ թափանցել յուրաքանչյուր մարդու մեջ,** ուշադրությամբ ուսումնասիրել նրա պահանջները, բոլոր պայմաններն ստեղծել նրա ընդունակությունների ու տաղանդի զարգացման և օգտագործման համար: Մեկին հարկավոր է օգնել պարզելու արդի հասարակական կյանքի բարդ հարցերը, մյուսին՝ ապատվելու ոչ ճիշտ տրամադրություններից, երրորդին՝ կարգավորելու հարաբերություններն ընտանիքում: Այդ բանում մեծ դեր ունեն պարտիական խմբերը: Յուրաքանչյուր մարդու հետ տարվող կոնկրետ անհատական աշխատանքը, որի նպատակն է ամրապնդել նրա մեջ դրական հատկությունները և արմատախիլ անել բացասական գծերը, ամենից շատ է օգնում նրա ներգրավմանը կոլեկտիվի բազմակողմանի կյանքին: Հանուն այդ բանի հարկավոր է օգտագործել կոլեկտիվի և նրա յուրաքանչյուր անդամի նկատմամբ ազդեցության ձևերի ու մեթոդների լիակատար ամբողջությունը:

## ՂԵԿԱՎԱՐԸ ԵՎ ԿՈԼԵԿՏԻՎԸ

Կոլեկտիվի գործունեությունը, համախմբվածությունը առավելապես պայմանավորված են նրա ղեկավարի կարողությամբ: Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ մեր ղեկավարները «սոցիալիզմին նվիրված լինելը միացնում են սովետական կազմակերպության շրջանակներում մեծ թվով մարդկանց ամրակուռ և համերաշխ, համատեղ աշխատանքն առանց աղմուկի (և հակառակ իրարանցման ու աղմուկի) կարգավորելու հետ» (Երկեր, 4-րդ հրատ., հատ. 27, էջ 314):

Կոլեկտիվների ղեկավարների այս բացառիկ կարևոր դերը է՛լ ավելի է բարձրանում մեր ժամանակներում, երբ սովետական ժողովուրդը գործնականում վճռում է կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի խնդիրները: ՍՄԿՊ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումում նշվեց, որ տնտեսական ղեկավարների իրավունքների ընդլայնմամբ նրանց վրա ավելի բարձր պատասխանատվություն է դրվում: Մեծանում է միանձնյա ղեկավարության նշանակությունը: Բայց միանձնյա ղեկավարությունը պետք է օրգանապես զուգակցվի բանվորների ու ծառայողների ամենալայն մասնակցությամբ տնտեսական կյանքի և արտադրության կառավարման կարևորագույն հարցերի քննարկմանը: Չէ՞ որ ձեռնարկության տնտեսական ինքնուրույնության ընդլայնումը ո՛չ միայն նրա դիրեկտորի, այլև ամբողջ կոլեկտիվի իրավունքների ու պատասխանատվության ուժեղացումն է: Եվ ղեկավարը միայն այն ժամանակ հաջողության կհասնի, երբ լավ կապված լինի կոլեկտիվի հետ, զգայուն կերպով ունկնդրի լայն հասարակայնության ձայնին:

Ղեկավարման արվեստը՝ նրա լենինյան ըմբռնմամբ, ոչ մի ընդհանուր բան չունի մերկ վարչարարության հետ: Ամեն մի գործի կազմակերպման հիմքում նախ ընկած են **մասսաների համոզումն ու դաստիարակությունը:** Եվ ղեկավարը, ինչ գործի էլ ձեռնարկի, ինչով էլ զբաղվի, ինչ խնդիր էլ լուծի, միշտ և ամեն ինչում պետք է **հենվի մասսաների,** կոնկրետ կատարողների վրա, կարողանա նրանց ճիշտ մոտենալ, նրանց ստեղծագործական ուժերն ուղղել առաջադրված նպատակին հասնելուն, արթնացնել և պաշտպանել նրանց նախաձեռնությունը, նրանց մեջ վարգացնել իսկական կոմունիստական վերաբերմունք աշխատանքի նկատմամբ: Իսկ այդ մեծ չափով կախված է այն բանից, թե ինչ հարաբերությունների մեջ է նա կոլեկտիվի հետ, որքանով ճիշտ է նա որսում մարդկանց տրամադրությունները, դրանք նպատակամղում կոնկրետ խնդիրների լուծմանը: Ղեկավարը չի կարող հաջողությամբ աշխատել, եթե վատ է կապված մասսաների հետ, քիչ է սովորում նրանցից, չի ունկնդրում նրանց ձայնին: Պարտիական կազմակերպության գործն է օգնել ղեկավարին՝ խուսափելու այդ սխալներից, բռնելու կոլեկտիվի կյանքի զարկերակը և հմտորեն ուղղություն տալու դրան: Պարտկազմակերպության ուղղակի պարտքն է՝ մշտապես հետաքրքրվել ղեկավար կադրերի աշխատանքի ոճով, ժամանակին ուղղել նրանց, զինել անհրաժեշտ գիտելիքներով և ունակություններով:

Պետք է հիշել, որ ղեկավարը, գլխավորելով կոլեկտիվը, մշտապես հանդես է գալիս որպես **կազմակերպիչ և դաստիարակ, որպես քաղաքական ղեկավար:** Իսկ «քաղաքական ղեկավարը,— մատնանշում էր Վ. Ի. Լենինը,— պատասխանատու է ո՛չ միայն այն բանի համար, թե ինչպե՛ս է ղեկավարում, այլև այն բանի համար, թե ի՛նչ են անում նրանք, որոնց ղեկավարում է նա: Այդ նա երբեմն չգիտե, այդ հաճախ նա չի ուզում, բայց պատասխանատվությունն ընկնում է նրա վրա (Երկեր, 4-րդ հրատ., հատ. 32, էջ 21—22): Այստեղից հետևում է, որ, պատասխանատու լինելով արտադրական պլանի կատարման համար, ղեկավարը կոչված է մշտապես հոգ տանել մարդկանց, կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի մասին, խորանալ գաղափարականդաստիարակչական աշխատանքի բովանդակության մեջ, անձամբ մասնակցել այդ աշխատանքին:

Բայց երբ ուզում են պարզել այս կամ այն ղեկավարի մասնակցությունը դաստիարակչական աշխատանքներին, սովորաբար առաջին հերթին հետաքրքրվում են, թե նա արդյոք տանում է պրոպագանդիստական աշխատանք, արդյոք աշխատավորների առաջ հանդես է գալիս դասախոսություններով, զեկուցումներով, զրույցներով: Եվ այդ հասկանալի է: Չէ՞ որ դաստիարակել, նշանակում է, առաջին հերթին, մասսաներին անդադրում պարզաբանել մարքս-լենինյան տեսությունը, պարտիայի քաղաքականությունն ու որոշումները, աշխատավորներին օգնել կենսագործելու գիտական կոմունիզմի գաղափարները: Պարտկազմակերպությունը ղեկավար կադրին լայն կերպով անմիջականորեն մասնակից է դարձնում ագիտացիոն-պրոպագանդիստական գործունեությանը: Դա զգալի չափով նպաստում է նրանց գաղափարական աճին, ընդարձակում նրանց տեսադաշտը, սովորեցնում է ամեն մի տընտեսական հարցի մոտենալ քաղաքական տեսակետից:

Սակայն ղեկավարը աշխատավորներին դաստիարակում է ո՛չ միայն այն ժամանակ, երբ քաղպարապմունքներ է անցկացնում, դասախոսություններ կարդում, հանդես գալիս զեկուցումներով: Նա ամեն ինչում, միշտ և ամենուրեք պետք է դաստիարակ լինի: Տեքստիլ ձեռնարկություններից մեկում պատահել է այսպիսի :հ ուսանելի փաստ: Ձեռնարկության դիրեկտորի՝ հին կոմունիստի, փորձված տնտեսավարի մոտ են եկել կոմերիտմիության կոմիտեի մի խումբ անդամներ, խնդրելով մի քանի տասնյակ մետր գործվածք բաց թողնել՝ արդյունաբերության երիտասարդ առաջավորների շրջանային հավաքի պատգամավորներին պարգևատրելու համար: Երիտասարդ մարդիկ, ըստ երևույթին, մտածում էին, թե դիրեկտորի համար մեծ բան չէ կտորեղեն բաց թողնել մրցության առաջավորներին պարգևատրելու համար: Բայց ինչպե՞ս վարվեց դիրեկտորը:

— Ո՛չ,— ասաց նա կոմերիտականներին,—ես չեմ կարող կատարել ձեր խնդրանքը: Ես սովետական ձեռնարկության դիրեկտոր եմ, և ոչ թե ինչ-որ մասնավոր ձեռնարկատեր, ուստի և իրավունք չունեմ արտադրանքն ընծայելու: Այն պատկանում է ոչ թե ինձ, այլ պետությանը: Պարգևատրման համար գործվածք բաց թողնելով, ես, թերևս, բարի, առատաձեռն մարդու անուն հանեի, բայց ես չեմ ուզում փառք ձեռք բերել ի հաշիվ պետության շահերի:

Կոմերիտականները տարակուսանքի մեջ էին, բայց, այնուամենայնիվ, փորձեցին համաձայնեցնել դիրեկտորին, վկայակոչելով այն, թե որոշ ձեռնարկություններում այդ բանն արդեն արել են:

— Սպասեցե՛ք, սպասեցեք, ես դեռ բոլորը չասացի,— շարունակեց դիրեկտորը:— Ձեմ վիճում, լավագույն երիտասարդ բանվորներին հարգում, լավագույն երիտասարդ բանվորներին հարկավոր է պարգևատրել: Բայց եկեք այդ անենք այնպես, ինչպես պետք է: Պատրաստեցեք ձեր առաջարկությունները: Ձեր և արհմիության ֆաբկոմի հետ միասին կքննարկենք, այնուհետև հրամանով շնորհակալություն կհայտնենք՝ դրամական պարգևներ տալով ձեռնարկության ֆոնդից:



Այդպես էլ վարվեցին: Հարկավո՞ր է արդյոք խոսել այն մասին, որ մի կոնկրետ հարցով կոմերիտական ակտիվիստների հետ ձեռնարկության ղեկավարի այդ կարճ զրույցը ոչ պակաս դաստիարակչական նշանակություն ունեցավ, նրանց գիտակցության մեջ ոչ պակաս խոր հետք թողեց, քան մի ծավալուն դասախոսությունը ազնվության և սկզբունքայնության մասին թեմայով:

Առանձնապես հարգելի է այն ղեկավարը, որի խոսքը երբեք չի տարբերվում գործից, որը միշտ և ամեն ինչում **անձնական օրինակ** է ծառայում մյուսներին, միշտ հասարակ է մարդկանց հետ ունեցած հարաբերություններում, մշտապես շփվում է նրանց հետ: Դա նրան թույլ է տալիս ավելի լավ գիտենալ աշխատավորների պահանջները և կարիքները, բացահայտել թերությունները: Գաղտնիք չէ, որ սրտաբաց զրույցի ժամանակ բանվորը կարող է մատնանշել կոլեկտիվի կյանքին վերաբերող այնպիսի մանրուքներ, որոնց մասին միշտ չէ, որ կիմանաս պաշտոնական ժողովներում ու խորհրդակցություններում: Եվ մեծ սխալ է թույլ տալիս նա, ով չի օգտագործում այդ հնարավորությունը, խուսափում է մասսաների մեջ աշխատելուց, ժամանակ չի գտնում մարդկանց հետ սրտաբաց զրույցի համար, իսկ երբեմն էլ նույնիսկ պարծենում է իր բարձր դիրքով, որը նրան անուղղելի վնաս է հասցնում: Մ. Ի. Կալինինն այդ առթիվ ասել է. «...Եթե մարդիկ զգան, որ դուք ձեզ նրանցից բարձր եք դասում, ապա ձեզ համար ամեն ինչ կորած է, ձեզ չեն հարգի»:

Մարդիկ դաստիարակվում, աճում են պրակտիկ գործերում, դժվարությունների ու թերությունների դեմ մղվող պայքարում, ստեղծագործական որոնումների պրոցեսում: Ընդ որում նրանք հաճախ սխալվում են, թույլ են տալիս առանձին վրիպումներ, ինչ-որ բան նրանց մոտ չի ստացվում: Եվ նայած թե յուրաքանչյուր կոնկրետ դեպքում ինչպես է վերաբերվում ղեկավարը ենթակաների սխալներին, աշխատանքում նրանց թույլ տված վրիպումներին, ինչպես է օգնում ուղղելու թերությունները, առանձնահատուկ որոշակիությամբ դրսևորվում է նրա, որպես դաստիարակի, դերը: Փորձված ղեկավարը, հայտաբերելով սխալը, երբեք բորբոքված չի գործի, այլ նախ ուշադիր կպարզի, թե ինչու է առաջացել այդ սխալը, և արդեն դրանից ելնելով էլ կորոշի, թե ինչպիսի միջոցներ է հարկավոր ձեռք առնել: Բայց բոլոր դեպքերում նա կհասնի այն բանին, որ սխալ թույլ տվողը գիտակցի իր սխալը, իսկ այնուհետև այդ օրինակի հիման վրա կաշխատի սովորեցնել ուրիշներին, ամբողջ կոլեկտիվին:

Արդյոք բոլո՞ր ղեկավարներն են այդպես վարվում: Դժբախտաբար, ոչ: Կան նաև այնպիսի ղեկավարներ, որոնք դադարում են հրամանների, կարգադրությունների, ցուցումների հետևում տեսնել կենդանի մարդուն: Հենց այդպիսի գործիչներից է վիճակվում լսել՝ գոնե տնտեսությունից գլուխ հանեմ, իսկ դաստիարակել՝ դա արդեն պարտիական կազմակերպության գործն է: Ահա ինչու կարևոր է մշտապես աշխատել կադրերի հետ, օգնել նրանց իրենց մեջ մշակելու այնպիսի հատկություններ, որոնք անհրաժեշտ են իսկական կազմակերպչին և դաստիարակին:

Այստեղ հսկայական դեր ունի պարտիական կազմակերպությունը: Հապա էլ ո՞վ, եթե ոչ նա պետք է օգնի արտադրության հրամանատարին՝ ձեռք բերելու մասսաների մեջ քաղաքական աշխատանք տանելու ունակություններ: Շատ պարտիական կոմիտեներ, պարտբյուրոներ այդ ուղղությամբ մեծ աշխատանք են տանում. կազմակերպում են հատուկ սեմինարներ, պարապմունքներ, փորձի փոխանակություն, զեկուցումներ ու դասախոսություններ են կարդում դաստիարակության գիտական սկզբունքների մասին: Որոշ ձեռնարկություններում ստեղծված են վարպետների հատուկ դպրոցներ՝ դաստիարակության հարցերով:

Ինքնին հասկանալի է, որ կոլեկտիվի համերաշխ, համախմբված աշխատանքը կախված է նաև այն բանից, թե նրա անդամները որքան են հարգում և աջակցում ղեկավարին, բարեխիղճ կատարում պետության շահերի, արտադրության բարելավման նկատմամբ ունեցած հոգատարությունից բխող նրա ցուցումները: Պարտիական կազմակերպությունը կոչված է՝ կոլեկտիվում հենց այդպիսի առողջ իրադրություն ստեղծելու:

***

Լիովին հասկանալի է, որ եթե կոլեկտիվը ցեմենտավորող բոլոր օղակները, որոնց մասին խոսվեց վերը, գործում են ակտիվ, փոխադարձաբար լրացնում միմյանց, կոլեկտիվի ազդեցությունը յուրաքանչյուրի վրա կլինի անտարակուսելի: Եվ հարկավոր է, որ պարտիական կազմակերպությունները ոչ թե առիթից առիթ, կարճ ժամանակով, այլ մշտապես աշխատանք տանեն կոլեկտիվի կատարելագործման և ամրապնդման, մեր կյանքի բոլոր կողմերում սոցիալիստական կոլեկտիվիզմի սկզբունքներն է՛լ ավելի ամրապնդելու ուղղությամբ:

# ՈՉ ԹԵ ԼՌՈՒԹՅԱՆ ՄԱՏՆԵԼ, ԱՅԼ ԲԱՑԱՀԱՅՏՈՐԵՆ ՔՆՆԱԴԱՏԵԼ ԹԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Ֆ. ՄԱԿԱՐՈՎ

Նախորդ հոդվածներում պատմվում էր կոլեկտիվում սկզբնական պարտիական կազմակերպության գործունեության տարբեր կողմերի մասին: Այժմ խոսվելու է քննադատության և ինքնաքննադատության մասին, այն մեթոդի մասին, որի օգնությամբ կոմունիստները ներգործում են կոլեկտիվի վրա, օգտագործում նրա հասարակական կարծիքի ուժը, նրա եռանդը, գիտելիքները, փորձը, բացահայտում են թերությունները և մշտապես բարելավում գործը:

Տեսնենք, թե կոնկրետ ի՞նչ դեր է խաղում քննադատությունն ու ինքնաքննադատությունը մեր կյանքում, որն է նրա ուժը, ինչու է անհրաժեշտ ըստ ամենայնի վարգացնել այն:

## ՊԱՐՏԻԱՅԻ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՓՈՐՁՎԱԾ ՄԵԹՈԴԸ

Մշակելով բանվոր դասակարգի ռևոլյուցիոն պարտիայի, նոր տիպի պարտիայի մասին ուսմունքը, մարքսիզմ-լենինիզմի կլասիկները մեծ ուշադրություն են նվիրել քննադատության և ինքնաքննադատության հարցերին: Քննադատության և ինքնաքննադատության ըստ ամենայնի վարգացումը նրանք համարել են պարտիայի նորմալ գործունեության, նրա առջև ծառացած խնդիրների հաջող լուծման անհրաժեշտ պայմանը: Մարքսը, Էնգելսը, Լենինը կոմունիստներին սովորեցնում էին իրենց նպատակներին հասնելու համար հմտորեն օգտվել քննադատության զենքից, գործնականում ցույց տալով, թե դա ինչպես պետք է անել:

Երբ 1891 թվականին Ֆ. Էնգելսը առաջին անգամ հրապարակեց Կ. Մարքսի «Գոթայի ծրագրի քննադատությունը», որտեղ քննադատական խոր վերլուծության էր ենթարկվում գերմանական սոցիալ-դեմոկրատիայի ծրագիրը, դա առաջ բերեց գերմանական սոցիալ-դեմոկրատների օպորտունիստորեն տրամադրված լիդերների վրդովմունքը: Նրանք մտքներով էլ չէին անցկացնում, որ կարելի է այդպես բացահայտորեն մամուլում հայտարարել իրենց պարտիական ծրագրի սխալների մասին: Իսկ Էնգելսը այլ մոտեցում ուներ. «Պաշտոնական օրգանում հոդվածի լույս տեսնելը,— նկատում էր նա,—բթացնում է թշնամական ելույթների խայթոցը և մեզ հնարավորություն է տալիս ասելու՝ տեսեք, թե ինչպես ենք մենք ինքներս մեզ քննադատում, մենք միակ պարտիան ենք, որը կարող է իրեն թույլ տալ այդ բանը» (Երկեր, առաջին հրատ., հատ. 28, էջ 281 ռուս.): Փոքր-ինչ ավելի ուշ Էնգելսը Բեբելին գրում էր. «Ինձ միանգամայն անհրաժեշտ է թվում, որ պարտիան... քննադատության ենթարկի իր անցյալ գործունեությունը և դրանով սովորի ավելի լավ գործելակերպ» (Երկեր, առաջին հրատ., հատ. 29, էջ 155—156 ռուս.):

Ստեղծելով և ամրապնդելով մեր պարտիան, Վ. Ի. Լենինը ձգտում էր հասնել այն բանին, որ պարտիայի ամբողջ գործունեությունը ներթափանցված լիներ աշխատանքի թերությունների, նրա առանձին գործիչների սխալների և անճիշտ գործողությունների համարձակ, սկզբունքային քննադատության և ինքնաքննադատության ոգով: Նա միշտ շատ վճռական կերպով ըմբոստանում էր քաղքենիական ինքնահանգստացման, ինքնագոհության դեմ, նշելով, որ «ինքնաքննադատությունն անպայման անհրաժեշտ է ամեն մի կենդանի ու կենսունակ պարտիայի համար» (Երկեր, 4-րդ հրատ, հատ. 8, էջ 575):

Քննադատության և ինքնաքննադատության մեթոդը լայնորեն օգտագործելու անհրաժեշտությունը բխում է կոմունիստական պարտիայի՝ որպես ամենաառաջավոր, հետևողականորեն ռևոլյուցիոն դասակարգի պարտիայի, էությունից: Վ. Ի. Լենինը գտնում էր, և պրակտիկան հաստատել է, որ սեփական թերությունների և սխալների համարձակ բացահայտումը պարտիային օգնում է ավելի արագ ազատվելու դրանցից, ավելի լավ և ավելի հաջող կատարելու իր ռևոլյուցիոն աշխատանքը: Նա կանխատեսում էր, որ դրանից չեն հապաղի օգտվել թշնամիները, որոնք կսկսեն ամեն կերպ չարախնդալ: Դրանից չպետք է շփոթվել, սովորեցնում էր Վ. Ի. Լենինը կոմունիստներին, հարկ չկա ուշադրություն դարձնել այդպիսի կսմթոցներին, այլ, «հակառակ նրանց, շարունակել իրենց ինքնաքննադատության և սեփական այն մինուսների անողոք մերկացման աշխատանքը, որոնք անպատճառ և անխուսափելիորեն կհաղթահարվեն բանվորական շարժման աճման շնորհիվ» (Երկեր, 4-րդ հրատ., հատ. 7, էջ 255):

Պարտիայի սխալների բացահայտ և ազնիվ քննադատությունը Լենինը գնահատում է որպես նրա ուժի նշան, և ոչ թե թուլության: Նա գտնում էր, որ հանուն աշխատավորների ազատագրության պայքարող ռևոլյուցիոն պարտիայի համար սարսափելի են ոչ թե սխալները, այլ դրանցում համառելը, սարսափելի է սխալների ընդունման և դրանք ուղղելու կեղծ ամոթը: Այն, որ մեր պարտիան մշտապես քննադատաբար է վերաբերվել իր գործունեության արդյունքներին, բացահայտել և համակողմանիորեն վերլուծել է իր սխալները, դա մեծապես օգնել է նրան պայքարի տարբեր էտապներում մշակելու ճիշտ ստրատեգիա և տակտիկա, համախմբելու իր շուրջը աշխատավոր մասսաներին և նրանց հաղթանակի հասցնելու ռևոլյուցիայում:

Սոցիալիստական կարգերի հաստատումից հետո, մեր պարտիայի՝ իշխանության գլուխ անցնելով, է՛լ ավելի հրամայական է դառնում քննադատության և ինքնաքննադատության մեթոդից լայնորեն օգտվելու անհրաժեշտությունը: Ո՞րն է դրա պատճառը:

Նախ, այն փաստը, որ կոմունիստական պարտիան դառնում է կառավարող պարտիա, նրան ստիպում է հատկապես պահանջկոտ լինել իր նկատմամբ, ցուցաբերել բացառիկ կզաստություն և օբյեկտիվություն իր գործունեությունը գնահատելիս, երբեք չհրապուրվել ձեռք բերված հաջողություններով, որքան էլ դրանք նշանակալի լինեն: Պարտիային այդ էր սովորեցնում Վ. Ի. Լենինը: Նա բազմիցս պարտիային նախազգուշացնում էր «շատ վտանգավոր դրության մեջ ընկնելուց,— այսինքն՝ այնպիսի մարդու դրության մեջ, որը մեծամտացել է»: «Այդպիսի դրությունը,— ասում էր նա,— բավականին հիմար, խայտառակ և ծիծաղելի դրություն է: Հայտնի է, որ քաղաքական պարտիաների անհաջողություններին և անկմանը շատ հաճախ նախորդել է այնպիսի վիճակ, որի մեջ այդ պարտիաները հնարավորություն են ունեցել մեծամտանալու» (Երկեր, 4-րդ հրատ., հատ. 30, էջ 676):

Երկրորդ, գործնականում ձեռնամուխ լինելով սոցիալիզմի կառուցմանը, պարտիան հարկադրված է աշխատավորներին իր հետևից տանել անհարթ ճանապարհով: Եվ միանգամայն բնական է, որ սոցիալիստական շինարարության ընթացքում պարտիայի և ժողովրդի առջև ծագում են շատ դժվարություններ ու խոչընդոտներ, անխուսափելի են կանապան վրիպումներն ու անհաջողությունները: Դրանք կարող են բացահայտվել և հաղթահարվել միայն քննադատության և ինքնաքննադատության միջոցով: «Մենք ոչ մի րոպե չենք մոռանում այն,— գրել է Վ. Ի. Լենինը,— որ անհաջողություններ ու սխալներ մենք իրոք շատ ենք ունեցել և շատ ենք անում: Չէ՞ մի, խուսափել անհաջողություններից ու սխալներից այնպիսի նոր, ամբողջ համաշխարհային պատմության համար նոր գործում, որպիսին է դեռ չտեսնված ՏԻՊԻ պետական կառուցվածքի ստեղծումը: Մենք անշեղ պայքարելու ենք մեր անհաջողություններն ու սխալները ուղղելու համար, կյանքում սովետական սկզբունքների մեր կիրառումը լավացնելու համար, կիրառում, որ շատ ու շատ հեռու է կատարելությունից» (Երկեր, 4-րդ հրատ., հատ. 33, էջ 41—42):

Կոմունիստական պարտիան անշեղորեն հետևում է լենինյան խորհուրդներին և ցուցումներին, մշտապես, հանգամանորեն և բծախնդրորեն վերլուծում իր գործունեությունը, համարձակ ու վճռաբար բացահայտում և ուղղում է թույլ տրված վրիպումները, սխալներն ու թերությունները: Իր որոշումների մեջ նա կոմունիստների, բոլոր կադրերի ուշադրությունն ուղղում է քննադատությունն ու ինքնաքննադատությունը վարգացնելու նպատակին, դա դիտելով որպես իր շարքերի ամրապնդման ու նրանց մարտունակության բարձրացման, մասսաների հետ կապերի ամրապնդման, նրանց ռևոլյուցիոն ստեղծագործական ակտիվության անշեղ բարձրացման կարևորագույն պայմաններից մեկը:

Այսպես, 1920 թվականին կայացած ՌԿ (բ) Պ
IX համառուսաստանյան կոնֆերանսը «Պար-
տիական շինարարության հերթական խնդիրնե-
րի մասին» բանաձևում նշեց, որ անհրաժեշտ է
պարտիայի ներքին կյանքում իրագործել պար-
տիայի ինչպես տեղական, այնպես էլ կենտրոնա-
կան հիմնարկների ավելի լայն քննադատու-
թյունը: Կենտրոնական կոմիտեին հանձնարար-
վում էր շրջաբերականով մատնանշել ներպար-
տիական քննադատությունն ընդլայնելու եղա-
նակները: X համագումարի (1921 թվական)
որոշումներում ընդգծվում էր, որ պարտիական
աշխատանքի մեթոդներ են նախ և առաջ կարե-
վորագույն բոլոր հարցերի լայն քննարկումները,
դրանց շուրջ ծավալվող դիսկուսիաները, ապա-
հովելով ներպարտիական քննադատության լիա-
կատար ազատությունը: ՀԱՄԿ (բ) Պ XV համա-
գումարը (1927 թվական) Կենտկոմի հաշվետվու-
թյան առթիվ բանաձևերում արձանագրեց, որ
«անհրաժեշտ է համարում, հատկապես պար-
տիայի առջև կանգնած խնդիրների բարդությու-
նը նկատի ունենալով և պարտիայի անդամների
ամբողջ մասսայի ակտիվության բարձրացման
նպատակով զարգացնել ներպարտիական դե-
մոկրատիան, ինչպես սովետական ապարատում,
այնպես էլ բուն պարտիայի մեջ եղած թերու-
թյունների գործարար քննադատությունը...
(«ՍՄԿՊ-ն բանաձևերում...», 2-րդ մաս, 1954,
էջ 558) :

Դրա անհրաժեշտությունը բազմիցս ընդ-
գծվել է նաև ՍՄԿՊ հաջորդ համագումարների,
կոնֆերանսների, Կենտկոմի պլենումների որո-
շումներում: Պարտիայի XXII համագումարում
ընդունված ՍՄԿՊ ծրագրում ասված է. «Պար-
տիայի կյանքի օրենքն է պարտիական կյանքի
լենինյան նորմերի և ղեկավարության կոլեկտի-
վության սկզբունքի անշեղ պահպանումը, պար-
տիական մասսաների հանդեպ պարտիական օր-
գանների և նրանց աշխատողների պատասխա-
նատվության բարձրացումը, բոլոր կոմունիստ-
ների ակտիվության ու ինքնագործունեության,
պարտիայի քաղաքականության մշակման ու
կենսագործման մեջ նրանց մասնակցության
աճման ապահովումը, քննադատության և ինք-
նաքննադատության զարգացումը» («ՍՄԿՊ
XXII համագումարի նյութերը», էջ 561) :

Այսպիսով, պարտիայի զարգացման, ռևոլյու-
ցիայի հաղթանակի և սոցիալիզմի կառուցման
համար նրա պայքարի բոլոր էտապներում քըն-
նադատությունն ու ինքնաքննադատությունը
գտնվել են կոմունիստների ուշադրության կենտ-
րոնում: Դա իրեն լիովին արդարացրել է պատ-
մական ամենատարբեր պայմաններում և, ինչ-
պես ասված է ՍՄԿՊ ծրագրում, պարտիան ան-
հրաժեշտ է համարում «ըստ ամենայնի զար-
գացնել քննադատությունը և ինքնաքննադատու-
թյունը որպես աշխատանքի փորձված մեթոդ,
սխալներն ու թերությունները հայտնաբերելու և
ուղղելու, կադրերին ճիշտ դաստիարակելու
ուղի»: Հենց այդ ուղղությամբ պարտիական
կազմակերպությունների ուշադրությունը սրում
է նաև ՍՄԿՊ կանոնադրությունը:

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ՇԱՐԺԻՉ ՈՒԺԸ

Ամենօրյա կյանքում ամեն ոք կարող է տես-
նել, թե որքան մեծ է քննադատության նշանա-
կությունը մեր արտադրության զարգացման, սո-
վետական մարդկանց դաստիարակության, ժո-
ղովրդի համար կենսականորեն կարևոր բոլոր
պրոբլեմների լուծման գործում: Զուր չեն ասում,
որ սոցիալիզմի օրոք քննադատությունն ու ինք-
նաքննադատությունը շարժիչ ուժ է, հասարա-
կական զարգացման հզոր արագացուցիչ:

Իսկ ինչո՞ւմ է դա գործնականում դրսևորվում:

Նախ և առաջ նրանում, որ քննադատությունն
ու ինքնաքննադատությունը ինչպես ամբողջ հա-
սարակության կյանքում, այնպես էլ յուրաքան-
չյուր կոլեկտիվի ներսում ծագող հակասություն-
ների լուծման հիմնական եղանակն է: Բանվոր-
ների, գյուղացիների, ինտելիգենցիայի արմա-
տական շահերի ընդհանրության և դրա հիման
վրա ստեղծված՝ սովետական ժողովրդի սոցիալ-
քաղաքական ու գաղափարական անխախտ մի-
ասնության առկայությունը բնավ չի նշանակում,
թե սոցիալիստական հասարակարգը առհասա-
րակ զերծ է ամեն տեսակ հակասություններից:
Նա զարգանում է մարքսիստական դիալեկտի-
կայի ընդհանուր օրենքների համաձայն: Ինչպես
և ամեն մի կենդանի օրգանիզմում, այնտեղ
անընդհատ պայքար է տեղի ունենում նորի և
հնի, ծնվողի և դա՛րն ապրողի միջև, նոր ծա-
գողի ու հաստատվողի և անցյալից մնացողի մի-
ջև, թեև վերջինս մեռնում է: Այս ամենը ծնում
է որոշակի հակասություններ, որոնք սոցիալիս-
տական հասարակարգի պայմաններում իրենց
լուծումն են պահանջում քննադատության և
ինքնաքննադատության միջոցով:

Սոցիալիստական հասարակարգը առաջանում
է կապիտալիզմի փլատակների վրա և կրում նրա
բնածին արատները: Դրանք են՝ մասնավոր սե-
փականատիրական հոգեբանությունը, կրոնա-
կան և ազգային նախապաշարմունքները, հան-
ցագործության դրսևորումները և այլ արատներ:
Կապիտալիզմի մնացուկների կրողները կենդանի
մարդիկ են: Հնացած սովորույթների և տրա-
դիցիաների երկրպագուները ձգտում են երկա-
րացնել դրանց գոյությունը, պաշտպանում են
իրենց դիրքերը, նեղ շահերը և օբյեկտիվորեն



հակազդում նորին, առաջադիմականին: Մեր
հասարակարգին խորթ երևույթների վերացումը
տեղի չի ունենում առանց դժվարությունների,
շահերի բախումների, առանց կենսական կոնֆ-
լիկտների: Նմանօրինակ հակասությունները
զգալի չափով լուծվում են քննադատության օգ-
նությամբ և նրա միջոցով: Սուր և անողոք
քննադատելով անցյալից ժառանգված արատ-
ները, կապիտալիզմի մնացուկների կոնկրետ
կրողներին, բացահայտելով, թե ինչպիսի վնաս
են հասցնում նրանք հասարակությանը, պար-
տիան, աշխատավորների մասսայական կազմա-
կերպությունները, սովետական պետական օր-
գանները նրանց դեմ ուղղում են հասարակա-
կան կարծիքի ուժը և քայլ առ քայլ մարդկանց
ազատագրում դրանցից, վերացնում այն ամենը,
ինչ արգելակում է նոր, կոմունիստական հա-
սարակական հարաբերությունների զարգացումը:

Հաղթանակած սոցիալիզմը նյութական և հո-
գևոր անհրաժեշտ նախադրյալներ է ստեղծում
անցյալի մնացուկները հաղթահարելու, ուրեմն և
հակասությունները լուծելու համար: Բայց այդ
նախադրյալները պետք է համալրվեն, լրացվեն,
ամրապնդվեն նպատակասլաց և ակտիվ դաս-
տիարակչական աշխատանքով, որի նպատակը
կլինի մեր մարդկանց փրկել անցյալի կապանք-
ներից, նրանց գիտակցության և վարքագծի մեջ
եղած կապիտալիզմի մնացուկներից, հասարա-
կության կյանքի բոլոր բնագավառներում հաս-
տատել և ամրապնդել առաջադիմականը, կոմու-
նիստականը:

Քննադատությունը և ինքնաքննադատու-
թյունը այդ աշխատանքի կարևորագույն բաղ-
կացուցիչ մասն է: Նա մերկացնում է հին
հասարակարգից ժառանգված արատները,
ցույց տալիս դրանց վնասակարությունը մեր
կյանքում, ակտիվ օգնում է հաղթահարելու
մարդկանց հետամնաց հայացքներն ու տրամա-
դրությունները, օգնում, որ նրանք բարձրացնեն
իրենց գիտակցականությունը, ազատվեն նա-
խապաշարմունքներից, վնասակար սովորու-
թյուններից և ընտելություններից: Եվ որքան
կոլեկտիվում ուժեղ է թշնամանքը այդ բացասա-
կան երևույթների հանդեպ, որքան կոլեկտիվը
սուր վերաբերմունք է ցույց տալիս վատ արարք-
ներին, իր առանձին անդամների սխալ վարքա-
գծի փաստերին, օգտագործելով բացահայտ խո-
սակցության ձևը, այնքան մարդիկ շուտ են ա-
զատագրվում արատներից, այնքան ակտիվորեն
են իրենց մեջ զարգացնում կոմունիստական
գծեր:

Երբ խոսքը վերաբերում է սոցիալիստական
հասարակության մեջ նորի և հնի հակասություն-
ներին, նկատի չի առնվում միմիայն այն, ինչ
մեզ ժառանգություն է մնացել անցյալից, կապի-
տալիզմից: Ինչպես ցույց է տալիս պատմական
փորձը, հակասություններ կան նաև հենց սո-
ցիալիստական հասարակարգի մեջ, արտադրու-
թյան սոցիալիստական եղանակի մեջ: Այդօրինակ
հակասություններից են, ասենք՝ զարգացող ար-
տադրողական ուժերի և արտադրական հարաբե-
րությունների ետ մնացող կողմերի միջև, տըն-
տեսության կազմակերպման ձևերի և դրանց կա-
ռավարման ձևերի ու մեթոդների միջև եղած
հակասությունները: Պարտիան այդ հակասու-
թյունները լուծում է դարն ապրած ձևերի բա-
ցահայտման, քննադատման միջոցով, որոշ ձևե-
րի կատարելագործման և այլ ձևեր հասարակու-
թյան արտադրողական ուժերի աճած մակարդա-
կին համապատասխանող նոր ձևերով փոխարի-
նելու միջոցով: Դրա հաստատումն են ՍՄԿՊ
Կենտկոմի 1965 թվականին կայացած պլենում-
ների մշակած միջոցառումները: Կենտկոմի
մարտյան և սեպտեմբերյան պլենումների որո-
շումներում ձևակերպված՝ պարտիայի տնտեսա-
կան քաղաքականությունը, այդ պլենումների
որոշումների հիման վրա ներկայումս իրագործ-
վող տնտեսական խոր ռեֆորմը համապատաս-
խանում են սոցիալիստական տնտեսության
զարգացման կենսական պահանջմունքներին,
թույլ են տալիս վերացնել շատ հակասություն-
ներ, որոնք կասեցնում էին արտադրության ա-
ճը, մասսաների աշխատանքային ակտիվու-
թյունը:

Լինելով հասարակության ներքին հակասու-
թյունների լուծման ակտիվ մեթոդ, քննադատու-
թյունն ու ինքնաքննադատությունը միևնույն
ժամանակ օգնում է բացահայտելու և վերացնե-
լու տնտեսական և կուլտուրական շինարարու-
թյան ամենօրյա պրակտիկայում եղած թերու-
թյունները, պայքարելու անշարժության ու լճաց-
ման դրսևորումների դեմ, հաստատելու նորը,
առաջադիմականը: Արտադրության կատարելա-
գործման և զարգացման նպատակին ուղղված
այդօրինակ քննադատության յուրատեսակ ձև է
սոցիալիստական մրցությունը: Մրցության ըն-
թացքում արտադրության առաջավորները, նո-
րարարները գործով քննադատում են աշխա-
տանքի կազմակերպման հնացած նորմաներն ու
անկատար ձևերը: Երբ կոլեկտիվում լավ է
կազմակերպված մրցությունը, երբ մարդիկ հաս-
տատակամություն են ցուցաբերում ստանձնած
պարտավորությունների կատարման պայքարում,
բարձրանում է փոխադարձ պահանջկոտությու-
նը, ստեղծվում թերությունների նկատմամբ ան-
հանդուրժողության մթնոլորտ: Դա կգաստաց-
նում է աշխատողներին, նպաստում նրանց աշ-
խատանքային ակտիվությանը, ստեղծագործա-
կան նախաձեռնության աճին:

Բացառիկ կերպով մեծ է քննադատության և

ինքնաքննադատության դերը կադրերի դաստի-
արակության գործում: Այս կամ այն սխալն ու
վրիպումը թույլ տված աշխատողները ընկերա-
կան քննադատության ազդեցության տակ սովո-
րաբար վերանայում են իրենց վարքագիծը և վե-
րաբերմունքը գործի նկատմամբ, ավելի բարձր
պահանջկոտությամբ են տոգորվում իրենց հան-
դեպ, բարձրանում է նրանց պատասխանատվու-
թյունը հանձնարարված գործի համար: Եվ, ընդ-
հակառակը, կադրերի դաստիարակության գոր-
ծին մեծ վնաս է հասցնում սկզբունքային քննա-
դատության բացակայությունը: Այդպիսի մթնո-
լորտում աշխատողների բացասական գծերն ու
հատկությունները ո՛չ միայն չեն ուղղվում, այլ
է՛լ ավելի են խորանում: Այդ պատճառով պար-
տիական կազմակերպությունները, մեր ամբողջ
հասարակայնությունը չեն կարող հաշտվել ա-
ռանձին, ոչ բավականաչափ հասուն ղեկավար-
ների փորձերի հետ՝ իրենց դուրս դնելու քննա-
դատությունից, դրանից անջրպետելու այս կամ
այն աշխատողին: Սովորաբար այդպես են վար-
վում՝ դրդված այն կեղծ վախից, թե կարող է
ընկնել մարդու հեղինակությունը, նա կարող է
աշխատավորների աչքում վարկաբեկվել որպես
ղեկավար: Պրակտիկան ցույց է տալիս, որ դրա-
նից չպետք է վախենալ: Ինչպես իրավացիորեն
նշել է Ֆ. Է. Ձերժինսկին, «վարկաբեկվել կարող
է միայն նա, ով թաքցնում է իր թերությունները,
ով չարիքի դեմ պայքարել չի ուզում, այսինքն՝
նա, ով հենց պետք է վարկաբեկվի»:

Մեր ժամանակներում, հատկապես, պահանջ-
վում է խստագույն պետական կարգապահու-
թյուն: Դրա ամրապնդման անհրաժեշտությունն
ընդգծեց պարտիայի XXII համագումարը. այդ
կարգապահությունն օրգանապես բխում է ՍՄԿՊ
Կենտկոմի մարտյան և սեպտեմբերյան պլենում-
ների որոշումների էությունից: Աշխատանքա-
յին և պետական կարգապահության ամեն մի
խախտում վնաս է հասցնում մեր հասարակու-
թյանը: Պարտիական կազմակերպության, կոմու-
նիստների պարտականությունն է բացահայտել
խախտումը և այն վճռականապես դատապար-
տել: Կոլեկտիվը, աշխատավորները իրավունք
ունեն և պետք է ամեն մեկից, լինի նա շարքա-
յին աշխատող թե ղեկավար, խստիվ պատաս-
խան պահանջեն, թե ինչու նա հոգ չի տանում
պետության շահերի մասին, խախտում է սահ-
մանված կարգը, ցուցաբերում է անպատասխա-
նատվություն կամ անտարբերություն: Ինչպես
ամբողջ հասարակության մասշտաբով, այնպես
էլ յուրաքանչյուր կոլեկտիվում քննադատության
և ինքնաքննադատության կարգացումը հուսալի
միջոց է պայքարելու պետական կարգապահու-
թյան խախտումների, թափթփվածության, ան-
տնտեսավարության և շռայլության դեմ:



Հենվելով մասսաների վրա, պարտիան հե-
տևողականորեն ձգտում է բարելավել պետական
ապարատի գործունեությունը, արմատախիլ անել
բյուրոկրատիզմը, որը անցյալի ամենավնասա-
կար և ամենաանողկալի մնացուկներից մեկն է:
Վ. Ի. Լենինը գտնում էր, որ բյուրոկրատը մեր
ամենավատ ներքին թշնամին է: Ինչպես նշվել
է դեռևս «Բյուրոկրատիզմի դեմ մղվող պայքարի
արդյունքների և մերձավոր խնդիրների մասին»
XVI պարտիական կոնֆերանսի բանաձևում,
այդպիսի չարիքի դեմ պայքարելու վճռական մե-
թոդը ինքնաքննադատությունն է՝ առանց դեմ-
քին նայելու, քննադատությունը վարից վեր և
վերից վար: Սովետական ապարատի բարելավ-
ման կարելի է հասնել միայն այն դեպքում, նըշ-
ված էր այդ բանաձևում, եթե աշխատավորների
լայն մասսաները պայքարի ներգրավվեն բյուրո-
կրատիզմի դեմ. բանվոր դասակարգի ակտիվու-
թյան և ինքնագործունեության վրա, բուն բան-
վորների և գյուղացիների վերահսկողության
վրա չհենվող ամեն մի այլ պայքար չի կարող
լուրջ արդյունքներ տալ: Մասսաների քննադա-
տությունը ո՛չ միայն օգնում է վերացնելու ա-
պարատի աշխատանքում եղած բյուրոկրատա-
կան խեղաթյուրումները, նպաստում նրա ֆունկ-
ցիաների ավելի հստակ կատարմանը, այլ, որ
պակաս կարևոր չէ, կարգացնում է բուն աշխա-
տավորների ակտիվությունը, նրանց մեջ սրում
թերությունների հանդեպ անհաշտության զգա-
ցումը, օգնում է մշակելու կառավարման հըմ-
տություններ:

Մի խոսքով, սովետական հասարակության
կյանքի ո՛ր կողմն էլ, տնտեսական կամ կուլ-
տուրական շինարարության ո՛ր բնագավառն էլ
վերցնենք, ամենուրեք քննադատությունն ու
ինքնաքննադատությունը շատ կարևոր դեր ու-
նեն հնի հաղթահարման, նորի՝ իսկական կո-
մունիստականի կերտման, հաստատման, հասա-
րակական առաջադիմության կարգացման գոր-
ծում: Նրա կարևորագույն բնորոշ գիծն այն է,
որ նա ստեղծարար բնույթ է կրում: Մեր հասա-
րակարգում քննադատությունն ու ինքնաքննա-
դատությունն իր էությամբ արտահայտում է
աշխատավորների ամենալայն մասսաների գի-
տակցական, եռանդուն մասնակցությունը նոր
կյանքի կառուցմանը: Նրա ուժը նախ և առաջ
մասսայականությունն է, այն, որ սխալների
ուղղման, թերությունների վերացման, արտա-
դրության, հասարակական հարաբերությունների
կատարելագործման այդ ռևոլյուցիոն մեթոդից
ապա օգտվում են միլիոնավոր սովետական
մարդիկ:

Կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայ-
քարի հաջողությունը վճռվում է ոչ միայն երկ-
րի, ամբողջ հասարակության մասշտաբով, այլև
յուրաքանչյուր աշխատանքային կոլեկտիվում:
Իսկ այդ նշանակում է, որ քննադատության և
ինքնաքննադատության մեթոդն էլ պետք է կո-
մունիստական շինարարության խնդիրների իրա-
կանացման համար լայնորեն կիրառվի և հմտո-
րեն օգտագործվի ամենուրեք: Պարտիական
կազմակերպությունները, կոմունիստները կոչ-
ված են ապահովելու յուրաքանչյուր կոլեկտի-
վում քննադատության և ինքնաքննադատության
ըստ ամենայնի կարգացումը, նրան տալու իրոք
գործուն բնույթ: Ի՞նչ կերպ են նրանք այդ բա-
նին հասնում:

## ՅՈՒՐԱՔԱՆՉՅՈՒՐ ԿՈՄՈՒՆԻՍՏԻ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԻՐԱՎՈՒՆՔԸ

Կոլեկտիվում քննադատության և ինքնաքննա-
դատության կարգացումը, նրա ուղղությունը,
բնույթը, ներգործուն ուժը վճռականապես պայ-
մանավորված են նրանով, թե դրան ինչպես են
վերաբերվում կոմունիստները, պարտկազմակեր-
պությունը:

Մեր պարտիան խորապես շահագրգռված է,
որ յուրաքանչյուր կոմունիստ անհաշտ լինի ա-
մեն տեսակ թերությունների հանդեպ, իր տրա-
մադրության տակ եղած բոլոր միջոցներով
հասնի դրանց վերացմանը, միշտ և ամեն ինչում
ցուցաբերի բարձր սկզբունքայնություն և պար-
տիական պահանջկոտություն՝ օրինակ ցույց տա-
լով բոլոր աշխատավորներին: «Կոմունիստների
պարտականությունն է,— սովորեցրել է Վ. Ի.
Լենինը,— լռության չտալ իրենց շարժման թու-
լությունները, այլ բացահայտորեն քննադատել
դրանք, որպեսզի շուտով և արմատականորեն
ազատվեն դրանցից (Երկեր, 4-րդ հրատ., հատ.
31, էջ 216):

Լենինյան այս պահանջը իր արտացոլումն ու
վավերացումն է գտել ՍՄԿՊ կանոնադրության
մեջ: Կանոնադրությունը կոմունիստին պար-
տավորեցնում է կարգացնել քննադատությունն
ու ինքնաքննադատությունը, համարձակ բացա-
հայտել թերությունները և հասնել դրանց վերաց-
մանը, պայքարել պարադայնության, գոռոզա-
մտության, ինքնահանգստացման, տեղայնա-
թյան դեմ, վճռական հակահարված տալ քննա-
դատությունը ճնշելու ամեն տեսակ փորձերին,
հանդես գալ այն բոլոր գործողությունների դեմ,
որոնք վնաս են հասցնում պարտիային ու պե-
տությանը, և դրանց մասին հաղորդել պարտիա-
կան օրգաններին, ընդհուպ մինչև ՍՄԿՊ Կենտ-
կոմ: Իսկ որպեսզի պարտիայի անդամը կարողա-
նա հաջողությամբ կատարել իր այդ պարտակա-
նությունը, կանոնադրությամբ նրան իրավունք
է տրված պարտիական ժողովներում, կոնֆե-
րանսներում, կոմիտեների պլենումներում քննա-
դատելու ամեն մի կոմունիստի, անկախ նրա
գրաված պաշտոնից: Այսպիսով, քննադատու-
թյունն ու ինքնաքննադատությունը կոմունիստի
կարևորագույն կանոնադրական պարտականու-
թյունն է և, միաժամանակ, նրա անկապտելի
իրավունքը: Կանոնադրությունը ո՛չ միայն հռչա-
կում է այդ պարտականությունը, այլև նախա-
տեսում անհրաժեշտ երաշխիքներ, որպեսզի կո-
մունիստները կարողանան անարգել կատարել
իրենց այդ պարտականությունը, օգտվեն իրենց
իրավունքից՝ պաշտպանելու կոմունիստներին
քննադատության համար հալածելուց: Կանոնա-
դրության համաձայն, քննադատությունը ճնշելու
և քննադատության պատճառով հալածելու հա-
մար մեղավորները ենթարկվում են պարտիա-
կան խիստ պատասխանատվության՝ ընդհուպ
մինչև ՍՄԿՊ շարքերից վտարվելը:

Հոգ տանելով քննադատության և ինքնա-
քննադատության կարգացման մասին, կոմու-
նիստները կոչված են ելնելու դրա նկատմամբ
լենինյան պահանջներից: Քննադատությունը և
ինքնաքննադատությունը սուր և ուժեղ զենք է,
և կարևոր է, որ ամեն մեկը ճիշտ օգտվի այդ
զենքից:

Վճռականորեն և սուր կերպով մերկացնելով
թերություններն ու վրիպումները, սխալներն ու
անճիշտ գործողությունները, կոմունիստը կոչված
է միշտ մնալու պարտիականության շրջանակնե-
րում, հոգ տանելու, որ քննադատությունը կրի
իսկական պարտիական բնույթ: Քննադատու-
թյան պարտիականությունը որոշվում է նախ և
առաջ նրա բովանդակությամբ, այն բանով, թե
ինչ նպատակներ է նա հետապնդում, հանուն
ինչի է մղվում, ում շահերին է օբյեկտիվորեն
ծառայում: Իսկական պարտիական քննադատու-
թյունը միշտ գործարար բնույթ է կրում, նպա-
տակ ունի ո՛չ միայն բացահայտել թերություն-
ներն ու սխալները, ի հայտ բերել դրանց պատ-
ճառները, այլև հասնել դրանց վերացմանը:
Այդպիսի քննադատության հիմքում ընկած է մի
անկեղծ ձգտում՝ օգնել իր պարտիական և աշ-
խատանքային ընկերներին, կոլեկտիվին, սովե-
տական, պարտիական, տնտեսական օրգաննե-
րին՝ բարելավելու արտադրությունն ու կենցաղը,
բարելավելու մեր կյանքը:

Իսկ եթե մարդը քննադատում է սոսկ հանուն
քննադատության կամ նույնիսկ չարախնդալու
նպատակով, եթե նրա հայտարարություններն
ըստ էության դեմագոգիական բնույթ են կրում,
ապա այդպիսի քննադատությունը լենինյան, իս-
կական պարտիական քննադատության հետ
ընդհանուր ոչինչ չունի, դա արդեն քննադատա-
մոլություն է, որի դեմ պարտիան, սովետական
ժողովուրդը միշտ շատ վճռականորեն հանդես
են եկել և հանդես են գալիս: Այդպիսի քննա-

դատությունը ձեռնտու է միայն սովետական հասարակարգի թշնամիներին և չարակամներին:

Վ. Ի. Լենինը սովորեցրել է գործարար քննադատությունը տարբերել այն քննադատությունից, որն ամենից քիչ է հետապնդում թերությունններն իսկապես ուղղելու նպատակ: Նա խորհուրդ էր տալիս հետաքրքրվել սխալ քննադատության պատճառներով: «...երբ դուք լսեք այդպիսի քննադատություն,— նշել է Վ. Ի. Լենինը,— անբովանդակ քննադատություն, քննադատություն քննադատության համար, կզգա՛ստ եղեք, տեսե՛ք, գուցե քննադատող ընկերոջ ինքնասիրությունը որևէ բանով խոցված է, գուցե նա անձամբ վիրավորված կամ գրգռված է որևէ բանից» (Երկեր, 4-րդ հրատ., հատ. 31, էջ 549):

Պարտիան հոգ է տանում, որ քննադատությունն ու ինքնաքննադատությունը, մեր կյանքի որ կողմին էլ վերաբերեն, լինի առավելագույն չափով արդյունավետ: Քննադատությունը հարկ եղած ներգործությունը կարող է ունենալ միայն այն դեպքում, եթե հիմնված է ճշգրիտ տվյալների ու փաստերի, և ոչ թե կասկածների ու լուրերի վրա: Այլապես նա մարդկանց մեջ առաջ է բերում սոսկ վրդովմունք:

Մեր քննադատության տարբերիչ գիծն այն է, որ նա միշտ անկեղծ, բարյացակամ բնույթ է կրում, նպատակ ունի օգնել մարդուն ավելի լավանալու, և ոչ թե նրան անբաստանելու: Իսկ դա նշանակում է, որ իր ձևով մեր քննադատությունը պետք է այնպիսին լինի, որ չնսեմացնի մարդկային արժանապատվությունը: Որքան էլ սուր, սկզբունքային, տհաճ լինի քննադատությունը, այն անպայման պետք է մնա կոռեկտ, չվիրավորող:

Պարտիական քննադատության տարբերիչ գիծն այն է, որ նա արտահայտվում է այնվորեն, ի լուր ամենքի: Իսկ եթե քննադատությունը մղվում է լռելյայն, անկյուններում, փսփսոցով, մարդու բացակայությամբ, այն վերածվում է սովորական գժտության, որն ընդունակ է միայն խառնակչություն ստեղծելու կոլեկտիվում: Այնպես որ, եթե ուզում ես որևէ մեկին, կամ որևէ բան քննադատել, բարձրացիր ամբիոն, դեմ-դիմաց ասա ճշմարտությունը, այդ բանն արա բացեիբաց: Դա կլինի իսկապես պարտիական, և ոչ թե քաղքենիական մոտեցում քննադատությանը:

Իհարկե, այդպես քննադատելու համար հարկավոր է ցուցաբերել որոշակի վճռականություն, չվախենալ որևէ մեկի հետ հարաբերությունները փչացնելուց, չահաբեկվել այն բանից, որ վաստակում ես լրացուցիչ հոգսեր ու տհաճություններ, մի բան, որ, ցավոք, դեռ երբեմն պատահում է: Դեռ ոչ բոլորն են պատշաճ վերաբերվում քննադատությանն ու ինքնաքննադատությանը: Որոշ աշխատողներ այն ընդունում են հիվանդագին կերպով: Դրանից պատշաճ հետևություններ անելու փոխարեն նրանք փորձում են այն կասկածի տակ դնել, ամեն կերպ արդարացնել քննադատողին: Լինում է, երբ նույնիսկ ամենաարդարացի և օգտակար դիտողությունը բախվում է չինովնիկական անտարբերությանը, առաջ է բերում ոմանց դիմադրությունը: Բայց այդ նշանակո՞ւմ է արդյոք, որ կոմունիստը, մեր սովետական մարդը կարող է մի կողմ քաշվել, հաշտվել թերությունների հետ: Բնավ, ո՛չ: Նա է՛լ ավելի մեծ հաստատակամությամբ կսկսի գործել, կպայքարի չարիքը վերացնելու համար և կարող է վստահ լինել, որ պաշտպանություն կգտնի:

Ի հայտ բերել թերությունները, դրանք դնել հասարակության, կոլեկտիվի դատին՝ սա քննադատության սոսկ մի կողմն է: Մյուս, ամենևին ոչ պակաս, թերևս նույնիսկ ավելի կարևոր կողմը թերությունները որքան կարելի է արագ վերացնելն է: Ուստի, քննադատության նկատմամբ ցուցաբերվող վերաբերմունքի մասին դատում են նաև ըստ այն բանի, թե մարդը գործնականում ինչպե՛ս և ի՛նչ է անում ի հայտ բերված թերությունները հաղթահարելու համար: Ինչ օգուտ այն բանից, որ ոմանք կրքոտ կերպով հանդես են գալիս ամեն տեսակ չարիքների դեմ կամ ընդունում ուրիշների դիտողությունների իրավացիությունը, բայց իրենք մատը մատին չեն խփում, որպեսզի օգնեն՝ մինչև վերջ վերացնելու դրանք կարգի գցելու գործը:

Հանդիպում են նաև այնպիսի մարդիկ, որոնք պատրաստ են քննադատելու ի՛նչ ասես և ո՛ւմ ասես, բայց հենց որ խոսք է բացվում իրենց անձի մասին, խսկույն ևեթ սվիններով են դիմավորում քննադատությունը: Իհարկե, իր հասցեին դիտողություններ լսելը այնքան էլ հաճելի չէ: Եվ դրանց համաձայնելը, դրանք ընդունելը միշտ չէ, որ հեշտ ու հանգիստ է լինում: Մանավանդ, եթե մարդը անկեղծորեն համոզված է, որ ճիշտ է գործում: Եվ, այնուամենայնիվ, նա պարտավոր է լսել ուրիշների կարծիքը, մտածված վերաբերվել դրան, ելնել այն բանից, որ քննադատությամբ քեզ օգնել են ուզում:

Այս ամենը կարևոր է ընդգծել, մանավանդ որ դեռ կան մարդիկ, որոնք սխալ են վարվում: Հենց որ նրան քննադատում են, նա այլևս ընկերներին բարև չի տալիս: Ոմանք ավելի հեռուն են գնում, կանգ չեն առնում քննադատողներից վրեժ լուծելու առաջ, սպառնում են նրանց, փորձում կոլեկտիվից դուրս մղել: Ոմանք էլ պարզապես անտեսում են քննադատական դիտողությունները, չեն ցանկանում դրանք հաշվի առնել: Բայց է՛լ ավելի հաճախ հարկ է լինում հանդիպել այնպիսի փաստերի, երբ աշխատողը



անսահմանորեն համաձայն է քննադատությանը, ընդունում է թերություններն ու սխալները, բայց ոչինչ չի անում դրանք ուղղելու համար: Այս ամենը չի կարելի գնահատել այլ կերպ, քան որպես քննադատությունը ճնշելու յուրատեսակ ձևեր: Կոմունիստը, ամեն մի ազնիվ աշխատող ո՛չ միայն ինքը չպետք է նման որևէ բան թույլ տա, այլև կոչված է ամենավճռական պայքար մղելու քննադատությունը թուլացնելու և ճնշելու ամեն տեսակ փորձերի դեմ, ում կողմից էլ դրանք արվեն: Այդ է պարտավորեցնում նրա պարտիական ու քաղաքացիական խիղճը, նրա բարոյական պարտքը:

## ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ԴԵՐԸ

Կոլեկտիվում քննադատության և ինքնաքննադատության կարգացման համար պատասխանատու է յուրաքանչյուր առանձին կոմունիստ և ամբողջ սկզբնական պարտկազմակերպությունը: Այս կապակցությամբ ի՞նչ խնդիրներ են ծառանում նրա առջև:

Փորձը վկայում է, որ կոմունիստների մեջ, բուն պարտկազմակերպության ներսում որքան լավ է կարգացած քննադատության և ինքնաքննադատության ոգին, այնքան նա ավելի ուժեղ է ներթափանցում կոլեկտիվի ամբողջ կյանքի ու գործունեության մեջ: Իսկ այդ իր հերթին, ձեռք է բերվում ամենից առաջ ներպարտիական դեմոկրատիայի խստիվ կիրառման ու կարգացման հիման վրա: Կոմունիստները կոչված են կոլեկտիվի բոլոր անդամներին օրինակ ցույց տալ, թե ինչպես պետք է սուր, սկզբունքային ձևով դնել և լուծել արտադրության, դաստիարակության, կուլտուրայի և կենցաղի հարցերը, անհաշտ վերաբերվել ամեն մի թերության, բացահայտել ու կանխել այն:

Պարտկազմակերպությունը հոգ է տանում, որ կոլեկտիվում պայմաններ լինեն քննադատության և ինքնաքննադատության համար, որ ամեն աշխատող հնարավորություն ունենա հրապարակայնորեն արտահայտելու իր կարծիքը կոլեկտիվի գործունեության ուզած հարցի վերաբերյալ, աշխատանքի այս կամ այն բնագավառի վիճակի մասին: Քննադատությունը և ինքնաքննադատությունը ծավալվում է նախ և առաջ և ամենից շատ պարտիական, արհմիութենական և բանվորական ժողովներում, արտադրական խորհրդակցություններում: Ուստի խիստ կարևոր է, որ դրանք կանոնավոր կերպով անցկացվեն, որ դրանց քննարկմանը դրվեն կոլեկտիվի աշխատանքի ու կյանքի առավել կարևոր հարցերը և որպեսզի այնտեղ հարգանքով լսեն յուրաքանչյուր մասնակցի կարծիքը:

Աշխատողների ակտիվությունն ավելի բարձր, թերություններն ու բացերը քննադատելու, դրանց վերացման ուղիներ մշակելու ձգտումը նրանց մոտ ավելի ուժեղ կլինի, եթե նրանց արտահայտած քննադատական դիտողություններն ու գործարար առաջարկները հաշվի են առնվում և իրականացվում, երբ իրագործվում են կոլեկտիվ կերպով մշակված միջոցառումները: Պարտկազմակերպությունը, ձգտելով հասնել այդ բանին, կադրերին դաստիարակում է քննադատության նկատմամբ ճիշտ վերաբերմունքի ոգով: Եթե նա տեսնում է, որ որևէ մեկն անտեսում է աշխատավորների դիտողությունները, ապա նա աշխատողից պատասխան է պահանջում, խիստ տույժ տալիս նրան:

Կոլեկտիվում քննադատության և ինքնաքննադատության կարգացման, քննադատական դիտողությունների իրականացման համար, աշխատանքի թերությունները վերացնելու համար, հատկապես, պատասխանատու են ղեկավարները. ղեկավարներից պետք է կրկնակի պատասխան պահանջել: Չէ որ այն բանից, թե ինչպես է ղեկավարը վերաբերվում քննադատությանը, որ չափով ճիշտ վերաբերմունք ցույց տալիս հարցին, շատ բան է կախված, և հարկավոր է, որ նա խորապես գիտակցի այդ:

Քննադատության ամենամասսայական ամբիոնը մեր կենտրոնական, տեղական մամուլն է, բազմատիրաժ թերթերը, պատի թերթերը: ՍՄԿՊ Կենտկոմը բոլոր պարտիական կազմակերպությունների ուշադրությունն ուղղում է այն նպատակին, որ նրանք օգնեն ապահովելու մամուլի քննադատության ներգործունությունը: «Սովետական մամուլի ելույթների ներգործունությունը բարձրացնելու մասին» 1962 թվականի սեպտեմբերին ընդունված որոշման մեջ Կենտրոնական կոմիտեն ընդգծեց, որ քաշքշուկի և խուսագրությունների մեջ մեղավոր անձինք, որոնք արհամարհական վերաբերմունք են ցույց տալիս մամուլի ահապանգներին, որոնք ներգերատեսչական և անձնական շահերն ու «վարկի» նկատառումները ընդհանուր գործի շահերից բարձր են դասում, պետք է պարտիական և վարչական խիստ պատասխանատվության ենթարկվեն: Պարտիական կազմակերպությունները, ասված է որոշման մեջ, պարտավոր են մամուլի ելույթներն անտեսելու, քննադատության համար ազնիվ մարդկանց հալածելու փաստերը դիտել որպես պարտիական կյանքի լենինյան նորմերի խախտում, որպես դիմադրություն նորին, առաջադիմականին և ձգտում՝ արգելակելու մասսաների նախաձեռնությունն ու ստեղծագործական ակտիվությունը:

Կարճ ասած, յուրաքանչյուր պարտիական կազմակերպության խնդիրն է իր կոլեկտիվում ստեղծել այնպիսի իրադրություն, երբ ամեն մի

# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՎԱՐԿԱՎՈՐՄԱՆ ՇՈՒՐՋ

Վ. ԱՂԱՍՅԱՆ

Սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ներկա էտապում, երբ վիթ-
խարի չափերով աճել են հանրային արտադրության մասշտաբները, մեծացել
կապիտալ ներդրումների ծավալը և արտադրական ֆոնդերի չափերը, ժողո-
վրդական տնտեսության բոլոր օղակներում վճռական նշանակություն է ստա-
նում նյութական ու աշխատանքային ռեսուրսների ռացիոնալ ու արդյունավետ
օգտագործումը:

Սոցիալիստական ձեռնարկությունների արտադրական ֆոնդերի նշանա-
կալից մասը կազմում են շրջանառու արտադրական և շրջանառության ֆոն-
դերը: Բավական է նշել, որ 1964 թվականի սկզբին ՍՍՌՄ ժողովրդական
տնտեսության մեջ շրջանառու միջոցները կազմել են 118 միլիարդ ռուբլի, որից
արդյունաբերության մեջ՝ մոտ 46 միլիարդ, Հայկական ՍՍՌ ժողովրդական
տնտեսության մեջ մոտ 814,5 միլիոն ռուբլի: Շրջանառու միջոցների այդ-
պիսի խոշոր չափերի, ինչպես նաև ընդլայնված վերարտադրության պրո-
ցեսում դրանց կատարած բացառիկ կարևոր դերի պատճառով նրանց ճիշտ
կազմակերպումը և արդյունավետ օգտագործումը ներկա էտապում առավել
կարևոր նշանակություն են ստացել: Այդ գործում տնտեսական մնացած լծակ-
ների հետ մեկտեղ վճռական դեր է խաղում նաև վարկը:

Հայտնի է, որ սոցիալիստական ձեռնարկությունների շրջանառու միջոց-
ները գոյանում են ինչպես սեփական, այնպես էլ փոխառու միջոցների՝ բան-
կային վարկի հաշվին: Ինչպես սեփական, այնպես էլ փոխառու միջոցները
ձեռնարկություններին տրամադրվում են նրանց առջև դրված տնտեսական
խնդիրները լուծելու համար:

Տնտեսական հաշվարկի ամրապնդման, ժողովրդական տնտեսության մեջ
շրջանառու միջոցների ռացիոնալ օգտագործման տեսակետից կարևոր են
նրանց կազմավորման աղբյուրների ճիշտ ընտրությունը, սեփական ու փոխա-
ռու միջոցների միջև տնտեսապես հիմնավորված համամասնություններ սահ-
մանելը:

Ներկայումս ՍՍՌՄ արդյունաբերության մեջ սեփական ու փոխառու մի-
ջոցների օգտագործման շրջանակների սահմանազատման հիմքում ընկած է



աշխատանքի պաշտպանության խորհրդի (ԱՊԽ-ի) 1931 թվականի հուլիսի
23-ի որոշումը: Այդ որոշման համաձայն ձեռնարկությունների նորմավորվող
շրջանառու միջոցների մշտական անհրաժեշտ մինիմում պաշարներ ստեղծե-
լու համար գումարներ են տրամադրվում սեփական շրջանառու միջոցների ձևով:
Շրջանառու միջոցների լրացուցիչ պահանջմունքները (որ գերազանցապես
կապված են լինում ապրանքանյութական արժեքների սեզոնային պաշարներ
ստեղծելու հետ), ինչպես նաև չնորմավորվող շրջանառու միջոցների պահանջ-
մունքը ամբողջությամբ բավարարվում են բանկային վարկի հաշվին:

Պրակտիկան ցույց է տալիս, որ շրջանառու միջոցների կազմավորման
այս սկզբունքը որոշակիորեն սահմանափակում է արտադրության սեզոնային
բնույթ չունեցող ձեռնարկությունների հետ վարկային կապերի ընդլայնման
հնարավորությունները:

Հայտնի է, որ արտադրության սեզոնային բնույթ չունեցող ճյուղերում
միջոցների շրջապտույտը համեմատաբար հավասարաչափ է տեղի ունենում.
համեմատաբար կայուն բնույթ ունեն նաև շրջանառու միջոցների նկատմամբ
այդ ձեռնարկությունների պահանջմունքները: Արտադրության սեզոնային
բնույթ չունեցող ձեռնարկություններում շրջանառու միջոցների պահանջը,
գործող կարգին համապատասխան, հիմնականում բավարարվում է սեփական
շրջանառու միջոցների հաշվին: Այդ ճյուղերում փոխառու միջոցներն աննշան
տեղ են գրավում շրջանառու միջոցների կազմավորման աղբյուրների մեջ: Այս-
պես՝ 1965 թվականի սկզբին ռեսպուբլիկայի մեքենաշինական և հաստոցաշի-
նական ձեռնարկությունների շրջանառու միջոցների միայն 16,4, ռադիոէլեկ-
տրոնային արդյունաբերության և սարքաշինության ձեռնարկություններում՝
19,2, էլեկտրատեխնիկական արդյունաբերության մեջ՝ 22,4, քիմիական ար-
դյունաբերության մեջ՝ 20,1 տոկոսն են ծածկվել փոխառու միջոցների հաշվին:
Հակառակ դրան արդյունաբերության սեզոնային բնույթ ունեցող ձեռնարկու-
թյուններում վարկը շրջանառու միջոցների գոյացման հիմնական աղբյուրն է:
Այսպես՝ 1965 թվականի սկզբին ռեսպուբլիկայի սննդարդյունաբերության ձեռ-
նարկություններում շրջանառու միջոցների մոտ 70, թեթև արդյունաբերության
ձեռնարկություններում մոտ 50, մսեղենի և կաթնեղենի արդյունաբերության
ձեռնարկություններում ավելի քան 58 տոկոսը գոյացել են կարճատև վարկի
հաշվին [1]:

Հայտնի է, որ ծանր արդյունաբերության զարգացման տեմպերը զգալի-
որեն բարձր են արտադրության մնացած ճյուղերի զարգացման տեմպերից, այդ
ճյուղերում արտադրական ֆոնդերն ավելի արագ են աճում: Գնալով մեծանում է
նրանց տեսակարար կշիռը արդյունաբերության շրջանառու ֆոնդերի մեջ: Այդ-
պիսի պայմաններում շրջանառու միջոցների կազմավորման՝ 1931 թվականին
սահմանված կարգը հանգեցնում է ընդհանրապես արդյունաբերության և,
հատկապես, արտադրության սեզոնային բնույթ չունեցող ձեռնարկությունների
հետ վարկային կապերի թուլացման: Այդ արտահայտվում է արդյունաբերու-
թյան շրջանառու միջոցների կազմավորման աղբյուրների մեջ փոխառու մի-
ջոցների տեսակարար կշռի պակասեցմամբ:

---

1 Հաշվարկված է այդ ճյուղերի 1964 թ. հաշվապահական հաշվետվության տվյալների
հիման վրա:

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ վերջին տարիներին որոշ տեղաշարժեր են կատարվել արդյունաբերության շրջանառու միջոցների գոյացման աղբյուրների մեջ։

Մեր ռեսպուբլիկայում մեծապես աճել են վարկային ներդրումները. սակայն, դրանց աճի տեմպերը զգալիորեն ցածր են եղել ինչպես սեփական շրջանառու միջոցների, այնպես էլ վարկատուների և այլ պասսիվների աճի տեմպերից։ Այդ պատճառով զգալիորեն պակասել է փոխառու միջոցների տեսակարար կշիռը շրջանառու միջոցների կազմավորման աղբյուրների մեջ, 1960 թվականի 37 տոկոսից 1964-ին հասնելով 35,6 տոկոսի։ Հակառակ դրան բարձրացել է վարկատուների և այլ պասսիվների տեսակարար կշիռը՝ համապատասխանաբար 12,7 տոկոսից հասնելով 13,6 տոկոսի։

Յոթնամյակի անցած տարիներին ինչպես ՍՍՌՄ-ում ամբողջությամբ, այնպես էլ Հայկական ՍՍՌ-ում, ծանր արդյունաբերության մեջ վարկային ներդրումների աճի տեմպերն զգալիորեն գերազանցել են արտադրության մնացած ճյուղերի վարկային ներդրումների աճի տեմպերին։ Այսպես՝ ՍՍՌՄ արդյունաբերության մեջ, 1959 թվականի նկատմամբ, 1964-ին վարկային ներդրումներն աճել են 45,1 տոկոսով, այդ թվում՝ ծանր արդյունաբերության մեջ՝ 57, թեթև ու սննդի արդյունաբերության մեջ՝ 36,7 տոկոսով[1]. Հայկական ՍՍՌ-ում համապատասխանաբար 43,4, 88 և 35,5 տոկոսով։

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ ռեսպուբլիկայի ծանր արդյունաբերության ձեռնարկություններում վարկային ներդրումների աճը հիմնականում տեղի է ունեցել հաշվարկների հետ կապված փոխատվությունների ավելացման հաշվին։ Դրան հակառակ շրջանառու արտադրական ֆոնդերի սպասարկմանը ծառայող վարկերի տեսակարար կշիռը վարկային ընդհանուր ներդրումների մեջ ո՛չ միայն չի ավելացել, այլ նույնիսկ պակասել է։ Այսպես՝ վարկային ընդհանուր ներդրումների 88 տոկոս աճի դեպքում հաշվարկների հետ կապված (փոխատվություններ ըստ ճանապարհին գտնվող փաստաթղթերի և հաշվարկային վարկեր) վարկերն աճել են 4 անգամ, այդ թվում հաշվարկային վարկերը՝ 26 անգամ։ Իսկ ըստ նյութական արժեքների փոխատվությունները նվազել են 5 տոկոսով։ Այդ պատճառով նորմավորվող ապրանքանյութական արժեքների գծով տրված փոխատվությունների տեսակարար կշիռը վարկային ընդհանուր ներդրումների մեջ 1959 թվականի 34,6 տոկոսից 1964 թվականին իջել է 17,1 տոկոսի[2]։

Դա թույլ է տալիս եզրակացնելու, որ շրջանառու արտադրական ֆոնդերի սպասարկմանն ուղղված վարկերի ընդլայնման տեսակետից վարկային ներդրումների կառուցվածքում որակական փոփոխություններ տեղի չեն ունեցել։

Պրակտիկան ցույց է տալիս, որ տնտեսապես նպատակահարմար չէ արտադրության սեզոնային բնույթ չունեցող ձեռնարկություններին նորմավորվող շրջանառու միջոցների նորմատիվի չափով սեփական շրջանառու միջոցներ առանձնացնելը։ Բանն այն է, որ, չնայած շրջանառու միջոցների շրջապտույտի հարաբերական հավասարաչափությանը, միջոցների նկատմամբ ձեռնարկությունների պահանջմունքը տարվա ընթացքում նյութա-տեխնիկական մատա-

1 Տե՛ս, Журнал «Деньги и кредит», 1964 г., № 7, стр. 5.

2 Հաշվարկված է ՍՍՌՄ պետբանկի հայգրասենյակի վարկային հաշվետվությունների տվյալների հիման վրա։



կարարումների անհամաչափության և ուրիշ պատճառներով փոխվում են։ Դրա հետևանքով տարվա որոշ ժամանակաշրջանում ձեռնարկությունների սեփական շրջանառու միջոցները չեն բավականացնում մատակարարների հետ հաշվարկները ժամանակին կատարելուն, աշխատավարձ վճարելուն և արտադրական մնացած ծախսերը հոգալուն կամ ընդհակառակը, ձեռնարկությունների տրամադրության տակ մնում են ազատ միջոցներ, որոնք որոշակի ժամկետով չեն մասնակցում ձեռնարկությունների տնտեսական շրջանառությանը։ Երկու դեպքում էլ այդ բացասաբար է անդրադառնում ձեռնարկություններում տնտեսական հաշվարկի ամրապնդման վրա։

Տարվա ընթացքում շրջանառու միջոցների նկատմամբ ձեռնարկությունների պահանջմունքների փոփոխություններն արտահայտվում են նորմատիվի նկատմամբ ապրանքանյութական արժեքների փաստացի մնացորդների տատանումների ձևով։ Ըստ որում այդ տատանումները բավականին մեծ են։ Այսպես՝ Երևանի Վ. Ի. Լենինի անվան էլեկտրամեքենաշինական գործարանում 1965 թ. փետրվար ամսին նորմավորվող շրջանառու միջոցների փաստացի մնացորդը նորմատիվից պակաս է եղել 816 հազար ռուբլով, մարտին 352 հազարով։ Հունիս, հուլիս և օգոստոս ամիսներին ընդհակառակը փաստացի մնացորդը գերազանցել է նորմատիվը համապատասխանաբար 783, 852 և 1018 հազար ռուբլով։ Նորմավորվող շրջանառու միջոցների փաստացի պաշարների այդպիսի տատանումների պայմաններում ակնհայտ է դառնում այդ գումարները միայն սեփական աղբյուրների հաշվին ծածկելու աննպատակահարմարությունը։

Այնպիսին պետք է լինի արտադրության սեզոնային բնույթ չունեցող ձեռնարկությունների շրջանառու միջոցների կազմավորման սկզբունքը, որ կարողանա ճկուն ձևով լուծել շրջանառու միջոցների նկատմամբ ձեռնարկությունների տվյալ ժամանակաշրջանում ունեցած պահանջմունքների բավարարման հարցը և, միաժամանակ, ապահովի ժողովրդական տնտեսության մեջ շրջանառու միջոցների առավել ռացիոնալ օգտագործումը։ Շրջանառու միջոցների գոյացման 1931 թվականին սահմանված կարգը այդ պրոբլեմը չի լուծում։

Այդ կապակցությամբ դեռևս 1939 թվականից ՍՍՌՄ-ում կիրառվում է սեփական և փոխառու միջոցների օգտագործման շրջանակների սահմանազատման երկրորդ սկզբունքը։ Այդ սկզբունքի համաձայն նորմավորվող շրջանառու միջոցների փոխանցվող պաշարներ ստեղծելու համար հատկացված սեփական շրջանառու միջոցների մի մասը փոխարինվում է բանկային վարկով։ Բանկային վարկի հաշվին է ծածկվում նաև չնորմավորվող շրջանառու միջոցների ամբողջ պահանջմունքը։ Պրակտիկայում այդ սկզբունքն իրականացվում է ըստ նյութական արժեքների շրջանառության վարկավորման ձևով։

Սեփական շրջանառու միջոցների մի մասը վարկով փոխարինելը չի նշանակում շրջանառու միջոցների գոյացման մի աղբյուրը մեխանիկորեն մյուսով փոխարինել։ Ըստ շրջանառության վարկավորման ժամանակ շրջանառու միջոցները սեփական ու փոխառու միջոցների բաժանելը որակական նոր բովանդակություն է ստանում։ Վարկը դառնում է նորմավորվող շրջանառու միջոցների գոյացման պլանային և մշտական աղբյուրներից մեկը։ Դա շրջանառու միջոցների կազմավորման մեխանիզմը դարձնում է ճկուն։ Ըստ շրջանառության վարկավորումը հնարավորություն է ստեղծում հաշվի առնել ո՛չ միայն շրջանառու միջոցների նկատմամբ ձեռնարկությունների լրացուցիչ պահանջմունքը,

այլև այդ պահանջմունքների պակասելը։ Այսպիսով ըստ շրջանառության վար-
կավորումը առավել ճիշտ է զուգակցում ձեռնարկության և հասարակության
շահերը, ապահովում միջոցների նպատակասլաց և խնայողաբար օգտագոր-
ծումը։ Այդ կարելի է ցույց տալ ըստ շրջանառության վարկավորվող մի քանի
ձեռնարկությունների օրինակով։ Այսպես. 1964 թ. առաջին եռամսյակում կա-
բելի և լուսատեխնիկական գործարաններում պարտքի չափը 262 հազար ռուբ-
լով գերազանցել է նախատեսվածից։ Մինչդեռ ավտոդողերի, էլեկտրահրակա-
յուն, էլեկտրական ճշգրիտ սարքերի գործարաններում կոնտրոլ թվով սահման-
ված գումարը թերօգտագործվել է 304 հազար ռուբլով։
III եռամսյակում, բացառությամբ էլեկտրահրակայուն գործարանի,
մյուսներում կոնտրոլ թվով նախատեսված գումարը թերօգտագործվել է 578
հազար ռուբլով։ Այսպիսով I եռամսյակում կաբելի ու լուսատեխնիկական գոր-
ծարանները, երրորդում՝ էլեկտրահրակայուն գործարանը շրջանառու միջոցների
լրացուցիչ պահանջ են ունեցել, իսկ մնացած գործարաններն ընդհակառակը՝
ունեցել են ժամանակավորապես ազատ միջոցներ։ Ըստ շրջանառության չվար-
կավորելու դեպքում առաջին եռամսյակում կաբելի ու լուսատեխնիկական, եր-
րորդում՝ էլեկտրահրակայուն գործարանները սեփական միջոցներով չէին կա-
րող բավարարել իրենց պահանջմունքները։ Իսկ մնացած գործարաններում
կմնային ավյալ ձեռնարկությունների համար ավելորդ միջոցներ։ Ըստ շրջանա-
ռության վարկավորման միջոցով տեղի է ունեցել միջոցների վերաբաշխում, և
բոլոր գործարանների պահանջմունքներն ինչպես հարկն է բավարարվել են։
Ընդ որում վարկային ռեսուրսներն զգալիորեն համալրվել են առաջին եռամ-
սյակում 43 հազար, երրորդում՝ 559 հազար ռուբլով։ Այսպիսով վերլուծու-
թյունը ցույց է տալիս, որ նորմավորվող շրջանառու միջոցները սեփական և
փոխառու միջոցների հաշվին կազմավորելը շրջանառու միջոցների միասնական
ֆոնդի առավել ռացիոնալ օգտագործման ձև է։

Ըստ շրջանառության վարկավորումը նպաստում է պետական ձեռնարկու-
թյունների փոխհարաբերություններում տնտհաշվարկային սկզբունքի ամրա-
պնդմանը։ Վարկավորման այս ձևի ժամանակ մատակարարների բոլոր պա-
հանջները բավարարվում են վարկի հաշվին՝ հետագայում ձեռնարկության սե-
փական շրջանառու միջոցներից փոխհատուցվելու պայմանով։ Այդ ապահովում
է ձեռնարկությունների վճարունակությունը և բարձրացնում վճարման կարգա-
պահությունը։ Այսպես՝ 1964 թվականին և 1965 թվականի առաջին կիսամյա-
կի բոլոր հաշվետու օրերում (յուրաքանչյուր ամսի 1-ի դրությամբ) ավտոդո-
ղերի, էլեկտրական ճշգրիտ սարքերի գործարանները պետական բանկին և մա-
տակարարներին պարտքեր չեն ունեցել։ Իսկ կաբելի, էլեկտրահրակայուն իրե-
րի, լուսատեխնիկական գործարանները նույն ժամանակամիջոցում հաշվետու
18 օրերից միայն 3—4-ում են ունեցել ժամկետանց պարտք։

Ըստ շրջանառության վարկավորումը նպաստում է գերնորմատիվային և
ավելորդ ապրանքանյութական պաշարների իջեցմանը։ Այս ձևի վարկավորման
մեխանիզմը առավել լրիվ է ընդգրկում ձեռնարկությունների ապրանքանյութա-
կան արժեքները։ Այդ բանկին հնարավորություն է տալիս առավել արդյունա-
վետ ներգործելու գերնորմատիվային պաշարների չափերի կրճատման վրա։

Ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ Երևանի կաբելի, լուսատեխնի-
կական, էլեկտրասարքերի գործարաններում (որոնք վարկավորվում են
ըստ շրջանառության) գերնորմատիվային չվարկավորված պաշարները կազ-



մում են նորմատիվի 7—10 տոկոսը, մինչդեռ ըստ շրջանառության չվարկա-
վորվող Երևանի էլեկտրատեխնիկական, Կամոյի կաբելի, Լենինականի էլեկ-
տրատեխնիկական, Արթիկի վակուում էլեկտրավառարանների և այլ գործա-
րաններում այն կազմել է 16—126 տոկոս։

Այսպիսով, ըստ շրջանառության վարկավորումը նպաստում է շրջանա-
ռու միջոցների համապետական միասնական ֆոնդի առավել ռացիոնալ օգ-
տագործմանը, ապահովում մատակարարների հետ հաշվարկների ժամանակին
կատարումը, ուժեղացնում է վարկային կապերը արտադրության սեզոնային
բնույթ չունեցող ձեռնարկությունների հետ, պայմաններ ստեղծում ռուբլով
վերահսկողությունն ուժեղացնելու համար։

Վերջին տարիներին վարկավորման այդ առաջավոր ձևը լայնորեն կիրառ-
վում է ծանր արդյունաբերության սեզոնային բնույթ չունեցող ձեռնարկու-
թյուններում։ Եթե 1956 թվականի սկզբին ՍՍՌՄ-ում ըստ նյութական արժեք-
ների շրջանառության վարկավորվում էին ընդամենը 22 ձեռնարկություն, ապա
1965 թվականի սկզբին դրանց թիվը հասել է ավելի քան 2000-ի։ Միայն
ՌՍՖՍՌ-ում 1964 թվականի ընթացքում ըստ շրջանառությամբ վարկավորվող
ձեռնարկությունների թիվն ավելացել է 370-ով[1]։ Այժմ ՍՍՌՄ-ում ըստ շրջա-
նառության վարկավորվում են մեքենաշինական ձեռնարկությունների մոտ 50,
քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների՝ ավելի քան 25 տոկոսը։

Նույնը չի կարելի ասել մեր ռեսպուբլիկայի նկատմամբ։ 1959 թվականից
մինչև այժմ ռեսպուբլիկայում ըստ շրջանառության վարկավորվող ձեռնար-
կությունների թիվը ո՛չ միայն չի ավելացել, այլ նույնիսկ պակասել է։ Այժմ
այդ ձևով են վարկավորվում ռեսպուբլիկայի մեքենաշինական ձեռնարկու-
թյունների միայն 15, քիմիական արդյունաբերական ձեռնարկությունների 11
տոկոսը—ընդամենը 10 ձեռնարկություն։ Այդ պատճառով յոթնամյակի տարի-
ներին գնալով պակասել է ըստ շրջանառության վարկի տեսակարար կշիռը
ծանր արդյունաբերության ընդհանուր վարկային ներդրումների մեջ (1959 թ.՝
25,1, 1964 թ.՝ 14,4)։

Շրջանառու միջոցներն առավել ռացիոնալ օգտագործելու, տնտեսական
հաշվարկն ամրապնդելու, ձեռնարկությունների գործունեության վրա ռուբլով
վերահսկողությունն ուժեղացնելու տեսակետից՝ այդպիսի վիճակը նորմալ
համարել չի կարելի։

Ըստ նյութական արժեքների շրջանառության վարկավորման անբավարար
զարգացումը, մեր կարծիքով, առաջին հերթին հետևանք է ձեռնարկություն-
ներին սեփական շրջանառու միջոցներն անհատույց հատկացնելու մինչև այժմ
գործող կարգի։ Քանի որ ըստ շրջանառության վարկավորման ժամանակ ձեռ-
նարկությունների սեփական շրջանառու միջոցների մի մասը փոխարինվում է
բանկային վարկով, որի օգտագործման համար դրանք որոշակի վճար են տա-
լիս, ապա սեփական շրջանառու միջոցների անհատույց հատկացման պայ-
մաններում ձեռնարկությունների ղեկավարները շահագրգռված չէին անցնելու
վարկավորման այդ ձևին։ Նրանք ձգտում էին ունենալ որքան հնարավոր է շատ
սեփական շրջանառու միջոցներ։

Մինչև այժմ շրջանառու միջոցների պակասը լրացվում էր պետական
բյուջեի հաշվին։ Ընդ որում դրանք հսկայական չափերի են հասնում։ Այսպես՝

[1] Տե՛ս, журнал «Деньги и кредит», № 9, 1965 г., стр. 20.

1959—1963 թվականներին ՍՍՌՄ պետական բյուջեից շրջանառու միջոցների
պակասը ծածկելու համար տրված միջոցները գերազանցել են ՍՍՌՄ-ի 12
միութենական ռեսպուբլիկաների (բացի ՌՍՖՍՌ-ից, Ուկրաինական և Ղազա-
խական ՍՍՌ-ներից) 1964 թվականի բյուջեների ծավալը:
Յոթնամյակի անցած տարիներին (1959—1964 թթ.) ռեսպուբլիկայի պե-
տական բյուջեից միայն ժողտնտխորհի արդյունաբերական ձեռնարկություն-
ներին շրջանառու միջոցների պլանային աճի համար տրվել է մոտ 15 միլիոն
ռուբլի: Այդպիսի պայմաններում, ինչպես իրավացիորեն նշեց ընկ. Ա. Ն. Կո-
սիգինը՝ «...չի կարելի խոսել իսկական տնտհաշվարկի մասին, եթե ձեռնար-
կությունները իրենց հատկացված շրջանառու միջոցների օգտագործման հա-
մար ըստ էության տնտեսական ոչ մի պատասխանատվություն չեն կրում»:
Վերլուծությունը ցույց է տալիս, որ ժողտնտխորհի ձեռնարկությունների
32—48 տոկոսը յոթնամյակի անցած բոլոր տարիներին էլ ունեցել է սեփական
շրջանառու միջոցների պակաս՝ 36,6 միլիոն ռուբլի գումարով: Այդ հիմնակա-
նում առանձին ձեռնարկությունների կողմից օգուտների պլանը չկատարելու
հետևանք է:
Սեփական շրջանառու միջոցների այդպիսի խոշոր չափերի հասնող պա-
կասի պայմաններում շատ ձեռնարկություններ շրջանառու միջոցները տեղա-
դրել են չվարկավորվող ապրանքանյութական արժեքների գերնորմատիվային
մնացորդների մեջ, պարտապանների մոտ և թույլ են տվել շրջանառու միջոց-
ների այլ շեղումներ: Այսպես՝ 1959 թվականի սկզբին վերոհիշյալ ուղղություն-
ների մոբիլիզացված շրջանառու միջոցները կազմել են սեփական շրջանա-
ռու միջոցների առկա մնացորդի 10,6, 1964 թվականին՝ 17,3, 1965 թվականի
սկզբին՝ 14,4 տոկոսը [1]:
ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը խնդիր դրեց՝ հե-
տագայում հրաժարվել բյուջեի հաշվին ձեռնարկության շրջանառու միջոցների
անհատույց համալրումից և, անհրաժեշտության դեպքում, այդ նպատակների
համար նրանց տրամադրել ժամանակավոր վարկեր: Շրջանառու միջոցների
պակասը ի հաշիվ բանկային վարկի լրացնելը և շրջանառու միջոցների համար
որոշակի վճար սահմանելը տնտեսապես կխթանի սեփական շրջանառու մի-
ջոցների խնայողաբար օգտագործմանը, նպաստավոր պայմաններ կստեղծի
շրջանառու միջոցների գոյացման աղբյուրների մեջ վարկի դերի հետագա
բարձրացման համար:
Արդյունաբերական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու
գործում վարկի դերի հետագա բարձրացումը պահանջում է կատարելագործել
վարկավորման պրակտիկան: Ներկայումս գործող ձևերն ու մեթոդները, մեր
կարծիքով, ունեն որոշակի թերություններ և կարիք են զգում կատարելագործ-
ման: Ըստ շրջանառության վարկավորման զարգացումը պետք է ընթանա
ինչպես այդ ձևով վարկավորվող ձեռնարկությունների թվի ավելացման, այն-
պես էլ վարկավորման շրջանակներն ընդլայնելու ուղիով: Մենք համամիտ
ենք որոշ տնտեսագետների այն կարծիքին, որ ըստ շրջանառության վարկա-
վորման օբյեկտների մեջ պետք է մտցնել նաև աշխատավարձը: Հայտնի է, որ
սոցիալիզմի պայմաններում աշխատավարձը արտադրածախսերի տարրերից
մեկն է: Եթե արտադրածախսերի մի մասը (հումք, նյութեր և այլն) վարկավոր-
ամփոփ հաշվետվությունների տվյալներով:

---
[1] ՀՍՍՌ ԺՏԽ-ի համապատասխան տարիների



ման օբյեկտ են հանդիսանում, ապա արտադրածախսերի մյուս տարրը (աշ-
խատավարձը) վարկավորման օբյեկտ չհամարելու տնտեսական ոչ մի հիմք
չկա:
Գործող կարգին համապատասխան ըստ շրջանառության վարկի մարումը
կատարվում է միայն արտադրված ապրանքը բեռնելուց հետո: Պրակտիկան
ցույց է տալիս, որ այդ կարգը չի խթանում ձեռնարկությունների ռիթմիկ աշ-
խատանքին: Բացի այդ, այն բացասաբար է անդրադառնում մատակարա-
րումների պայմանագրային պարտավորությունները ժամանակին կատարելու
վրա: ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումը պահանջեց բարձրացնել ձեռ-
նարկությունների պատասխանատվությունը մատակարարումների պլանները
ժամկետին կատարելու գործում: Այդ կապակցությամբ անհրաժեշտ է վերա-
նայել վարկի վերադարձման գործող կարգը, մարումը կատարել ոչ թե ապ-
րանքների փաստացի բարձման համեմատ, այլ բարձման պլանին համապա-
տասխան, այդպիսի կարգը, մեր կարծիքով, տնտեսապես կխթանի արտադրան-
քի իրացման պլանի համաչափ և ժամանակին կատարումը:
Ըստ շրջանառության վարկավորման պրակտիկան կատարելագործելու
ուղիներից մեկն էլ վարկավորվող ձեռնարկությունների ապակենտրոնացված
հաշվանցումների գծով գործառնությունները հատուկ վարկային հաշիվներով
կատարելն է: Պրակտիկան ցույց է տալիս, որ այդ հաշիվների միավորումն
զգալիորեն արագացնում է փաստաթղթերի շրջապտույտը, հետևապես նաև
շրջանառու միջոցների շրջապտույտը: Այդ նույն նկատառումներով նպատա-
կահարմար է նաև ըստ շրջանառության վարկավորվող ձեռնարկություններին
ժամանակավոր կարիքների համար և պլանային փոխատվությունների կարգով
գերնորմատիվային պաշարների տակ փոխատվություններ տալ հատուկ վար-
կային հաշվից:
Գոյություն ունեցող կարգի համաձայն ըստ շրջանառության վարկի հա-
մար սահմանված է տոկոս: Տնտեսագետների մեծ մասը գտնում է, որ տնտե-
սական հաշվարկի տեսակետից ձեռնարկությունների այդ ծախսը չի արդարաց-
վում, նրանք առաջարկում են կոնտրոլ թվի սահմաններում փոխատվություն-
ներից տոկոս չգանձել: Արտադրական ֆոնդերը վճարովի դարձնելու դեպքում
այդպիսի հարցադրումը, մեր կարծիքով, ճիշտ է: Բանն այն է, որ վարկով
փոխարինվող միջոցների համար վճար է գանձվելու. այդպիսի պայմաններում
վարկի համար տոկոս սահմանելը տնտեսապես հիմնավորված չէ: Ինչ վերա-
բերում է կոնտրոլ թվից բարձր գումարով փոխատվություններին, ապա դրա
համար սահմանվող տոկոսը՝ մեր կարծիքով պետք է զգալիորեն բարձր լինի
սեփական շրջանառու միջոցների համար տրվող վճարից. այդ որոշակիորեն
կխթանի փոխառու միջոցները ռացիոնալ օգտագործելուն, ինչպես նաև կխո-
չընդոտի գերնորմատիվային ու ավելորդ պաշարների գոյացմանը:
Այժմ ձեռնարկությունների ըստ շրջանառության վարկավորման փոխա-
դրումը կատարվում է ձեռնարկությունների միջնորդություններով: Որոշ տըն-
տեսագետներ գտնում են, որ դա սահմանափակում է վարկավորման այդ ձևի
ընդլայնումը և առաջարկում են ըստ շրջանառության վարկավորմանը տալ
օրենսդրական բնույթ: Ձեռնարկությունների տնտեսական ինքնուրույնությունն
ընդլայնելու վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան պլենումի որոշում-
ների տեսանկյունով այդպիսի հարցադրումը, մեր կարծիքով, ճիշտ չէ: Այդ
կնշանակեր տնտեսական խթանման մեթոդները փոխարինել վարչական մե-

թողներով: Ըստ շրջանառության վարկավորման փոխադրվելու հարցը առաջվա նման պետք է լուծեն ձեռնարկությունները: Վարկավորման այդ ձեն այնպես պետք է կատարելագործվի, որ ձեռնարկությունները շահագրգռված լինեն այդ ձևին անցնելու:

Այժմ ըստ շրջանառության վարկավորվում են գերազանցապես ծանր արդյունաբերության ձեռնարկությունները: Արտադրության սեզոնային բնույթ չունեցող ձեռնարկությունների վարկավորման հեռանկարները գնահատելիս պետք է նկատի ունենալ, որ արտադրողական ուժերի զարգացման գործում գիտության դերի հետագա բարձրացումը կնպաստի ավելի թուլացնելու,— իսկ երբեմն նաև լրիվ վերացնելու,— ձեռնարկությունների գործունեության վրա բնական և սեզոնային գործոնների ազդեցությունը: Այդ նշանակում է, որ գնալով ավելանալու է արտադրության սեզոնային բնույթ չունեցող ձեռնարկությունների թիվը. ընդլայնվելու են ըստ շրջանառության վարկավորման սահմանները:

Արտադրության սեզոնային բնույթ չունեցող ձեռնարկությունների հետ վարկային կապերի ընդլայնումը կարևորագույն ժողովրդատնտեսական խնդիր է: Ըստ շրջանառության վարկավորման պրակտիկայի կատարելագործումը մեծ չափով կնպաստի այդ խնդրի լուծմանը:

# ՄԵՐ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՃՅՈՒՂԸ

## Կ. ՎԱՆՈՒՆՑ

Հայկական ՍՍՌ-ն պղնձի և մոլիբդենի հարուստ պաշարներով ՍՍՌՄ-ում գրավում է առաջատար տեղերից մեկը: Ռեսպուբլիկայի պղնձի պաշարների հիմնական մասը գտնվում է Զանգեզուրում՝ Քաջարանի, Ագարակի, Դաստակերտի և Լիճքի պղնձա-մոլիբդենային հանքավայրերում: Քաջարանի հանքաշահագործման պայմանները հնարավորություն են տալիս հանքերը մշակել բաց եղանակով, որպիսի հանգամանքը վճռական դեր է խաղում հանքաքարի հանույթի ինքնարժեքն իջեցնելու գործում: Մյուս կողմից, այդ հանքաքարից ստացվող պղնձի համեմատական էժանությունը պայմանավորված է հանքաքարում եղած մոլիբդենի բավականին բարձր պարունակությամբ, որի վրա էլ հենց ընկնում է հանույթի ու հարստացման ուղղությամբ կատարվող ծախսերի մեծ մասը:

Պղնձի մյուս մասը պարունակվում է Ալավերդու և Շամլուղի հանքավայրերում: Դրանք Հայաստանի առավել վաղուց մշակվող հանքերն են, որոնք աչքի են ընկնում մետաղի և հանքաքարի համեմատաբար բարձր պարունակությամբ: Ախթալայի բազմամետաղային հանքերը բնորոշ են նրանով, որ միաժամանակ պարունակում են ցինկ, կապար, պղինձ՝ ոսկու և արծաթի բարձր տոկոսայնությամբ:

Չնայած մեծ պաշարներին և հանույթի հանքաշահագործման բարենպաստ պայմաններին, ռեսպուբլիկայի պղնձի ռեսուրսների օգտագործումը դեռևս խիստ ետ է մնում: Այժմյան հանույթը կազմում է հետախուզված պաշարների 0,7—0,8 տոկոսը: Ներկայումս հետախուզված պաշարները թույլ են տալիս շեշտակիորեն բարձրացնել պղնձի հանույթը ռեսպուբլիկայում:

Ռեսպուբլիկայի 8 պղնձաբեր հանքերից 5-ը (Քաջարանի, Ղափանի, Ագարակի, Դաստակերտի և Լիճքի) գտնվում են Զանգեզուրում:

Հայաստանը ՍՍՌՄ-ում առաջնակարգ տեղ է գրավում մոլիբդենի պաշարներով: Հայաստանի մոլիբդեն պարունակող բոլոր հանքանյութերը պատկանում են պղնձա-մոլիբդենային կոմպլեքսային տիպին: Այստեղ մոլիբդենի պարունակությունը պակաս է, քան մենամետաղային հանքանյութերում, բայց դա լրացվում է ուրիշ բաղադրիչների (պղինձ և այլն) պարունակությամբ: Ներկայումս 0,6 տոկոս մոլիբդենի միջին պարունակություն ունեցող հայկական հանքանյութերը, որոնք պղինձ են պարունակում և աչքի ընկնում մեծ պաշար-

ներով ու հանքաշահագործման բարենպաստ պայմաններով, էական նշանակություն ունեն ՍՍՌՄ մոլիբդենի արտադրության հաշվեկշռում: Սակայն ինչպես պղնձի պաշարների, այնպես էլ մոլիբդենի պաշարների օգտագործումը Հայաստանում խիստ ետ է մնում: Հայաստանի մոլիբդենի՝ ամբողջ հաշվարկված պաշարները կենտրոնացված են Զանգեզուրի երեք հանքավայրերում: Քաջարանի հանքավայրը ինչպես պղնձի, այնպես էլ մոլիբդենի գծով առաջատար է:

Ռեսպուբլիկայի բազմամետաղային միակ հանքավայրը, որն արդյունաբերական նշանակություն ունի, Ախթալան է:

Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի համար որպես հումք են հանդիսանում պղնձի կոնցենտրատները, շտեյնը, պղնձի կեկին, իսկ մինչև վերջին ժամանակներս՝ նաև պղնձի հանքաքարը: Կոնցենտրատները պղնձաձուլական արտադրության հիմնական հումքն են: 1961 թվականին պղնձի կոմբինատում ամբողջ ձուլվածքի կոնցենտրատները կազմում էին 86,6 տոկոս: Պղնձաձուլական արտադրության ընդհանուր հումքային հաշվեկշռում տեղական հումքը կազմում է 90 տոկոս: Ներմուծվող հումքը ռեսպուբլիկան ստանում է Հյուսիսային Կովկասից և Դոնբասից՝ կոնցենտրատների և պղինձ պարունակող կիսաֆաբրիկատների ձևով:

Անհրաժեշտ է նշել, որ Հայաստանի պղնձի արդյունաբերության հումքային բազան, բառիս ամենալայն և հեռանկարային իմաստով, ընդգրկում է Անդրկովկասի բոլոր պղնձաբեր հանքավայրերը: Բանն այն է, որ Անդրկովկասում պղնձի ձուլման հետագա աճը պետք է տեղի ունենա ի հաշիվ Ալավերդում գոյություն ունեցող կոմբինատի, ինչպես նաև նոր՝ ըստ երևույթին Հայաստանում կառուցվելիք պղնձաձուլական կենտրոնի: Ուստի Հայաստանի սահմաններից դուրս գտնվող բոլոր պղնձաբեր հանքավայրերը կարող են միայն հումքի լրացուցիչ աղբյուր լինել: Այդ կապակցությամբ մատնանշենք Մադնեուլիի (Վրացական ՍՍՌ) լեռնահարստացուցիչ կոմբինատի շինարարությունը: Մադնեուլիի պղինձը կոնցենտրատների ձևով ստացվելու է Ալավերդու կոմբինատում:

Ռեսպուբլիկայի ալյումինի արտադրությունը ներկայումս ամբողջովին գործում է Ուրալից՝ 4 հազար կիլոմետր հեռավորությունից, փոխադրվող կավահողի հիման վրա: Թեժսարի հանքավայրի նեֆելիններից (որոնց պաշարները Միության ընդհանուր պաշարների 13 տոկոսից ավելի են) կավահողի ստացման կազմակերպմամբ ռեսպուբլիկայի ալյումինի արդյունաբերությունն ամբողջապես կվերամշակի տեղական հումքը:

Ալավերդու գործարանի վերակառուցման ու ընդլայնման և Ղափանի ֆլոտացիոն ֆաբրիկայի շինարարության ավարտումից հետո (1967 թվականից) Ալավերդին կդառնա լեռնամետալուրգիական, իսկ Ղափանը՝ գունավոր մետաղների հանքաքարի հանույթի և հարստացման կենտրոն:

Ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիան զարգացման նոր էտապ թևակոխեց հետպատերազմյան ժամանակաշրջանում, երբ գունավոր մետալուրգիան լրացվեց գունավոր մետաղների՝ ալյումինի, մոլիբդենի, ցինկի, կապարի և քիմիական մի շարք արժեքավոր նյութերի նոր տեսակներով:

Ալավերդու կոմբինատում վայերբարսերի արտադրության կազմակերպումով, գունամով և Երևանի կաբելի գործարանում գլանման ցեխի կառուցումով, գունավոր մետալուրգիան ավելի սերտ կապի մեջ մտավ ռեսպուբլիկայում ստեղծ-



ված արդյունաբերական կոմպլեքսի մյուս օղակների հետ: Ավարտվեց հետևյալ արտադրական ցիկլը՝ հանքաքար—պղնձյա կոնցենտրատներ—վայերբարսային պղինձ—գլանվածք—կաբելային արտադրանք—էլեկտրամեքենաշինություն և սարքաշինություն—էլեկտրաէներգետիկ տնտեսություն: 1960 թվականին ալյումինի գործարանում ֆոլգագլանվածքային ցեխի շահագործման հանձնումով ալյումինի արտադրությունը, որպես գունավոր մետալուրգիայի արտադրության ընդհանուր ցիկլի տարրերից մեկը, նույնպես ավարտուն ձևի հասավ:

Այդ ամենի շնորհիվ ռեսպուբլիկայի գունավոր մետալուրգիան, որը հետպատերազմյան հնգամյակների տարիներին հարստացավ մի շարք նոր արտադրություններով, շեշտակիորեն ավելացրեց համախառն արտադրանքի թողարկումը: Այսպես՝

Գունավոր մետալուրգիայի համախառն արտադրանքի թողարկման աճը
(1945 թ. = 1)

| | 1945 | 1950 | 1955 | 1958 | 1962 |
|---|---|---|---|---|---|
| Համախառն արտադրանքի թողարկումը | 1 | 2,5 | 8,1 | 10,0 | 17,4 |

1955 թվականին համախառն արտադրանքի զգալի աճը հիմնականում հետևանք էր այն բանի, որ գործարկվեցին լեռնահանքային արդյունաբերության նոր հզոր ձեռնարկություններ՝ Քաջարանի և Դաստակերտի կոմբինատները և Ախթալայի հանքավայրերը: Համախառն արդադրանքն առավել չափով մեծացավ նոր ձեռնարկություններում՝ նախագծային կարողությունների ավելացման և հին ձեռնարկություններում՝ արտադրությունն ընդլայնելու հաշվին:

Հայաստանի գունավոր մետալուրգիայի արդի ներճյուղային կառուցվածքին հատուկ է ակներև բազմակողմանիությունը, որը պայմանավորված է նյութա-հումքային բազայի բազմակերպությամբ և մշակվող հումքի կոմպլեքսային օգտագործմամբ:

Այս տեսակետից մեզ մոտ գլխավոր ճյուղը հանդիսանում է հանքահարստացուցիչը: Պղնձի, մոլիբդենի և բազմամետաղի հանույթով և վերամշակմամբ զբաղված են 5 ձեռնարկություն, որոնք ընդգրկում են հանքավայրերը (բաց հանքերը) և հարստացուցիչ ֆաբրիկաները: Դրանք Քաջարանի, Ղափանի, Դաստակերտի կոմբինատներն են և Ախթալայի հանքավայրերը, ինչպես նաև 1963 թվականին շարք մտած Ագարակի կոմբինատը: Այդ ճյուղի, ինչպես և ամբողջ գունավոր մետալուրգիայի խոշորագույն ձեռնարկությունը Քաջարանի կոմբինատն է:

Հանքահարստացուցիչ արդյունաբերության ձեռնարկություններում արտադրվող արտադրանքների նոմենկլատուրայի մեջ մտնում են պղնձի, մոլիբդենի, ցինկի և այլ կոնցենտրատները:

Ռեսպուբլիկայի ամբողջ գունավոր մետալուրգիայի արտադրանքի մեջ հատուկ տեղ են գրավում մոլիբդենային կոնցենտրատները: Մոլիբդենի արտադրությունը զգալի տոկոս է կազմում երկրում, ուստի, հենց այդ կոնցենտրատներն էլ բնորոշում են ճյուղերի մասնագիտացումը գունավոր մետաղների ընդհանուր միութենական արտադրությունում, նկատի ունենալով, որ պղինձը և ալյումինը գրեթե ամբողջովին վերամշակվում են ռեսպուբլիկայի ձեռնարկու-

թյուններում և արտահանվում են արդեն որպես պատրաստի արտադրանքներ՝ կաբել, էլեկտրամեքենաներ, էլեկտրատեխնիկական, լուսատեխնիկական արտադրանքներ և այլն։

Հայաստանի հանքահարստացուցիչ արդյունաբերությունն ունի երկակի նշանակություն, առաջին, դա պղնձաձուլական և դրա հետ կապված քիմիական արդյունաբերության հիմնական հումքային բազան է, երկրորդ՝ Միության մոլիբդենի գլխավոր մատակարարողներից մեկն է։

Պղնձի ձուլումը կենտրոնացված է Ալավերդու պղնձաձուլական կոմբինատում, որը թողարկում է էլեկտրոլիզային պղինձ՝ վայերբարսերի ձևով, որոնք անմիջականորեն օգտագործվում են գլանման հաստոցներում, ինչպես նաև քիմիական մի շարք արժեքավոր նյութեր՝ ծծմբաթթու, պղնձարջասպ, սիլիկաֆտորային նատրիում և մինչև վերջին ժամանակները՝ սուպերֆոսֆատ։ Ռեսպուբլիկայում արտադրված համարյա ամբողջ պղինձը մտնում է «Երևանկաբել» գործարանը և, որպես մետաղ, փաստորեն չի մասնակցում միջշրջանային փոխանակությանը։

Բացի արտադրանքի կարևորագույն տեսակների թողարկումից պղնձաքիմիական արդյունահանությունն ունի նաև այն նշանակությունը, որ, հանդիսանալով ռեսպուբլիկայի ամբողջ բազմակողմանի լեռնա-մետաղա-քիմիական կոմպլեքսի եզրափակող օղակը, միևնույն ժամանակ կապ է ստեղծում մյուս կարևոր ճյուղային կոմպլեքսի՝ էլեկտրատեխնիկական և սարքաշինական արդյունաբերության հետ։ Եվ, վերջապես, Հայաստանի գունավոր մետալուրգիան ընդգրկում է մետաղի ալյումինը։

Եթե գունավոր մետալուրգիայի ճյուղերը տարբերակենք ոչ թե ըստ տեխնոլոգիական հատկանիշի, այլ արտադրանքի բնույթի, ապա առաջին տեղը կբռնի պղնձաքիմիական արդյունաբերությունը՝ ինչպես պղնձի կոնցենտրատների արտադրությամբ, այնպես էլ վայերբարսյան պղնձի և, զուգրնթացաբար, քիմիական արտադրանքի թողարկմամբ։ Այսպիսով, չնայած մի ամբողջ շարք նոր արտադրանքներ են հանդես եկել, և պղնձի արդյունաբերությունը կորցրել է իր մենաշնորհային դրությունը, վերջինս, այնուամենայնիվ, առաջին տեղն է գրավում ռեսպուբլիկայի ամբողջ գունավոր արդյունաբերության մեջ։

Հայկական ՍՍՌ գունավոր մետալուրգիայի ձեռնարկությունների տեղաբաշխումը գլխավորապես պայմանավորված է բնական (հումքային) գործոնով։ Այդ տեսակետից բացառություն է կազմում ալյումինի արդյունաբերությունը, որի կազմակերպման հիմքում դրված է էներգետիկ գործոնը։

Ներկայումս Հայկական ՍՍՌ ամբողջ գունավոր մետալուրգիան կենտրոնացած է ռեսպուբլիկայի երեք արդյունաբերական հանգույցներում՝ Զանգեզուրում, Ալավերդում, Երևանում։ Զանգեզուրի հանքահանույթի հանգույցը, որը պղնձի և պղինձ-մոլիբդենի հանքաքարի պաշարների և հեռանկարների տեսակետից ամենախոշորն է, հանդիսանում է գունավոր մետաղների հանույթը և հարստացման գլխավոր կենտրոնը։ Ռեսպուբլիկայում ներկայումս գործող հինգ հանքահարստացուցիչ ձեռնարկություններից չորսը գտնվում են այստեղ՝ Քաջարանում, Ղափանում, Ագարակում, Դաստակերտում։ 1961 թվականին Զանգեզուրի ձեռնարկությունները տվել են հանքահարստացուցիչ արդյունաբերության համախառն արտադրանքի մեծ մասը։ Այստեղ են կենտրոնացած մոլիբդենի կոնցենտրատների ամբողջ արտադրությունը և պղնձի կոնցենտրատների արտադրության մեծ մասը։



Ալավերդու լեռնամետալուրգիական հանգույցում կենտրոնացած է պղնձի ամբողջ ձուլումը և դրա հետ կապված քիմիական արտադրանքների արտադրությունը, ինչպես նաև ցինկի, կապարի և պղնձի կոնցենտրատների արտադրությունը։

Երևանի հանգույցը ներկայացնում է ալյումինի գործարանը, որը մտնում է ռեսպուբլիկայի կենտրոնական շրջանի էլեկտրաուժ կլանող խմբի մեջ։

Զանգեզուրի և Ալավերդու հանգույցները, որտեղ կենտրոնացած է գունավոր մետալուրգիայի հիմնական մասը, ներկայացնում են որոշ տեսակի արդյունաբերահանգույցներ, այն է՝ հանքարդյունաբերական հանգույցներ, որոնք հատուկ տեղ են գրավում Հայկական ՍՍՌ արդյունաբերական հանգույցների սիստեմում։ Հանքարդյունաբերական հանգույցները, ռեսպուբլիկայում եղած մյուս արդյունաբերական հանգույցների համեմատությամբ, աչքի են ընկնում մասնագիտական հստակությամբ, որն արտահայտվում է արտադրության ընդհանուր կառուցվածքում հանքարդյունաբերության ճյուղերի ունեցած բարձր բաժնով։ Հանքանյութերի հանույթի ու վերամշակման հետ անմիջականորեն կապված ճյուղերը կազմում են հիշյալ հանգույցների ամբողջ արդյունաբերական արտադրության կեսից ավելին։ Գունավոր մետալուրգիայի Զանգեզուրի հանգույցի, ինչպես նաև Ալավերդու հանգույցի բաժինը նույնպես կազմում է ամբողջ արդյունաբերության կեսից ավելին։ Իրենց արտադրական միաճյուղ կառուցվածքով աչքի են ընկնում գունավոր մետալուրգիայի նաև առանձին կենտրոններ։

Գունավոր մետալուրգիայի զարգացման հեռանկարների հիմքում ընկած են նրա բոլոր ճյուղերի արտադրության աճն ու հետագա կատարելագործումը։

Հանքահարստացման գծով խնդիր է դրված հանքաքարի հանույթն ավելացնել գոյություն ունեցող հանքանյութային ու հարստացուցիչ ձեռնարկությունների ընդլայնելու և նորերը կառուցելու, ինչպես նաև հանքաքարը լրիվ մշակելու ու կոնցենտրատներ դարձնելու միջոցով, այն հաշվով, որպեսզի կոնցենտրատների մեջ առավել չափով մետաղներ պարունակվեն։ Պղնձի և պղինձ-մոլիբդենի հանքաքարի հանույթի աճի համար կան բոլոր օբյեկտիվ պայմանները՝ մեծ և մշտապես լրացվող պաշարներ, հիմնական հանքավայրերի բարենպաստ լեռնատեխնիկական պայմաններ, հարստացման տեխնոլոգիայի կատարելագործում (որի շնորհիվ հնարավոր է դառնում մինչև այժմ չօգտագործվող որոշ տիպերի հանքաքարի հանույթն ու հարստացումը) մեծ պահանջարկ մոլիբդենի, պղնձի և մի ամբողջ շարք հազվագյուտ ու ցրված մետաղների նկատմամբ և այլն։

Ներկայումս Քաջարանի կոմբինատն ընդարձակվում է այն հաշվով, որ նրա կարողությունը մի քանի անգամ ավելանա։ Առաջիկա հնգամյակում հնարավոր կդառնա վերամշակել հարստացուցիչ ֆաբրիկայի մնացուկները։ 1970 թվականից հնարավոր կլինի մշակել օքսիդացած հանքանյութը։ Ներկայումս վերին հորիզոնականներից հանվող օքսիդացած հանքանյութը չի օգտագործվում։

Ընդլայնվում և վերակառուցվում է Ղափանի պղնձահանքի կոմբինատը։ Հնի փոխարեն կառուցվում է նոր հարստացուցիչ ֆաբրիկա։ Կոմբինատի վերակառուցման նախագիծը մշակելիս Ղափանի պատմության մեջ առաջին անգամ նախատեսված է № 6 հանքի հանքաղանգվածը մշակել բաց եղանակով։

Մեծ հետաքրքրություն է ներկայացնում կոմբինատի ֆլոտացիոն մնացորդնե-
րի վերամշակման (վերահարստացման) նախատեսվող կազմակերպումը՝ եր-
կաթե հրաքարի կոնցենտրատների ստացումով հանդերձ: Երկաթե հրաքարի
կոնցենտրատը արժեքավոր արդյունք է, որը 35 տոկոս ծծումբ է պարունակում:
Դրա հետագա վերածումը ծծմբաթթվի նպատակահարմար է կատարել հենց
Ղափանում, հատկապես հաշվի առնելով, որ այն կարող է մտցվել Ղափանում
կառուցվող պղնձաքիմիական կոմբինատի կազմի մեջ:

Դաստակերտի կոմբինատի զարգացման հեռանկարներն ամբողջապես
կախված են նրանից, թե կատարվող երկրաբանական-հետախուզական աշխա-
տանքներն ինչ արդյունքներ կտան և հանքաքարի ինչ պաշարներ կհայտնա-
բերվեն (հանքավայրի խորությամբ ու թևերով): Հենց դրա վրա էլ պետք է հիմ-
նական ուշադրությունը դարձնել մոտակա տարիներին:

Արդեն առաջիկա հնգամյակի սահմաններում նախատեսվում է լեռնահան-
քային ձեռնարկության շինարարությունը Լիճքի հանքավայրերում: Չնայած
տվյալ հանքաքարը շատ պղինձ չի պարունակում, բայց այդ հանքավայրի
մշակումը տնտեսական հետաքրքրություն է ներկայացնում, որովհետև հնա-
րավոր է հանքաքարի բաց հանույթը: Հանքաքարի բաց հանույթի մի նոր ձեռ-
նարկություն է նախատեսվում Ագարակի կոմբինատի կազմում այն հաշվով,
որ հանքաքարը փոխադրվի Ագարակի հարստացուցիչ ֆաբրիկան, որտեղ այդ
դեպքում ավելացվելու է պղնձի ֆլոտացիայի մեկ սեկցիա:

Շեշտակիորեն կմեծանա Շամլուղի և Ախթալայի հանքաքարից ստացվող
կոնցենտրատների քանակը: Հանքերի ընդարձակման հետ միասին հարստա-
ցուցիչ ֆաբրիկա է կառուցվում Ախթալայում: Ֆաբրիկան կազմված է երկու
սեկցիայից, որոնցից մեկը նախատեսվում է Շամլուղի պղնձի հանքաքարի
հարստացման, իսկ երկրորդը՝ Ախթալայի բազմամետաղների հարստացման
համար:

Մետալուրգիայի գծով նախատեսվում է ավելացնել պղնձի ձուլումը, միա-
ժամանակ շեշտակիորեն ավելացնելով ծծմբաթթվի արտադրությունը: Ռես-
պուբլիկայի պղնձի ձուլման ավելացումը առաջիկա տարիներին կապահովվի
Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի՝ ներկայումս կատարվող վերակա-
ռուցման ու ընդլայնման շնորհիվ: Վերակառուցումն ավարտելուց հետո կոմ-
բինատում պղնձի ձուլումը կավելանա 3,5 անգամ: Կոմբինատի վերակառու-
ցումն ու ընդլայնումը կատարվում են տեխնոլոգիական պրոցեսի սխեմայի ար-
մատական փոփոխմամբ: Կենսագործվում է անցումը կրակային ձուլումից
էլեկտրական ձուլման:

Կոմբինատի վերակառուցման գործում մեծ նշանակություն ունի ծծմբա-
թթվի արտադրությունը աշտարակային եղանակից կոնտակտ եղանակի փոխա-
դրումը, որի շնորհիվ կբարձրանա ծծմբային գազի օգտագործման մակարդա-
կը և կբարելավվի ծծմբաթթվի որակը: Մեկ տոննա ծծմբի ինքնարժեքը կիջնի
2 անգամ: Նոր տեխնոլոգիական սխեմայում կարևոր տեղ պետք է գրավի նաև
հազվագյուտ և ցրված մետաղների (սելենի, թելուրի, ռենիումի և այլն) ստա-
ցումը, որոնց պարունակությամբ Ալավերդու կոմբինատում մշակվող կոնցեն-
տրատները շատ ավելի հարուստ են, քան երկրի մյուս պղնձաձուլական ձեռ-
նարկություններում մշակվող հումքը:

Առաջիկա հնգամյակում և դրան հաջորդող տարիներին հանքահարստա-
ցուցիչ արդյունաբերության զարգացումը և, դրա հետ կապված, հումքի սեղծ-



վող հաշվեկշիռը Անդրկովկասում, պահանջում են նոր, պղնձաձուլական գոր-
ծարանի կառուցման անհրաժեշտությունն այդ շրջանում: Նոր գործարանի
բարենպաստ տեղը Ղափան քաղաքն է: Այդ վայրի ընտրությունը պայմանա-
վորված է առավել խոշոր հանքահարստացուցիչ ձեռնարկությունների և, առա-
ջին հերթին, Ղափանի ու Քաջարանի կոմբինատների մոտիկությամբ, այնպիսի
տերիտորիայի առկայությամբ, որը պիտանի է խոշոր ձեռնարկություն կառու-
ցելու համար, տրանսպորտի շարժման հարմարությամբ, շինինդուստրիայի
օբյեկտների մոտիկությամբ, ինչպես նաև Ղափանի մարդկային ուժի օգտա-
գործման հնարավորությամբ: Ապագա պղնձաքիմիական կոմբինատի էներգե-
տիկ ծանրաբեռնվածությունը կվերանա Որոտանի կասկադի էլեկտրակայան-
ների էլեկտրաէներգիայի շնորհիվ:

Ղափանի պղնձաքիմիական կոմբինատի շինարարությունը սկսվելու է նոր
հնգամյակի վերջին:

Եվ, վերջապես, մոտակա ժամանակում ալյումինի արդյունաբերությունը
փոխադրվելու է տեղական հումքի բազայի վրա: 1968 թվականին Հրազդանի
լեռնա-քիմիական կոմբինատի գործարկմամբ Երևանի ալյումինի գործարանը
կսկսի ստանալ հայկական կավահող:

## Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

Վ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

# ԱՍՔԱՆԱԶ ՄՌԱՎՅԱՆ

*(Ծննդյան 80-ամյակի առթիվ)*

Սովետական Հայաստանի աշխատավորները սրտագին ու խոր հարգանքով նշեցին իրենց ականավոր զավակներից մեկի՝ Ասքանազ Մռավյանի ծննդյան 80-ամյակը:

Ասքանազ Մռավյանը պատկանում է լենինյան գվարդիայի այն հոյակապ սերընդին, որը ցարիզմի ու կապիտալիզմի դաժան պայմաններում հերոսաբար ուղի հարթեց սոցիալիստական ռևոլյուցիայի համար, իր ուսերին տարավ քաղաքացիական կռիվների ծանրությունը, դրեց սոցիալիստական հասարակարգի հիմքերը: Նա պարտիական ու պետական ականավոր գործիչ էր, տաղանդավոր հրապարակախոս, հռետոր:



Ձախից աջ՝ Ա. Մռավյան, Ս. Տեր-Գաբրիելյան։

— Ընկեր Մռավյանը բոլշևիկյան պարտիայի հին զինվորն էր, պրոլետարական ռևոլյուցիայի համար անխոնջ մարտնչողի տիպար ու բոլշևիկյան



պողպատյա կարգապահության մարմնացում,—այսպես են բնութագրել իրենց հին, մարտական ընկերոջը՝ Սերգո Օրջոնիկիձեն և Անաստաս Միկոյանը:

Ասքանազ Մռավյանի ռևոլյուցիոն, պարտիական ու պետական գործունեությունը հիմնականում ընթացել է Անդրկովկասում, նրա բազմազգ աշխատավորության ընդերքում:

Նա ծնվել է 1886 թվականի հունվարի 2-ին (նոր տոմարով), Գանձակ (այժմ Կիրովաբադ) քաղաքում: Այդտեղ էլ նա անց է կացրել իր պատանեկան տարիները, ծխական և քաղաքային դպրոցներում ստացել սկզբնական կրթությունը: 1903 թվականին 17-ամյա Ասքանազ Մռավյանը գալիս է Էջմիածին, ընդունվում է Գևորգյան ճեմարանը:

Ռուսաստանում և Անդրկովկասում 1903—1905 թվականների հեղափոխական մեծ իրադարձությունները խոշոր ազդեցություն են ունենում դեմոկրատական երիտասարդության և նրանց շարքում սոցիալական անարդարությունների դառնությունը ճաշակած, հասարակական խնդիրներով վաղ հասակից հրապուրվող, վառվռուն պատանի Մռավյանի վրա: Ռևոլյուցիոն շարժումների և մարքսիստական պրոպագանդայի ազդեցության տակ ձևավորվում են Ա. Մռավյանի հասարակական-քաղաքական հայացքները, որոնք հետագիեւմ ստանում են չեշտված ռևոլյուցիոն-մարքսիստական ուղղություն: Աշակերտական նստարանից նա տարվում է անլեգալ խմբակների գործունեությամբ, հրապուրված ուսումնասիրում է արգելված գրականությունը, իսկ Էջմիածնի ճեմարանում սովորած տարիներին հանդես է գալիս արդեն տվյալ քաղաքական ու սոցիալական կարգերի դեմ պայքարի նախաձեռնողների շարքերում:

Նրա աշխարհայացքի կաղապարման վրա կարևոր ազդեցություն է ունենում Գանձակի սոցիալ-դեմոկրատական միջավայրը, հնագույն սոցիալ-դեմոկրատ բոլշևիկ Մելիք Մելիքյանի (Դեղուշկայի) հետ ունեցած մոտ ծանոթությունը: Դեղուշկան ազատատենչ պատանու հասարակական ձգտումներին տալիս է խելացի ուղղություն, նախազգուշացնում նրան ավանտյուրիստական, նացիոնալիստական հրապուրանքներից, օգնում լրջորեն մտածելու հասարակական խնդիրների և նրանց լուծման եղանակների մասին, յուրացնելու բոլշևիկյան պարտիայի ծրագիրն ու տակտիկան:

1905 թվականի ապրիլին Ասքանազ Մռավյանը մտնում է բոլշևիկյան պարտիայի շարքերը և այդ ժամանակվանից մինչև իր կյանքի վերջը մնում նրա կարգապահ, անսայթաք, անվեհեր զինվորներից մեկը, Վ. Ի. Լենինի գործի և ուսմունքի հավատարիմ հետևորդը:

Բազմաթիվ առիթներով Ասքանազ Մռավյանը արտահայտել է իր հիացմունքը, սերը և հավատարմությունը Վ. Ի. Լենինի նկատմամբ, պրոպագանդել նրա ուսմունքը, պատմել երիտասարդ սերնդին նրա մեծ կյանքի, գործի ու ավանդների մասին:

Ա. Մռավյանին չի հաջողվում ավարտել ուսումը Էջմիածնի ճեմարանում: 1905 թվականի աշնանը, ռուսական առաջին ռևոլյուցիայի վերելքի բուռն շրջանում աշակերտական խռովություններին ակտիվ մասնակցելու համար մի քանի սաների հետ միասին նա կարողիկոսի կոնդակով վտարվում է ճեմարանից: Մռավյանը փորձում է ուսումը շարունակել Երևանում, թեմական դպրոցում: Բայց մեկ տարի չանցած նա, աշակերտության ռևոլյուցիոն ելույթներ կազմակերպելու համար, այստեղից ևս վտարվում է:

1905—1906 թվականներին Երևանում Ասքանազ Մռավյանը բոլշևիկներ Ալ. Մալխասյանի, Մ. Միրաքյանի (Շանթ), Գ. Սոկոլովսկու հետ կազմակերպչական-պրոպագանդիստական աշխատանք է տանում բանվորների, արհեստավորների և սովորող երիտասարդության շրջանում։ Նրա եռանդուն մասնակցությամբ ձևավորվում է Երևանի բոլշևիկյան կազմակերպությունը, գաղափարական պայքար ծավալվում՝ մենշևիկների, դաշնակների և այլ հակապրոլետարական պարտիաների ու հոսանքների դեմ։

1906 թվականին Ա. Մռավյանին հաջողվում է վերընդունվել Երևանի թեմական դպրոցը և ավարտել այն։ Նույն թվականին նա մեկնում է Գանձակ և աշխատում որպես ուսուցիչ, ակտիվորեն մասնակցելով տեղի բոլշևիկյան կազմակերպության գործունեությանը։

Ասքանազ Մռավյանի գաղափարական աճման ու պարտիական կոփման գործում խոշոր դեր են կատարում Ստ. Շահումյանը և Սուրեն Սպանդարյանը, որոնց հետ նա ծանոթանում է 1906 թվականին։ Շահումյանն ու Սպանդարյանը բարձր են գնահատում Ա. Մռավյանի ռևոլյուցիոն ավյունը, պրոպագանդիստական ու կազմակերպական ունակությունները, գրելու ձիրքը, բնավորության շիտակությունը և նրան ներգրավում են համակովկասյան պարտիական գործունեության մեջ։ Մռավյանը Գանձակից ակտիվ թղթակցում է Շահումյանի և Սպանդարյանի խմբագրությամբ լույս տեսնող «Կայծ» և «Նոր խոսք» թերթերին։ «Հրանտ» ծածկանվամբ գրում է հոդվածներ, որոնց մեջ մերկացնում է նացիոնալիստներին, դատապարտում ազգամիջյան գժտությունների սերմանման նրանց քաղաքականությունը, պրոպագանդում ժողովուրդների բարեկամության, ինտերնացիոնալիզմի գաղափարները։

1907—1908 թվականներին Ասքանազ Մռավյանը պարտիական ընդհատակյա դժվար աշխատանք է տանում Անդրկովկասի պրոլետարական կենտրոնում՝ Բաքվում։ Այստեղ նա կոփվում է որպես պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ։ «Իմ կուսակցական կաղապարման տեսակետից,— գրել է Մռավյանը,— ամենավճռական շրջանը՝ Բաքվի աշխատանքի շրջանն էր, կատարված Ստալինի, Շահումյանի, Ջափարիձեի, Տիմոֆեյի ղեկավարության տակ Բաքվի պրոլետարիատի մեջ։ Բաքուն իմ բոլշևիկյան հայրենիքն է»։

1904—1916 թվականներին Ասքանազ Մռավյանը Պետերբուրգում է։ Նա սովորում է պսիխո-նևրոլոգիական ինստիտուտում։ Բայց նա սոսկ ուսանող չէր։ Համառուսաստանյան ռևոլյուցիոն շարժման այդ նշանավոր կենտրոնում Մռավյանը բուռն մասնակցություն ուներ քաղաքական կյանքին, հանդիսանալով մայրաքաղաքի պարտիական կազմակերպության ակտիվ ու նախաձեռնող անդամներից մեկը։ 1913—1914 թվականներին նա թղթակցում է «Պրավդա» թերթին, նրա էջերում լուսաբանում Կովկասի բանվորական շարժման մի շարք հարցեր։

1915 թվականին վերադառնալով Անդրկովկաս, Մռավյանը, իմպերիալիստական պատերազմի ծանր պայմաններում, իրեն հատուկ ոգևորությամբ ու եռանդով ծավալում է պարտիական-հասարակական լայն գործունեություն։

Ինչպես միշտ, այս անգամ ևս, նա իմպերիալիստական պատերազմի, խաղաղության և ռևոլյուցիայի հարցերում գտնվում է հետևողական-լենինյան դիրքերում ու անհաշտ պայքար տանում դաշնակցական-կադետական-մենշևիկյան սոցիալ-շովինիզմի դեմ։ Նա աչքի ընկնող դեր է կատարում ինտեր-



նացիոնալիստական «Պայքար» թերթի ստեղծման ու ղեկավարման գործում։ 1915 թվականից սկսած մինչև 1917 թվականը, մինչև այդ թերթի մենշևիկյան շրջանը, Մռավյանը եղել է նրա խմբագիրներից մեկը և շատ կիրք ու եռանդ է գործադրել թերթի ռևոլյուցիոն-ինտերնացիոնալիստական ուղղությունը պահպանելու համար։

«Պայքար»-ի էջերում տպագրված նրա բազմաթիվ հոդվածները կազմում են հայ բոլշևիկյան հրապարակախոսության լավագույն էջերից մեկը։ Դրանք գրված են լենինյան սկզբունքայնությամբ, տոգորված իսկական ինտերնացիոնալիզմով։ Առանձնապես արժեքավոր են պատերազմի շրջանում դաշնակների, սպեցիֆիկների և կադետների ավանտյուրիստական հանցավոր գործողությունները մերկացնող նրա հոդվածները, որոնք ճիշտ կողմնորոշում էին տալիս հայ աշխատավորությանը, ցրում շովինիստական այն թանձր մշուշը, որ տարածում էին բուրժուական-նացիոնալիստները։

Գրականության պարտիականության լենինյան դիրքերից են գրված Ասքանազ Մռավյանի գրականագիտական ու թատերական հոդվածները, որոնք մինչև այժմ էլ չեն կորցրել իրենց նշանակությունը։ Այդ հոդվածները վկայում են նրանց հեղինակի մարքսիստական գրականագիտական խոր պատրաստության, գեղարվեստական բարձր ճաշակի, կուլտուրայի, էրուդիցիայի մասին։ Դրանց մեջ հեղափոխական-հրապարակախոսը արժանի կերպով պաշտպանում է գրականության, արվեստի ժողովրդայնության թեզը, կյանքի պրոգրեսիվ ուժերի հաղթանակի գործին նպաստելու, ժողովրդին ծառայելու նրանց վսեմ դերը։ Դեմոկրատիզմը և գեղարվեստը,— գրում էր նա,— իրար ժխտող հասկացողություններ չեն. ընդհակառակն, լավ և խոր հասկացված դեմոկրատիզմը մեր ժամանակի ամենամեծ գեղեցկությունն է, ամենագեղեցիկ ու ամենակենսունակ պոեզիան։ Այս տեսակետից ելնելով Մռավյանը բարձր է գնահատում Խ. Աբովյանի, Մ. Նալբանդյանի, Գ. Սունդուկյանի, Հ. Թումանյանի, Ա. Շիրվանզադեի, Մ. Գորկու, Է. Վերհարնի, Հ. Հակոբյանի, Արազու և դեմոկրատական գրականության այլ ներկայացուցիչների երկերը։

Փետրվարյան ռևոլյուցիայից հետո Ասքանազ Մռավյանը ակտիվ գործունեություն ծավալեց Լենինի նշանավոր ապրիլյան թեզիսներում պարտիայի առաջ դրված նոր խնդիրների կենսագործման համար։ Մեծ տաղանդով ու պարտիական շնչով գրած հոդվածներում, հրապարակային միտինգներում և ժողովներում արտասանած ճառերում Ասքանազ Մռավյանը խոր կերպով վերլուծում էր երկրի քաղաքական կացությունը, պարզաբանում ու պաշտպանում ռևոլյուցիայի առաջին էտապից երկրորդ էտապին՝ սոցիալիստական ռևոլյուցիային անցնելու անհրաժեշտությունը, մերկացնում համաձայնողականներին ու բուրժուական նացիոնալիստներին, բոլոր ռեակցիոն հոսանքներին, որոնք ձգտում էին կասեցնել ռևոլյուցիայի առաջընթացը։

Ա. Մռավյանը խոսքով, գրչով ու եռանդուն գործունեությամբ բանվորներին, գյուղացիներին ու առաջավոր ինտելիգենցիային ռևոլյուցիոն գործի ու պայքարի էր կոչում, ոգեշնչում նրանց գալիք սոցիալիստական ռևոլյուցիայի պայծառ հեռանկարներով։

1917 թվականի հոկտեմբերին կովկասյան բոլշևիկյան կազմակերպությունների առաջին համագումարում Ասքանազ Մռավյանը ընտրվեց ՌՍԴԲ(բ)Պ Կովկասյան երկրային կոմիտեի անդամ։ Դա Հոկտեմբերյան սոցիալիստական

մեծ ռևոլյուցիայի նախօրյակին էր: Պարտիան համախմբում էր բոլոր ուժերը վճռական գրոհի համար: Իր մարտական պոստումն էր և Ասքանազ Մռավյանը:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան Անդրկովկասում նոր ասպարեզ բացեց պարտիական կազմակերպությունների գործունեության համար: Այստեղ կատաղի գոտեմարտ սկսվեց բանվորա-գյուղացիական ու բուրժուա-կալվածատիրական, ռևոլյուցիոն և կոնտրռևոլյուցիոն ուժերի միջև: Անդրկովկասյան բարդ իրադրության մեջ Ա. Մռավյանը տոկունությամբ ու համառությամբ պաշտպանում էր Հոկտեմբերյան ռևոլյուցիայի գիծը, պայքար ծավալում սովետական իշխանության հաղթանակի համար: Որպես պարտիայի երկրային կոմիտեի անդամ, և ապա երկրային կոմիտեի քարտուղարներից մեկը, Ա. Մռավյանը կազմակերպական ու գործնական խոշոր աշխատանք է կատարում Կովկասի տարբեր քաղաքներում և շրջաններում:

Ա. Մռավյանն առանձնապես սուր պայքար էր մղում դաշնակցական լիդերների ու դաշնակցական մամուլի դեմ, որոնք Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո սուտ ու զրպարտանքի մի հեղեղ էին սկսել բոլշևիկների, սովետական իշխանության հասցեին: «Մենք երբեք,— գրում էր Մռավյանը,— հեղափոխական և իհարկե նաև սոցիալիստական չենք համարել «Դաշնակցություն» կոչվող քաղաքական աֆերիստների խումբը... Կերենսկին և նրա ընկեր Կալեդինը անսպասելի օգնականներ են գտել հանձինս սոցիալ-դաշնակցականների...»[1]:

1919 թվականի հուլիսին Ասքանազ Մռավյանը ՌԿ(բ)Պ Կովկասյան երկրային կոմիտեի հանձնարարությամբ անլեգալ աշխատանքի է փոխադրվում Հայաստան: Դաշնակցական-խմբապետական դաժան ռեժիմի պայմաններում նա շրջագայում է Հայաստանի գյուղերն ու քաղաքները, վերականգնում, ձևավորում, ամրապնդում բոլշևիկյան բջիջները, դիրքորոշում տալիս նրանց գործունեությանը:

Ա. Մռավյանի, Ստ. Ալավերդյանի, Ս. Մարտիկյանի, Ս. Կասյանի, Ս. Խանոյանի, Արշ. Մելիքյանի և այլ ընկերների ջանքերի շնորհիվ Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները կապվում են միմյանց հետ, համախմբվում ՌԿՊ Կենտկոմի և Կովկասյան երկրային կոմիտեի շուրջը:

1919 թվականի սեպտեմբերին հնարավոր եղավ Երևանում հրավիրել Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների ներկայացուցիչների գաղտնի խորհրդակցություն, որի ընտրած ղեկավար կենտրոնի կազմում մտան Ասքանազ Մռավյանը, Ստ. Ալավերդյանը, Ս. Կասյանը, Ղուկաս Ղուկասյանը, Արշ. Մելիքյանը, Դանուշ Շահվերդյանը և ուրիշներ:

Նախապատրաստական մեծ աշխատանքից հետո, 1920 թվականի հունվարին, Երևանում տեղի ունեցավ Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների առաջին անլեգալ կոնֆերենցիան, որը մշակեց Հայաստանի բոլշևիկների գործունեության ծրագիրն ու տակտիկան, կազմակերպական սկզբունքները: Կոնֆերենցիան ընտրեց պարտիական համահայաստանյան ղեկավար մարմին՝ ՌԿ(բ)Պ Հայաստանի կոմիտե (Արմենկոմ): Ասքանազ Մռավյանն ընտրվում է Արմենկոմի կազմում:

1920 թվականի հունվարի վերջին դաշնակցական կառավարությունը բանտարկում է Ա. Մռավյանին և արտաքսում Հայաստանի սահմաններից: Նա անցնում է Վրաստան, որտեղից շուտով արտաքսվում է: Մռավյանը մեկնում

---

[1] Ա. Մռավյան, Հոդվածներ և ճառեր, էջ 69:



է Սովետական Ադրբեջան, որտեղ ղեկավար մասնակցություն է ունենում Հայաստանում կոմունիստական ուժերը համախմբելու, նրանց նոր գոտեմարտերի նախապատրաստելու գործում:

**1920 թվականի** հոկտեմբերին Ա. Մռավյանը մեկնում է Մոսկվա, պարտիայի Կենտկոմին զեկուցագիր ներկայացնում Հայաստանի վիճակի մասին. նա հայ ժողովրդի համար ստեղծված ծանր դրությունից ելքը համարում էր Կարմիր բանակի օգնությամբ սովետական կարգերի հաստատումը: Մոսկվայում Մռավյանը բախտ է ունենում երկու անգամ լսելու Վ. Ի. Լենինին, որի մասին նա երազում էր վաղուց:

1920 թվականի նոյեմբերին Հայաստանում Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ սկսվում է բանվորա-գյուղացիական ապստամբություն՝ դաշնակների տիրապետության դեմ: Կարմիր բանակը օգնության է գալիս Հայաստանի ապստամբներին: Կազմվում է Հայաստանի ռևոլյուցիոն կոմիտե՝ Ս. Կասյանի նախագահությամբ: Ռևկոմի անդամ է նշանակվում նաև Ասքանազ Մռավյանը: Նա Մոսկվայում եռանդուն գործունեություն է ծավալում նորաստեղծ Սովետական Հայաստանին բազմակողմանի օգնություն ցույց տալու ուղղությամբ: 1920 թվականի դեկտեմբերի կեսերին Ասքանազ Մռավյանին և Սահակ Տեր-Գաբրիելյանին, որպես Հայաստանի Ռևկոմի անդամների, Կրեմլում ընդունում է Վ. Ի. Լենինը: Մեծ առաջնորդը մանրամասն ծանոթանալով Հայաստանի վիճակին, համապատասխան կարգադրություններ է անում ռեսպուբլիկային նյութական օգնություն ցույց տալու մասին, խորհուրդներ ու ցուցումներ է տալիս Հայաստանի կոմպարտիայի, Ռևկոմի քաղաքականության, նրանց գործունեության վերաբերյալ:

1920 թվականի դեկտեմբերի 25-ին Ասքանազ Մռավյանը ոգևորված գալիս է Հայաստան, ուր նրան սպասում էր երկրի տնտեսական ու կուլտուրական վերաշինության, բազմաչարչար իր ժողովրդի վերքերի բուժման, նրա նյութական և հոգեկան կյանքի բարելավման ծով աշխատանքը:

Բոլշևիկյան հին գվարդիայի շարքերում կոփված, ռևոլյուցիոն մեծ դպրոց անցած Ա. Մռավյանն իր ամբողջ ուժն ու եռանդը ներդնում է Սովետական Հայաստանի սոցիալիստական շինարարության գործի մեջ: Նրան հանձնարարվում են պարտիական և պետական բարձր պատասխանատու աշխատանքներ: 1921 թվականին, երբ կազմվում է ՀՍԽՀ ժողովրդական կոմիսարների խորհուրդ՝ Ալեքսանդր Մյասնիկյանի նախագահությամբ, Ասքանազ Մռավյանը նշանակվում է հանրապետության Արտաքին գործերի ժողովրդական կոմիսար:

Այնուհետև նա երկար տարիներ աշխատում է որպես լուսավորության ժողովրդական կոմիսար, ժողովրդական կոմիսարների խորհրդի նախագահի տեղակալ, **ՀԿՊ Կենտկոմի**, նրա նախագահության և քարտուղարության անդամ, Հայկական ՍՍՌ, Անդրկովկասյան Սովետական Ֆեդերատիվ Սոցիալիստական Ռեսպուբլիկայի, ՍՍՌՄ Կենտգործկոմների անդամ, պարտիայի Անդրերկրկոմի անդամ, «Սովետական Հայաստան» թերթի պատասխանատու խմբագիր:

Ունենալով մեծ էրուդիցիա, մարքսիստական խոր պատրաստություն, կազմակերպչական անսպառ եռանդ և ջերմ հավատ ժողովրդի ստեղծագործական ուժերի նկատմամբ, Ա. Մռավյանը փայլուն կերպով ապահովում էր պարտիայի առաջադրանքների, նրա լենինյան քաղաքականության կենսագործումը իրեն հանձնարարված աշխատանքի բոլոր բնագավառներում: Արտաքին գործերի ժողովրդական կոմիսարի պոստում Մռավյանը ցուցաբերում էր պետա-

կան-դիվանագիտական գործչի փայլուն տաղանդ: Նա շատ աշխատանք էր
տանում ամրապնդելու Հայաստանի միջազգային դրությունը, հաստատելու
բարի-դրացիական հարաբերություններ հարևան պետությունների հետ՝ իր
գործով, խոսքով, գրչով պաշտպանելով սովետական պետության արտաքին
քաղաքականության սկզբունքները: Մեծ են նրա ծառայությունները Անդրֆե-
դերացիայի և ՍՍՌՄ կազմավորման, Սովետական Հայաստանի առաջին կոնս-
տիտուցիայի ընդունման գործում: ՀՍԽՀ խորհրդի առաջին համագումա-
րում, 1922 թվականին, Անդրկովկասյան ֆեդերացիայի ստեղծման և առաջին
կոնստիտուցիայի նախագծի մասին զեկուցողը Ա. Մռավյանն էր:

Հատկապես մեծ են Ասքանազ Մռավյանի ծառայությունները ռեսպուբլի-
կայի կուլտուրական շինարարության ու ժողովրդական լուսավորության բնա-
գավառում:

1923 թվականից գլխավորելով լուսավորության ժողովրդական կոմիսա-
րիատը, նա կենսագործում է խոշոր, աչքի ընկնող միջոցառումներ ռեսպուբլի-
կայում կրթական-ուսումնական, գիտական, մշակութային հաստատություննե-
րի ցանցի ընդլայնման, սովետահայ կուլտուրայի բազմակողմանի զարգաց-
ման ուղղությամբ: Նա կուլտուրական ռևոլյուցիայի ճակատի անգերազանցելի
մարտիկ էր, այդ գործին մինչև ուղն ու ծուծը նվիրված գործիչ: Արգասաբեր
եղան նրա ջանքերը ռեսպուբլիկայի ժողովրդական կրթության զարգացման
գործում:

Պետական համալսարանի եռամյա տարեդարձին նվիրված հանդիսավոր
նիստում արտասանած ճառում նա ասում էր. Հայաստանի շինարարությունն
առանց լենինիզմի չի առաջնորդվել, որովհետև Լենինը ոչ թե միայն հեղափո-
խական, այլև խոր գիտնական էր, նա մեր դարի գիտության վերջին խոսքը
յուրացրել էր և այդ կապել պրոլետարիատի դասակարգային մարտի հետ: Այդ
մտքով նա սինթեզն էր մեր դարի գիտության և կոմունիզմի: Կրկնում եմ ու
ցանկանում, որ ...Հայաստանի համալսարանն առաջիկա տարիներում կարո-
ղանա իր հարկի տակ ավանդվող գիտությունը տաքացնել լենինիզմի ոգով:

Որպես ղեկավար քաղաքական գործիչ, Ասքանազ Մռավյանը շատ թել-
րով կապված էր ռեսպուբլիկայի աշխատավորների բազմաթիվ խավերի հետ:
Նրան գիտեին ու գնահատում էին նաև Անդրկովկասի մյուս ռեսպուբլիկանե-
րում: Մռավյանն առանձնապես սերտ կապեր ուներ Հայաստանի ինտելիգեն-
ցիայի հետ: Անվանի գրողները, նկարիչները, երաժիշտները, արտիստները,
ճարտարապետները, գիտնականները, մանկավարժները նրա մշտական այցե-
լուներն էին: Մռավյանն իր վերաբերմունքով, կուլտուրայով, գիտելիքների
մեծ պաշարով իր կողմն էր գրավում բոլորին՝ և՛ հին, և՛ նոր ինտելիգեն-
ցիայի լավագույն ներկայացուցիչներին, համախմբում, նրանց ստեղծագոր-
ծական ուժերն ուղղում ռեսպուբլիկայի առաջ դրված խնդիրների իրագործման
նպատակին, կոմունիստական պարտիայի մեծ գործին:

Իր համեստությամբ, աշխատասիրությամբ, կոմունիզմի գործին նվիրվա-
ծությամբ Ասքանազ Մռավյանը օրինակն կերպով վայելում էր ժողովրդի և
պարտիայի սերն ու համակրանքը: Նրան վստահում էին, հավատում, սիրում:

Մռավյանը կոմունիստական պարտիայի, նրա լենինյան գծի հավատարիմ
պաշտպանն էր: Չի եղել հակապարտիական մի հոսանք, մի շեղում լենինյան
գծից, որի դեմ զայրույթով հանդես չգար Ասքանազ Մռավյանը: Մեր պարտիա-
յի պատմության բոլոր էտապներում նա անզիջում կերպով պայքարել է տրոց-



կիստների, աջ օպոզիցիայի, նացիոնալիստների և այլ հակապարտիական հո-
սանքների ու տարրերի դեմ, հաստատուն կերպով պաշտպանել պարտիայի
շարքերի միասնությունը, նրա գաղափարական մաքրությունը:

Մռավյանը իրավամբ մեր պարտիայի ճանաչված պրոպագանդիստնե-
րից էր: Ուր էլ որ լիներ, ուր էլ որ աշխատեր, նա իրեն նախ և առաջ համա-
րում էր պարտիայի զինվորը, նրա գաղափարների անխոնջ տարածողը: Պարզ
ու անպաճույճ իր ոճով, խնդիրների խոր ըմբռնմամբ, աշխատավորական տար-
բեր շերտերի հետ վարվելու իր կարողությամբ Մռավյանը միշտ էլ կարողա-
նում էր հրապուրել իր ունկնդիրներին, ներազդել մասսաների վրա:

Մռավյանը պետական պատասխանատու գործունեության հետ միասին
անդադրում զբաղվում էր հրապարակախոսությամբ, ժուռնալիստիկայով: Նա
մեր ժուռնալիստիկայի պատմության ամենակարկառուն դեմքերից մեկն է:

Ասքանազ Մռավյանը սրտի կաթվածից հանկարծամահ եղավ 1929 թվա-
կանի նոյեմբերի 23-ին, 43 տարեկան հասակում, իր ստեղծագործական
ուժերի ծաղկման շրջանում: Հայաստանի աշխատավորները, կոմունիստական
պարտիան ծանր կորուստ ունեցան:

Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմը և Հայկական ՍՍՌ
Կենտգործկոմը Մռավյանի մահվան առթիվ Հայաստանի աշխատավորներին,
պարտիայի բոլոր անդամներին ուղղեցին հատուկ դիմում, որի մեջ ասված էր.
«Կուռ սեղմենք մեր շարքերը և կրկնապատկենք պայքարի ու ստեղծագործու-
թյան մեր եռանդը՝ ավելի բարձր ու փողփողուն պահելու համար լավագույն
սերունդների մեզ ավանդած պրոլետարական կարմիր դրոշը:

Հավերժացնենք հեռացողների հիշատակը՝ աննկուն շարունակելով կոմու-
նիզմի հոյակապ կարգերի կառուցումը»:

Այսօր էլ մենք կարող ենք կրկնել այդ խոսքերը: Հայաստանի կոմունիս-
տական պարտիան, Հայաստանի աշխատավորները երբեք չեն մոռանա իրենց
անձնվեր զավակի՝ Ասքանազ Մռավյանի մեծ ծառայությունները, անմար կպա-
հեն նրա անունը, աննկուն շարունակելով կոմունիզմի հոյակապ շենքի կա-
ռուցումը:

Շ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

*Գիտության վաստակավոր գործիչ*

## ԵՐԿԱՐԱԿԵՑՈՒԹՅԱՆ ԱՌԵՂԾՎԱԾԸ

Ի՞նչն է ծերության պատճառը, ինչի՞ց է մարդը ծերանում և չի՞ կարելի արդյոք հետաձգել ծերությունը և, այդպիսով, երկարացնել կյանքի ծաղկուն, կենսուրախ, ստեղծագործ շրջանը:

Բոլորին հետաքրքրող այս հարցերը վաղուց է, ինչ դարձել են գիտական մտքի և գիտական հետազոտությունների առարկա: Մարդու կյանքի երկարացման հարցը ներկայումս բիոլոգիական գիտության առջև կանգնած կարևորագույն պրոբլեմներից մեկն է: Մարդը պետք է, որքան դա հնարավոր է, ավելի շատ ապրի, վայելի կյանքի բերկրանքը, առանց ծերությանը հատուկ հիվանդությունների, ուժասպառության:

Հնարավո՞ր է արդյոք այդ:

Այո՛, հնարավոր է, և դրանում համոզվում ենք, գիտենալով մի շարք երկարակյաց մարդկանց գոյության մասին: Հանրածանոթ է, օրինակ, ադրբեջանցի կոլտնտեսական Մահմուդ Էյվազովի անունը, որն ապրեց 151 տարի և մինչև կյանքի վերջը անընդհատ աշխատում էր: Վերջերս հայտնի դարձավ 160-ամյա Շիրալի Բաբան, որն իր կյանքում առաջին անգամ եկել էր Բաքու իր 3 թոռան թոռներին բարձրագույն դպրոց ընդունելու կապակցությամբ: Մամուլը բազմիցս հաղորդել է բացառիկ երկարակեցության ուրիշ շատ դեպքեր, երբ մարդիկ մեռել են, հասնելով մինչև 150 տարեկան հասակը, ընդ որում նրանց կյանքի համար ամենաբնորոշն է եղել ֆիզիկական աշխատանքը և կանոնավոր կենցաղային ռեժիմը: Պրոֆեսոր Ա. Վ. Նագորնու և նրա աշխատակիցների տվյալներով, ՍՍՌՄ-ում ապրում են 90 և ավելի տարի հասակ ունեցող մոտ 40 հազար մարդիկ, ընդ որում 100 տարեկանից բարձր ցուցակագրված է ավելի քան 4 հազար մարդ:

Իրականությունից վերցրած այս փաստերը վկայում են, որ մարդու կյանքի պոտենցիալ տևողությունը շատ ավելի մեծ է, քան դա տեղի ունի առօրյայում: Հիմք կա ընդունելու, որ մարդը կարող է ապրել միջինը 120—125 տարի, ուստի և ծերության շրջանը պետք է սկսվի շատ ավելի ուշ, քան սովորաբար սկսվում է: 50—60 տարեկանի ծերությունը պետք է համարել վաղաժամ և խնդիրը կայանում է նրանում, թե ի՞նչ միջոցներ պետք է ձեռնարկել ծերությունը և մահը զգալիորեն հետաձգելու համար:

Ուշադրության է արժանի և մի ուրիշ կարևոր հանգամանք: Վիճակագրությունը ցույց է տալիս, որ մարդկանց բնական, այսինքն՝ ծերությունից առաջացած մահը տեղի է ունենում բացառիկ դեպքերում. սովորաբար մարդիկ մեռնում են ոչ թե ծերությունից, այլ ծերության շրջանում հանդիպող այս կամ այն հիվանդությունից: Այս հանգամանքը մեծ նշանակություն ունի կյանքի տևողության մասին ճիշտ եզրակացություն անելու համար. եթե չլինեին հիվանդությունները, ապա մարդկանց բնական մահը տեղի պիտի ունենար շատ ավելի մեծ հասակում: Ուրեմն, հիմնականը հիվանդությունների կանխումն է:

Մարդու երկարակեցության համար վճռական նշանակություն ունի այն, թե սոցիալ-տնտեսական ինչպիսի՞ պարագաներում է ընթանում մարդկանց կյանքը: Երկարակեցության համար տարվող պայքարը՝ առաջին հերթին պայքար է հանուն կյանքի սոցիալ-տնտեսական պայմանների բարելավման, հանուն այնպիսի հասարակարգի ստեղծման, որը կարող է ապահովել մարդկանց բարեկեցիկ վիճակը: Այստեղ խոսքը ոչ թե առանձին անհատների, այլ հասարակության, ժողովրդական մասսայի երկարակեցության մասին է: Կապիտալիստական և գաղութային երկրներում, ուր իշխում է մարդու շահագործումը մարդու կողմից, ընդհանրապես չի դրվում հասարակական երկարակեցության խնդիրը:

Կյանքի միջին տևողություն ասելով հասկանում ենք թվաբանական այն միջինը, որն ստացվում է, երբ տվյալ սերընդին պատկանող մարդկանց տարիքը (գմահ) գումարում և այն բաժանում ենք այդ մարդկանց թվի վրա: Այդ ցուցանիշը պերճախոս կերպով ցույց է տալիս մարդկանց կյանքի տևողության պայմանավորվածությունը սոցիալ-տնտեսական պայմաններով:

ՍՍՌՄ-ում պայքարը վարակիչ հիվանդությունների դեմ, Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայից հետո, դարձավ սոցիալիստական պետության առաջնակարգ հոգսերից մեկը: Կարճ ժամանակում հաջողվեց վերացնել անցյալի թողած ծանր ժառանգությունը—տիֆերը, բնական ծաղիկը, խոլերան և այլն, ծավալվեց սիստեմատիկ պայքար այդ և մնացած այլ վարակիչ հիվանդությունների դեմ: Մեր ժամանակներում Սովետական Միության բնակչությունը զերծ է այդ չարիքներից, համաճարակները չեն սպառնում նրան. սրանից տասը տարի առաջ վերացվեց և մալյարիան— մարդկանց այդ դարավոր թշնամին, որը բազում զոհեր էր տանում: Եվ ահա արդյունքը: Վիճակագրական տվյալներով մինչռևոլյուցիոն Ռուսաստանում մարդու կյանքի միջին տևողությունը 32 տարուց ավելին չէր, հսկայական չափերի էր հասնում մանուկների մահացությունը, մի հասակ, որն ամենից շատ էր տուժում վարակիչ հիվանդություններից: 1926—27 թթ. մեր երկրում, կյանքի միջին տևողությունը հասավ 44, 1957—58 թվականներին 68 տարու, իսկ 1964 թվին այն արդեն մոտենում էր 70-ի, որը երկրագնդի ամենաբարձր ցուցանիշներից մեկն է: Սակայն սոցիալական այդ խոշորագույն նվաճումը դեռևս այն ցանկալի սահմանը չէ, որին ձգտում է մարդկությունը: Մեր ժամանակներում էլ դեռևս մարդկանց մեծամասնությունը մահանում է ոչ այնքան բնական ծերությունից, որքան հիվանդություններից: Ճշմարիտ է, վարակիչ հիվանդությունները ներկայումս չնչին դեր են խաղում մարդու երկարակեցության հարցում: Բայց, դժբախտաբար, կան դեռևս մի քանի ոչվարակիչ հիվանդություններ, ինչպես, օրինակ, սիրտ-անոթային սիստեմի հիվանդությունները, քաղցկեղը, որոնք վաղաժամ մահվան պատճառ են դառնում: Երբ հաջողվի այդ հիվանդությունները սանձահարել, մարդու կյանքի տևողությունը զգալիորեն կավելանա:

Համառոտակի սրանք են սոցիալական կարգի այն գործոնները, որոնք կապված են մարդու երկարակեցության հետ: Սակայն բոլոր դեպքերում էլ ծերությունն ու մահն անխուսափելի են և, ինչպես արդեն ասացինք, խնդիրը հնարավորին չափ ծերության շրջանը հետաձգելն ու հեռացնելն է: Այլ կերպ ասած, որո՞նք են ծերության բ ի ո լ ո գ ի ա կ ա ն գործոնները: Այս պրոբլեմներով զբաղվում է գիտության այն մասնաճյուղը, որը կոչվում է հասակային (տարիքային) ֆիզիոլոգիա:

Բոլորին հայտնի է, որ երիտասարդ հասակում մարդու օրգանիզմն անընդհատ աճում, զարգանում է, բայց այդ աճն ու զարգացումը աստիճանաբար սկսում են թուլանալ, օրգանիզմի ֆունկցիոնալ հնարավորությունները հետզհետե իջնում են, մարմնի հյուսվածքները կորցնում են իրենց կարևոր հատկությունները: Սկիզբ են առնում ծերությունը բնորոշող երևույթները: Օրգանիզմը հետզհետե կորցնում է քիմիական կազմությունը վերանորոգելու ունակությունը, կարևոր բաղադրիչ նյութերի, առաջին հերթին՝ սպիտակուցների և նուկլեինային թթուների ակտիվությունն զգալիորեն իջնում է, մարմնի հյուսվածքներում պակասում է ջրի պարունակությունը, նրանք սկսում են «չորանալ»: Մի շարք կարևոր օրգաններում նվազում, իսկ այնուհետև իսպառ վերանում է բջիջների բազմանալու ունակությունը, ամենից վաղ՝ ուղեղում: Ծերացող օրգանիզմում, ի վերջո, տեղի է ունենում բոլոր հյուսվածքների աստիճանական ետանում (ատրոֆիա):

Այս ֆոնի վրա ծավալվում են ծերության արտաքին ու ներքին նշանները: Մազերը սպիտակում են ու թափվում, մաշկը կնճռոտվում է, ատամները թափվում են, մկանները կորցնում են իրենց ճկունությունն ու սեղմվելու ուժը, ոսկորները դառնում են փխրուն, սպիտակուցներն ու ճարպերը փոխում են իրենց բնույթը, դառնալով ավելի ցածրարժեք. նյարդային համակարգությունն այլևս առաջվա նման ընդունակ չի լինում ղեկավարելու նյութերի և էներգիայի փոխանակությունը մարմնում. ծերությանը հատուկ են անքնությունը, հիշողության թուլացումը, խիստ նվազում և ի վերջո անհետանում է սեռական ակտիվությունը:

Սրանք են, համառոտակի այն հիմնական հասակային փոփոխությունները, որ տեղի են ունենում օրգանիզմում:

Սակայն ինչո՞ւմն է կայանում այդ փոփոխությունների ներքին էությունը: Ինչո՞ւ է մարդը ծերանում և ապա մեռնում:

Ժամանակակից բիոլոգիական գիտությունը այս հարցերին դեռևս չի տըվել սպառիչ պատասխան, որովհետև օրգանիզմի հասակային (տարիքային) զարգացման, այսինքն՝ անհատական զարգացման վերաբերյալ դեռևս չի ստեղծված ճիշտ հիմնավորված ուսմունք: Դրա պատճառն այն է, որ կենսական պրոցեսը, նրա արտահայտությունները խիստ բարդ են, շատ հանելուկային կողմեր են պարունակում, օրգանիզմի ֆունկցիաների բիոքիմիան մինչև վերջ չի ուսումնասիրված, թեև գոյություն ունեն առանձին կարևոր հայտնագործություններ այս ասպարեզում:

Մեծ արժեք է ներկայացնում, օրինակ, ռուս ականավոր գիտնական Իլյա Մեչնիկովի տեսությունը, ըստ որի ծերությունը երկարատև ինքնաթունավորման հետևանք է: Այդ թույներն առաջացնում են հաստ աղիներում բույն դըրած բակտերիաները, որի հետևանքով նեխման ենթարկվող սպիտակուցներից առաջանում են մի շարք թույներ, որոնք, առաջին հերթին, ազդում են նյարդային և մկանային համակարգությունների վրա. շարակցական հյուսվածքի վրա դրանք ավելի թույլ են ազդում, ուստի, այդ հյուսվածքը ամենից լավ է զարգանում օրգանիզմում: Որքան բարձր է մարդու կամ կենդանու տարիքը, այնքան ավելի ուժեղանում է թույների ազդեցությունը: Ծերության բնորոշ հատկություններից մեկն էլ այն է, որ ցածրարժեք շարակցական հյուսվածքը հետզհետե գրավում է քայքայվող նյարդային և մկանային հյուսվածքների տեղը:

Ելնելով ծերության պատճառների այս մեկնաբանությունից, Մեչնիկովն առաջարկում է ծերության դեմ պայքարի իր միջոցը, որի իմաստն է՝ կասեցնել աղիքներում ապրող նեխման բակտերիաների վնասակար գործունեությունը, նրանց թունարտադրությունը: Այս նպատակով նա առաջարկում է աղիքների մեջ ներմուծել վերոհիշյալ բակտերիաներին թշնամի բակտերիաներ: Մեչնիկովը գտավ, որ այդպիսի հատկություն ունեն կաթնաթթվային խմորման բակտերիաները, որոնք ապրում և բազմանում են կաթնամթերքների, մանավանդ պրոստոկվաշայի, կեֆիրի, մածնի մեջ: Վաղաժամ ծերության դեմ պայքարելու համար Մեչնիկովը խորհուրդ է տալիս, շատ գործածել այդ կաթնամթերքները:

Մեչնիկովի տեսությունը արժանի է ամենայն ուշադրության: Առաջադրված լինելով մեր դարի սկզբում, այն չի կորցրել իր արժեքը և մեր օրերում: Այդ տեսության գլխավոր արժանիքն է առողջ սննդի պրոպագանդան, որը երկարակեցության հիմնական պայմաններից մեկն է: Բացի դրանից՝ միկրոբների դեմ նրանց թշնամիների (անտագոնիստների) միջոցով պայքարելու մեչնիկովյան գաղափարը իր բեղմնավոր կիրառումն է գտել ժամանակակից բժշկության մեջ, որը մի շարք՝ առաջներում անբուժելի համարվող հիվանդությունները բուժում է անտիբիոտիկների օգնությամբ:

Ուկրաինական գիտությունների ակադեմիայի հանգուցյալ պրեզիդենտ ակադեմիկոս Ա. Բոգոմոլեցը այն կարծիքին էր, որ շարակցական հյուսվածքը, ընդհակառակը, շատ կարևոր նշանակություն ունի կյանքում. ծերությունը նա բացատրում էր այդ հյուսվածքի ակտիվության թուլացմամբ: Նա առաջարկեց մի շիճուկ, որի սրսկումով պետք է բարձրանար շարակցական հյուսվածքի ակտիվությունը: Բոգոմոլեցի շիճուկը թեև չճանաչվեց ծերությունը հետաձգելու մասսայական մի միջոց, բայց գործ է ածվում որոշ հիվանդությունների ժամանակ, որպես տոնուսը բարձրացնող դեղանյութ: Բոգոմոլեցը գտնում էր, որ երկարակեցության հիմնական պայմանն է աշխատանքը, որին մասնակցում է ողջ օրգանիզմը: Աշխատավոր, առողջ կյանքի նշանակությունը երկարակեցության խնդրում ընդգծում էր նաև Ի. Մեչնիկովը:

Ռուս հռչակավոր ֆիզիոլոգ Իվան Պետրովիչ Պավլովը մարդու կյանքի տևողության հարցում առաջատար դերը վերագրում է նյարդային համակարգին: Հայտնի է, որ, համաձայն Պավլովի ուսմունքի, կենտրոնական նյարդային համակարգը ղեկավար դեր է կատարում օրգանիզմի բոլոր կենսական պրոցեսներում, ազդելով հյուսվածքների նյութափոխանակության վրա: Ժամանակի ընթացքում թուլանում է նյարդային համակարգի գրգռիչ ազդեցությունն այդ հյուսվածքների վրա, և այդ է ծերության երևույթների առաջ գալու պատճառը: Գլխուղեղի ֆունկցիոնալ խանգարումները տեղի են ունենում բարձր նյարդային գործունեության լարվածությունից, այն ապրումներից, որոնք հետևանք են բազմատեսակ հոգեկան ազդումների: Պահպանված նյարդային համակարգը և, մանավանդ, գլխուղեղի մեծ կիսագնդերի կեղևի բավարար վիճակն ապահովում է հյուսվածքային նյութափոխանակության, սպիտակուցների ինքնավերանո-

րոգման նորմալ ընթացքը նույնիսկ ծերության շրջանում:

Ավելի նոր տեսությունները ծերության պատճառները համարում են կյանքի ուշ շրջաններում կենդանի նյութի՝ պրոտոպլազմայի ֆիզիկո-քիմիական փոփոխությունները: Հասակի հետ միասին պրոտոպլազման հետզհետե կորցնում է ջուրը, թանձրանում է. փոխվում են հյուսվածքային և բջիջային կոլոիդների հատկությունները. դժվարանում է բջիջում կատարվող նյութափոխանակությունը, բջիջներում կուտակվում են տարրալուծման պրոդուկտներ, որոնք դառնում են ծերության անմիջական պատճառը:

Վերոհիշյալ տեսություններն ունեն գիտական արժեք. նրանք լուսաբանում են ծերության պատճառների տարբեր կողմերը: Ներկայումս ստեղծվել և զարգանում է մի նոր գիտություն՝ ծերաբանություն (գերոնտոլոգիա), որը նպատակ ունի պարզելու ծերացող և ծեր օրգանիզմի առանձնահատկությունները, նրա մեջ կատարվող փոփոխությունները, արտաքին ու ներքին գրգիռներին հակազդելու յուրահատկությունները: Ճանաչելով ծեր օրգանիզմի բիոլոգիան՝ մենք հնարավորություն կունենանք մշակելու վաղաժամ ծերության դեմ պայքարի միջոցներ:

Երկարակեցության համար ստեղծագործ, արդյունավետ աշխատանքի անհրաժեշտությունն ընդգծել են գիտության բոլոր ականավոր գործիչները: Աշխատանքը ոչ միայն իմաստավորում է կյանքը, այլև մարմնին տալիս է լիարժեք ֆիզիոլոգիական բեռնվածություն, բարձր կենսունակություն հաղորդում մարմնի մասերին: Սակայն չափավորված աշխատանքը պետք է ընդմիջվի լավ հանգստով: Աշխատանքի ընթացքում արդեն պետք է երբեմն ունենալ կարճատև հանգստի ընդմիջումներ: Հատկապես հետաքրքրական, և որ գլխավորն է, ակտիվ պետք է լինի արձակուրդային հանգիստը: Անհրաժեշտ է պահպանել ֆիզիկական լարվածությունը, ճանապարհորդել, շատ ման գալ մաքուր օդում, մասնակցել բացօթյա խաղերին, զբոսանքներին և այլն:

Ֆիզիկական վարժությունները, մարմնամարզությունը, սպորտի բոլոր ձևերն օգտակար են բոլոր մարդկանց, մանավանդ նրանց համար, ովքեր զբաղվում են մտավոր և ընդհանրապես նստակյաց աշխատանքով: Առավոտյան ֆիզկուլտուրային լիցքը օգնում է մկանների, սիրտ-անոթային և շնչառական օրգանների ակտիվացմանը:

Ֆիզիկական կուլտուրայի և սպորտի այս կամ այն ձևն ընտրելիս պետք է հաշվի առնել տարիքը. այն, ինչ օգտակար և նպատակահարմար է երիտասարդի համար, կարող է վնասել դեռահասին կամ ծեր մարդուն: Օրինակ, դեռահասներին խորհուրդ չի տրվում սառը ջրով շփվել, այդ նպատակով պետք է գործածել սենյակի ջերմություն ունեցող ջուր: Դեռահաս և ծեր մարդկանց շարժումները պետք է լինեն դանդաղ, չափավորված, ոչ մեծ լարումով և ընդմիջվեն հանգստով:

Առողջությունը պահպանելու և երկարակեցության համար անհրաժեշտ է թողնել ծխելը. ծխելու վնասների մասին շատ է գրվել և ասվել, այդ մասին մենք չենք խոսի, կասենք միայն, որ ծխելուց հրաժարվելն այնքան դժվար չէ, ինչպես կարծում են շատ ծխողներ: Ծխելը կարճացնում է մարդու կյանքը:

Վերը մենք նշեցինք, որ լիարժեք նյարդային համակարգությունը երկարակեցության զորեղ գործոն է: Երկարակյացների նյարդային համակարգության ուսումնասիրությունը ցույց է տվել, որ նրանք մեծ մասամբ հոգեպես առողջ մարդիկ են՝ կենսուրախ, լավատես, նրանց նյարդային համակարգությունը լավ վիճակում է: Նորմալ ծերությունը մեծ չափով կախված է կենտրո-



նական նյարդային համակարգության ողջությունից ու աշխատունակությունից: Մեր խնդիրն է՝ պահպանել նյարդային համակարգությունը, մտավոր աշխատանքի հիգիենայի կանոնները:

Ժամանակակից գերոնտոլոգիան միջոցներ է մշակում օգնելու օրգանիզմին՝ պահպանելու նյարդային համակարգության լիարժեքությունը. այդ նպատակով առաջարկվել են որոշ դեղամիջոցներ: Այսպես, օրինակ, ռումինացի կին գիտնական Աննա Ասլանն առաջարկել է նովոկաինի սրսկումներ, որոնք ծերացող օրգանիզմի վրա լավ ազդեցություն են գործում: Վերջին տարիների ընթացքում հայտնագործվել են մի շարք դեղանյութեր ևս. դրանք դեռևս լայնորեն չեն գործածվում, որովհետև նրանց ազդեցության ուսումնասիրությունը ընթացքի մեջ է:

Ինչպես հայտնի է, մարդու և կենդանիների օրգանիզմում գտնվում է այսպես կոչված էնդոկրին գեղձերի մի ամբողջ սիստեմ: Այդ գեղձերի արտաթորած որոշակի հորմոնների չնչին քանակությունը կանոնավորում է օրգանիզմի աճն ու զարգացումը, իսկ դրանց բացակայությունը կամ անբավարարությունը ունենում են ծանր հետևանքներ: Մի շարք գիտնականների կարծիքով ծերության պատճառը էնդոկրին գեղձերի (մեկի կամ մի քանիսի) ֆունկցիաների թուլացումն է. սովորաբար նկատի են առնվում սեռական գեղձերը, և այդ պատճառով առաջարկվում էր ծերության դեմն առնել կամ ներմուծելով այդ գեղձերի հորմոնները, և կամ ծեր մարդուն պատվաստելով երիտասարդ կենդանուց վերցրած սեռական գեղձը (օպերացիաներ ըստ Ե. Շտեյնախի և Ս. Վ. Վորոնովի): Այդ փորձերը սակայն չտվին ցանկացած արդյունքը: Պատճառն այն է, որ ծերությունը պայմանավորող գործոնները գտնվում են ոչ միայն էնդոկրին գեղձերի, այլ օրգանիզմի մեջ: Ծեր մարդուն «երիտասարդացնելու» գաղափարը չարդարացավ. երիտասարդությունը վերադարձնելն անհնար է, հնարավոր է միայն կյանքը երկարացնել: Այնուամենայնիվ մեր ժամանակներում փորձարկվում են հորմոնային (էնդոկրին) մի շարք պրեպարատներ, որովհետև պարզվել է, որ հորմոններն ընդունակ են ներգործելու մարմնում կատարվող բիոքիմիական որոշ պրոցեսների և ծերացման որոշ արտահայտությունների վրա:

Ռումինական գիտնականներ Կ. Պարխոնը և Ս. Օէրիուն գտել են, որ ցիստեին կոչվող ամինոթթուն (ամինոթթուները այն պարզ քիմիական միացություններն են, որոնցից կազմված են սպիտակուցների մոլեկուլները), ներմուծվելով օրգանիզմի մեջ, ընդունակ են բարելավելու պրոտոպլազմայի քիմիական կազմը և նպաստելու երկարակեցությանը: Ներկայումս խոր ուսումնասիրություններ են տարվում պարզելու համար բարձր մոլեկուլային նուկլեինաթթուների ազդեցությունը հյուսվածքների նյութափոխանակության վրա, մանավանդ ծերության շրջանում:

Ինչ խոսք, երկարակեցության հարցում խոշոր նշանակություն ունի սնունդը. թե առողջության և թե երկարակեցության տեսակետից մարդու սնունդն ունի առաջնակարգ նշանակություն: Կիսաքաղց վիճակը, վատ սնունդը, բացասաբար են անդրադառնում կյանքի տևողության վրա: Ամենօրյա լիարժեք սնունդը պետք է պարունակի իր մեջ որոշակի քանակությամբ սպիտակուցներ, ածխաջրեր, ճարպեր և ճարպանման նյութեր (լիպոիդներ): Յուրաքանչյուր հասակ ունի այդ նյութերի իր պահանջը: Սնունդը պետք է լինի պարզ, առողջ, համեղ և չափավոր. այն պետք է պարունակի բավականաչափ վիտամիններ, որոնք գտնվում են գլխավորապես պտուղների և կանաչեղենի մեջ.

սննդի կարևոր մասերն են նաև հանքային աղերը, ջուրը և, այսպես կոչված միկրոէլեմենտները (ծանր մետաղների շատ չնչին հետքերը):

Սնունդը չպետք է լինի առատ, ավելորդություններ չպետք է թույլ տրվեն, մանավանդ դեռահաս և ծեր հասակում սնունդը պետք է ընդունել օրվա միևնույն, որոշակի ժամերին: Առատ սննդի հետևանքով մարդը ծարպակալում, գիրանում է, որը խիստ իջեցնում է աշխատունակությունը: Բացի այդ, ճարպակալում են սիրտը, մկանները, մի բան, որ բացասաբար է ազդում առողջության վրա: Գերադասելի է, երբ ճաշելուց հետո մարդը դեռևս մի փոքր պահանջ է զգում ուտելու:

Սպիտակուցները պետք է կազմեն սննդի անհրաժեշտ մասը. օրական նրանց գործածության քանակը պետք է լինի 100—110 գրամ. սխալ է այն կարծիքը, թե իբր դեռահաս և ծեր մարդիկ պետք է զգուշանան սպիտակուցներից, մանավանդ մսից: Պետք է խուսափել միայն գերբեռնվածությունից, սպիտակուցը և մանավանդ կենդանական ճարպերը պետք է ընդունել չափավոր քանակությամբ: Լավ կլինի, եթե շաբաթվա մեջ 2—3 օր դեռահաս մարդիկ գործածեն միայն կաթնեղեն, բանջարեղեն ու թարմ պտուղներ: Աղի գործածությունը պետք է կրճատել: Չպետք է տարվել ալկոհոլային խմիչքներով, այդ պետք է կամ իսպառ վերացնել գործածությունից և կամ գործածել չափավոր: Գեր մարդկանց խորհուրդ է տրվում ամիսը մեկ անգամ ունենալ «բեռնաթափման օր», որի ընթացքում գործածել միայն կաթնամթերքներ և խնձոր:

Ներկայումս մանրամասն մշակված է նորմալ սննդային ռեժիմ յուրաքանչյուր հասակի համար: Այդ ռեժիմի կիրառումը անձնական հիգիենայի, ուստի և երկարակեցության անհրաժեշտ պայմանն է:

Մեր ժամանակներում հատուկ ուսումնասիրության առարկա է դարձել կարճատև, ժամանակավոր, կամ երկարատև քաղցի նշանակությունը երկարակեցության համար: Գտնված է, որ կենդանիները, որոնց պարբերաբար պահում են քաղցած վիճակում, ավելի երկար են ապրում: Ազատվելով ավելորդ «բեռից»՝ օրգանիզմը թեթևանում և զերծ է մնում սրտի և մյուս ներքին օրգանների մասնակի ճարպակալումից: Ներկայումս հետազոտական աշխատանքներ են տարվում մարդուն «ավելորդ» բեռից ազատելու ուղղությամբ:

Սրանք են այն հիմնական միջոցները, որոնցով մարդը կարող է երկարացնել իր կյանքը՝ պահպանելով առողջ և աշխատունակ վիճակ երկար տարիների ընթացքում:

Մարդուն զանազան հիվանդություններից զերծ պահելու համար բավական չէ միայն անձնական հիգիենայի կանոնների կիրառումը: Այստեղ առաջին հերթին անհրաժեշտ են պետական հասարակական լայն միջոցառումներ, որոնց իրականացման շնորհիվ ՍՍՌՄ-ում վաղուց վերացել են մի շարք համաճարակային հիվանդություններ, զգալիորեն բարձրացել է մարդու կյանքի միջին տևողությունը: Բժշկական գիտության աշխատողները ջանք չեն խնայում դեռևս գոյություն ունեցող ինֆեկցիոն և ոչ ինֆեկցիոն հիվանդությունների վերացման համար մղվող պայքարում:

Մեծ անելիքներ ունեն գիտության աշխատողները: Կյանքի երկարացման ուղղությամբ ֆիզիոլոգիայի, բիոքիմիայի և բիոֆիզիկայի արդի նվաճումները գրավականն են այն բանի, որ հնարավոր է հասնել օրգանիզմի բարձր կենսունակության և աշխատունակության պահպանման:

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ՀԱՄՈՒՆ ՄԵՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ

*Հասարակական առաջադիմության գաղափարը պատմության փիլիսոփայության առանցքային կատեգորիաներից է: Ինչպես ինքը պատմափիլիսոփայությունը, այնպես էլ առաջադիմության պրոբլեմը մեծապես հուզում ու զբաղեցնում է մտածող մարդկությանը, և դա պատահական չէ մեր դարաշրջանում՝ կապիտալիստական սիստեմի փլուզման և կոմունիստական ֆորմացիայի ձևավորման դարաշրջանում: Հրատապ նշանակություն է ստացել հարցերի մի ամբողջ կոմպլեքս, ինչպես, օրինակ՝ ի՞նչ պրոցես է ապրել մարդկության պատմությունը, գործում է արդյո՞ք այդտեղ որևէ օրինաչափություն, թե այն ներկայացնում է դեպքերի պատահական կուտակում, որո՞նք են այդ պրոցեսի շարժիչ ուժերը, ուղղությունը, անցած էտապներն ու հետագա տենդենցները, ինչ ճակատագիր է սպասում մարդկությանը և այլ հարցեր: Շատերը որոնում են պատմության մեջ որևէ իմաստ, ուստի և արտահայտում են այն միտքը, թե առաջադիմության պրոբլեմը մարդկությանը հուզող ամենադրամատիկ պրոբլեմն է:*

*Բայց եթե այդ պրոբլեմը հուզում է բոլորին, ապա նրա մեկնաբանությունն ու այստեղից բխող տեսական ու պրակտիկ եզրակացությունները բոլորովին տարբեր ուղղություններով են ընթանում: Հակակոմունիզմը, սրան հարող իդեալիստական ու մետաֆիզիկական ուսմունքները կամ ամեն կերպ ձգտում են հերքել ու վարկաբեկել պատմական օրինաչափության, ուրեմն և առաջադիմության գաղափարը, կամ էլ ժամանակակից կապիտալիզմը համարում են հասարակական առաջադիմության մարմնացումը, նրա վերջին ավարտուն փուլը: Ռևոլյուցիոն մարքսիստները, բոլոր առաջավոր գործիչներն ու գաղափարախոսները այլ կերպ են մոտենում հարցին. նրանց համար հասարակական առաջադիմությունը օբյեկտիվ օրինաչափություն է և ոչ թե մի էպիզոդ: Այդ օրինաչափությունը կապիտալիզմով չի ավարտվում. վերջինս միայն մի էտապ է և պատմական անհրաժեշտությամբ իր տեղը պետք է զիջի նոր, ավելի բարձր հասարակարգին՝ կոմունիզմին:*

*Այսպիսով մենք ականատես ենք գաղափարախոսական երկու հակոտնյա գծերի սուր պայքարի:*

*Գիտության վաստակավոր գործիչ Հայկազ Ասլանյանի՝ «Առաջադիմության գաղափարը բուրժուական պատմափիլիսոփայության մեջ» վերտառություն կրող վերջերս լույս տեսած մեծածավալ (շուրջ 400 էջ) աշխատությունը[1] նշանակալից երևույթ է սովետական-մարքսիստական փիլիսոփայական գրականության մեջ: Այն աչքի է ընկնում փաստական և գաղափարական հարուստ բովանդակությամբ, բարձր կուլտուրական մակարդակով, մարտնչող պարտիականությամբ:*

*Այս աշխատության մեջ հեղինակը քննադատության է ենթարկում բուրժուական հայացքներն ու կոնցեպցիաները պատմության փիլիսոփայության վերը նշված արմատական պրոբլեմի՝ հասարակական առաջադիմության վերաբերյալ: Ընդարձակ ներածության մեջ հեղինակը համոզիչ կերպով հիմնավորում է հարցի տեսական և պրակտիկ կարևոր նշանակությունը: Հենվելով մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատությունների, Սովետական Միության Կոմունիստական պարտիայի վերջին համագումարների որոշումների, ՍՄԿՊ ծրագրի վրա, նա բացահայտում է քննարկվող հարցի հրատապ նշանա-*

[1] Г. Г. Асланян, Идея прогресса в буржуазной философии истории, Изд-во АН Арм. ССР, 1965.

կությունը կոմունիզմ կառուցող մարդկանց աշխարհայացքի ձևավորման գործում։ Հեղինակին հաջողվել է ապացուցել, որ հասարակական առաջադիմության գաղափարը պատմության փիլիսոփայության այն արմատական հարցերից է, որի հետ անմիջական առնչություն ունեն, կամ որից այս կամ այն ձևով ածանցվում են սոցիոլոգիական մի շարք կարևոր պրոբլեմներ։

Մենագրության մեջ հիմնավորված է այն դրույթը, որ հասարակության պատմության բոլոր փուլերում մարդկության առաջընթաց զարգացման գաղափարը պաշտպանել են նրա առաջատար ուժերը, առաջադեմ դասակարգերը, սոցիալական խմբերը։ Եվ դա եղել է ոչ միայն տեսության հարց։ Մարդկության լավագույն ապագայի համար պայքարողները նման գաղափարից պրակտիկ հետևություններ են հանգել, այդ եզրակացությունների վրա են հիմնել իրենց պայքարի մարտական ծրագիրը։

Հեղինակը սկզբից ևեթ արժեքավորում է կլասիկների մեթոդոլոգիական սկզբունքների վերհանման, պրոբլեմի դրական մշակման, բուրժուական հայացքների քննադատման ուղղությամբ մարքսիստների կատարած բեղմնավոր աշխատանքը. հրապարակում կան պրոբլեմի տարբեր կողմերը քննարկող, բուրժուական մտքի ճանաչված ներկայացուցիչների հայացքները քննադատող մենագրություններ, պարբերական մամուլում շարունակ հրապարակվում են հոդվածներ, լույս են տեսել դիսկուսիոն նյութերի և քննադատական հոդվածների մի շարք ժողովածուներ։ Ճիշտ է, կա միայն մեկ ամբողջական աշխատություն, որտեղ մարքսիստական քննադատության են ենթարկված նորագույն բուրժուական ռեակցիոն հայացքները (գլխավորապես անգլո-ամերիկյան դպրոցներն ու կոնցեպցիաները), որոնք ժխտում են հասարակական առաջադիմությունը։ Դա Յու. Ն. Սեմյոնովի աշխատությունն է՝ «Հասարակական առաջադիմությունը և ժամանակակից բուրժուազիայի սոցիալական փիլիսոփայությունը» վերնագրով, որը տպագրության է պատրաստում «Գիտություն» հրատարակչությունը։

Հ. Ասլանյանը իրավացիորեն գտնում է, որ այնուամենայնիվ հարցը սպառված համարել չի կարելի. դեռ շատ բան պետք է արվի լենինյան հսկայական գաղափարական ժառանգությունը վերհանելու, բուրժուական բազմազան կոնցեպցիաները քննադատելու, կոմունիստական ֆորմացիայի լինելիության պրոցեսի օրինաչափությունները ընդհանրացնելու ուղղությամբ։

Սոցիալական առաջադիմության գաղափարն առանձնապես կարևոր նշանակություն ունի պրոլետարիատի, բանվոր դասակարգի համար։ Ահա թե ինչու պրոլետարիատի գաղափարախոսությունը՝ մարքսիզմ-լենինիզմը, գիտականորեն հիմնավորել է պատմական առաջադիմության իդեան։ Գրախոսվող մենագրության հեղինակը քիչ ջանք չի գործադրել ցույց տալու համար, թե ինչ կարևոր նշանակություն ունի սոցիալական առաջադիմության գաղափարը կոմունիստական հասարակարգ կառուցող մարդկանց համար։

Հեղինակը միանգամայն ճիշտ է վարվել իր աշխատության մի ամբողջ գլուխ (1-ին գլուխը) նվիրելով քննարկվող հարցի պատմությանը։ Բնականաբար նա չէր կարող փիլիսոփայության պատմությունից հայտնի բոլոր տեսակետները հավասարաչափ հանգամանորեն վերլուծության ենթարկել։ Նրա ուշադրության կենտրոնումն են 16—18-րդ դարերի առաջադեմ մտածողների հայացքները, ապա պոզիտիվիզմի և վուլգար էվոլյուցիոնիզմի քննադատությունը և, վերջապես, առաջադիմության գաղափարների մասին ռուս մտածողների բեղմնավոր ասույթները։

Անհրաժեշտ է նշել, որ Հ. Ասլանյանը տվյալ հարցի քննարկմանը մոտենում է ոչ թե նկարագրողի և պասսիվ մեկնաբանողի դիրքերից, որը բնորոշ է հարցի պատմությունը շարադրողներից շատերի համար, այլ որպես մարքսիստ-տեսաբան, որն ունի իր ասելիքը և ընդհանրացման անառարկելի կարողությունները։ Հասարակական առաջադիմության մասին բուրժուական ուսմունքները հեղինակը դասակարգում է ըստ հետևյալ փուլերի. 16—18-րդ դարերում բարձրացող բուրժուազիան հանդես է գալիս որպես հասարակական առաջադիմության եռանդուն ջատագով, որն իր արտացոլումն է գտնում նրա գաղափարախոսների աշխատություններում։ Այս է առաջին փուլը։ Երկրորդը հեղինակը համարում է 19-րդ դարի փիլիսոփաների ու սոցիոլոգների հայացքները քննարկվող հարցի վերաբերյալ, որոնց համար բնորոշ է ոչ այնքան առաջադիմության գաղափարի բացահայտ ժխտումը, որքան նրա բովանդակության աղավաղումը, առաջադիմության սահմանափակումը կապիտալիզմի և միայն կապիտալիզմի շրջանակներում։ Այս փուլի համար հեղինակը տիպական է համարում պոզիտիվիզմն իր տարատեսակներով։ Երրորդ փուլը, հեղինակի դասակարգման համաձայն, սկսվում է 19-րդ դարի վերջերից, երբ կապիտալիզմը վերածվում է իմպերիալիզմի։ Վերջինիս գաղափարախոսության համար բնորոշ է բացահայտ ռեակցիան հասարակության առաջադիմության դեմ և՛ տեսության բնագավառում, և՛ պրակտիկայում։

Գրախոսվող աշխատության հաջորդ գլուխներն ամբողջությամբ նվիրված են առաջադիմության դեմ ուղղված հենց այդ փուլի բուրժուական հայացքների և կոնցեպցիաների քննադատական վերլուծությանը մարքսիզմ-լենինիզմի դիրքերից։



Չի կարելի չնշել, որ այստեղ էլ հեղինակը ղեկավարվում է մարքսիստական դիալեկտիկայի կարևորագույն սկզբունքով՝ պատմականությամբ, համակցելով այն տրամաբանական սկզբունքի հետ։ 20-րդ դարի բուրժուական հայացքներն ու ուղղությունները նա քննարկում է երկու փուլերով՝ երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ և հետպատերազմյան ժամանակաշրջանում։ Դժվար չէ համոզվել, որ խստագույն ճշգրտությամբ պահպանել պատմականությունը կարելի է միայն ընդհանուր գծերով։

Աշխատության հեղինակը տալիս է Նիցշեի, նեոկանտականների, Շպենգլերի տեսակետների քննադատությունը։ Այդ ուսմունքները գրքում վերլուծվում են կապիտալիզմի տնտեսական և սոցիալական հակասությունների բացահայտման ֆոնի վրա։ Հեղինակը ցույց է տալիս, թե ինչպես մասսայական բանվորական շարժման ուժեղացումը, մարքսիզմի տարածումը, սոցիալ-դեմոկրատական պարտիաների հանդես գալը բուրժուազիայի մոտ առաջացնում է ռեակցիա բոլոր ուղղություններով՝ տնտեսական, քաղաքական, գաղափարախոսական։ Այդ վերջինիս արտահայտությունն են Նիցշեի, Շպենգլերի ու նրանց համախոհների ուսմունքները հասարակական առաջադիմության մասին, ավելի ճիշտ՝ սոցիալական առաջադիմության դեմ։ Հեղինակը միանգամայն տեղին է բերում Պոլ Լաֆարգի դրույթն այն մասին, թե «Անգլիայի ու Ֆրանսիայի քաղաքական ասպարեզում պրոլետարիատի երևալը բուրժուազիայի հոգում անհանգստություն առաջացրեց նրա սոցիալական իշխանության հավերժության համար և նրա աչքերում առաջադիմությունը կորցրեց իր գրավչությունը»։

Տալով հարցի ընդհանուր գնահատականը, հեղինակն իրավացիորեն անցնում է կոնկրետ տեսակետների քննարկմանը, քննադատական հետազոտության նյութ է դարձնում «մշտական վերադարձի», «պատմական շրջապտույտների», «լոկալ կուլտուրաների» և այս կարգի այլ ուսմունքները։

Աշխատության հեղինակը հանգամանորեն կանգ է առնում հետպատերազմյան շրջանում հասարակական-պատմական առաջադիմության վերաբերյալ բուրժուական ուսմունքների ընդհանուր գնահատման վրա, քննարկում է այն գործոններն ու պրոցեսները, որոնք բնորոշում են մեր դարաշրջանի բնույթը։ Նման բնութագիրը հնարավորություն է տալիս հասկանալու արդի բուրժուական հասարակական մտքի բնորոշ գծերը, մասնավորապես սոցիալական հոռետեսությունն ու նիհիլիզմը, իռացիոնալիզմն ու պատմական կատաստրոֆների քարոզը։

Միանգամայն ճիշտ է վարվել մենագրության հեղինակը, հանդես գալով սոցիալական առաջադիմության վերաբերյալ արդի բուրժուական գաղափարախոսության գռեհիկ պատկերացման դեմ, որի համաձայն առաջադիմության հակառակորդները միևնույն ձևով շեմքից մերժում են, բացահայտորեն ժխտում են առաջադիմության վերաբերյալ ամեն մի միտք։ Դրանում չէ նրանց ուսմունքների էությունը, այլ այն բանում, որ ամեն կերպ աղավաղեն սոցիալական առաջադիմության գաղափարը, աղճատեն նրա բովանդակությունը և հարմարեցնեն իմպերիալիստական բուրժուազիայի շահերին։ Հասարակական կյանքի որոշ կողմերի առաջընթացը, ասենք, օրինակ, գիտության ու տեխնիկայի առաջադիմությունը ընդունելի է, անշուշտ, արդի բուրժուազիայի համար։ Սակայն արձանագրելով գիտատեխնիկական հեղաշրջումը, ռեակցիոն մտածողները ներկայացնում են այդ երևույթը և դրա հետևանքները ծուռ հայելու մեջ, ամեն կերպ ջանում են մթագնել սոցիալական առաջադիմության էությունը, ժխտել այն սկզբունքային դրույթը, թե իրական սոցիալական առաջադիմությունը տանում է դեպի նոր, կոմունիստական հասարակարգի հաստատում։

Հ. Ասլանյանին հաջողվել է ցույց տալ այն հակասական տենդենցները, որ իր հետ բերում է գիտատեխնիկական առաջընթացը արդի կապիտալիզմի պայմաններում։ Որոշ իմաստով գիտատեխնիկական հսկայական վերելքը իմպերիալիզմի կլասիկ երկրներում բանականության պյուռոսյան հաղթանակ է։

«Տեխնիկական պրոգրեսը բուրժուական մտքի ծուռ հայելու մեջ» գլուխը գրախոսվող աշխատության հետաքրքրական ու բովանդակալից հատվածներից է։ Հարուստ փաստական նյութի վերլուծման հիման վրա այստեղ բացահայտված է բուրժուական մտքի տարընթացությունը՝ տեխնիկական ֆետիշիզմը (տեխնիկան դիտվում է որպես սոցիալական հարաբերություններից մեկուսացած միստիկական ուժ, որն ավտոմատիկ կերպով հանգեցնելու է ամբողջ քաղաքակրթության ճակատագրական կործանման), տեխնոկրատիան (որն իբր փրկելու է կապիտալիզմը և նրա համար պրոգրեսի նոր փուլ է բացելու)։ Ինչպես գրքի մյուս գլուխներում, այստեղ էլ հեղինակը մի շարք ուշագրավ ընդհանրացումներ է անում։

Տվյալ հարցի վերլուծությունը կրկին ու կրկին հաստատում է մարքսիստական այն թեզը, թե կապիտալիզմն իր զարգացման ներկա փուլում չի կարող բոլոր հնարավորություններն ստեղծել տեխնիկայի զարգացման համար. այն կաշկանդում է այդ զարգացումը կամ ուղղում է մարդկության դեմ։ Հասարակական առաջադիմության գաղափարը արդի բուրժուական մտածողներից շատերն են քննարկման ենթարկել։ Այդ բնա-

գավառում առանձնապես աչքի են ընկնում Ա. Թոյնբիի «լոկալ քաղաքակրթությունների» և Վ. Ռոստոուն պատմական զարգացման հինգ փուլերի մասին իրենց ուսմունքներով։

Բնական է, որ քննարկվող պրոբլեմի բազմակողմանի քննադատությունը պահանջում էր հիշատակված ուսմունքների մարքսիստական-լենինյան վերլուծությունը։ Ուստի ճիշտ է վարվել Հ. Ասլանյանը, իր մենագրության մի հատուկ գլուխը նվիրելով Թոյնբիի և Ռոստոուի հայացքների քննադատությանը։

Այս առթիվ պետք է նկատել հետևյալը։

Չնայած որ Շպենգլերի, Թոյնբիի ու Ռոստոուի կոնցեպցիաների վերաբերյալ մարքսիստական ահագին գրականություն է ստեղծվել, այնուհանդերձ հեղինակի շարադրությունը եղած քննադատական գրականության վերարտադրությունը չէ, այն աչքի է ընկնում իր թարմությամբ և ինքնատիպությամբ։ Բնութագրելով Թոյնբիի «լոկալ քաղաքակրթությունների» և Ռոստոուի պատմության «տնտեսական աճման ստադիաների» վերաբերյալ մոդայական կոնցեպցիաները, Հ. Ասլանյանը ցույց է տալիս, որ դրանցում պատմական իրական պրոցեսը ներկայացված է աղավաղված ձևով։

Ինչպես համոզիչ կերպով բացատրում է հեղինակը, սոցիալական պեսիմիզմը հակաառաջադիմական, հակակոմունիստական մտայնության դրսևորման մի կողմն է միայն։ Պեսիմիստների անկումային տրամադրության նկատմամբ յուրահատուկ ռեակցիա է հանդիսանում իմպերիալիզմի անսքող ջատագովությունը, նրա թունդ պաշտպանների այսպես ասած պաշտոնական օպտիմիզմը, որի կողմնակիցները պեսիմիստներին մեղադրում են կոմունիզմի առջև կապիտուլյացիա անելու մեջ։ Կաղյոննի օպտիմիզմի վկայություն է Ռոստոուի վերոհիշյալ և դրան հարող ֆրանսիական սոցիոլոգ, մարքսիզմի քննադատ Ռայմոն Արոնի այսպես կոչված «միասնական ինդուստրիալ հասարակություն» կոնցեպցիաները։ Ռոստոուն իր գիրքը («Տնտեսական աճման ստադիաները») մտահղացել է որպես մարքսիզմին հակադիր պատմատնտեսական, ավելին՝ պատմափիլիսոփայական տեսություն, տալով գրքին «Ոչ-կոմունիստական մանիֆեստ» ենթավերնագիրը։ Հասարակական-տնտեսական ֆորմացիաների մարքս-լենինյան ուսմունքին նա հակադրում է մարդկության անցած ուղու իր հինգ ստադիաները, չափանիշ ընդունելով սոցիալ-տնտեսական հարաբերություններից անջատ տեխնիկա-արտադրական մակարդակը։

Օպտիմիզմի դրոշի ներքո հանդես են գալիս նաև կապիտալիզմի մի շարք այլ ջատագովներ՝ կապիտալիզմի «բարելավման» դեղատոմսերով, «ժողովրդական կապիտալիզմ» քարոզելով, կապիտալիզմի առաջընթացի գաղափարով։ Այս հարցերի քննադատական վերլուծությունը ևս դուրս չի մնացել քննարկվող աշխատության հեղինակի տեսադաշտից։

Աշխատության նախավերջին գլուխը նվիրված է հասարակական առաջընթացի մարքսիստական-լենինյան ըմբռնման շարադրությանը։ Այստեղ հեղինակը նպատակադրվել է ցույց տալ, որ միայն մարքսիստական-լենինյան գաղափարախոսության դիրքերից կարելի է բացահայտել պատմական, սոցիալական առաջընթացի իրական հիմքերը, իսկական շարժիչ ուժերը, այդ առաջընթացի բովանդակությունն ու հեռանկարները։ Եվ հեղենակը հակամարքսիստական բոլոր հայացքներին, տեսակետներին, կոնցեպցիաներին հետևողականորեն հակադրում է հասարակական-պատմական առաջադիմության միակ գիտական, դիալեկտիկա-մատերիալիստական ըմբռնումը։ Այս ըմբռնման համաձայն համաշխարհային պատմությունը ոչ թե պատահական դեպքերի կուտակումն է, այլ օբյեկտիվորեն օրինաչափ, վերընթաց, ուրեմն առաջադիմական պրոցես, որովհետև այդ պրոցեսի հիմքը կազմում է արտադրողական ուժերի զարգացումը, իսկ մարդիկ չեն կարող կամայաբար ընտրել արտադրողական ուժերի այս կամ այն մակարդակը։ Դա օբյեկտիվ պրոցես է, ուստի և առաջադիմությունը համաշխարհային պատմության օբյեկտիվ օրենքն է։ Հիմնավորելով այս միտքը, հեղինակը հենվում է լենինյան այն դրույթի վրա, թե «Մարդկային բոլոր հասարակությունների զարգացումը հազարամյակների ընթացքում առանց բացառության բոլոր երկրներում ցույց է տալիս մեզ այդ զարգացման ընդհանուր օրինաչափությունը, կանոնավորությունը, հաջորդականությունը»։

Սակայն պատմության մարքսիստական ըմբռնումը ոչ միայն մատերիալիստական է, այլև դիալեկտիկական։ Այն դիալեկտիկա-մատերիալիստական է։ Միայն այդ պատմափիլիսոփայությունն է, որ խորապես ու բազմակողմանիորեն բացահայտում է պատմական պրոցեսի ռեալ հիմքերը, բուն շարժիչ ուժերը, բովանդակությունն ու ուղղությունը և մատնանշում է» «պատմության գիտական ուսումնասիրության ուղին որպես միասնական, իր ամբողջ հսկայական բազմակողմանիությամբ ու հակասականությամբ օրինաչափ պրոցեսի» (Լենին)։

Հետևելով այս դիալեկտիկա-մատերիալիստական սկզբունքին, գիտնականը այնուհետև բաց է անում մեր առաջ պատմական պրոցեսի բարդ, հակասական, զիգզագաձև պատկերը։ Այս կապակցությամբ հեղինակը շատ տեղին քննադատում է մարքսիզմի հակառակորդների այն հորինաբանությունը, թե մարքսիստները հասարա-



կության առաջադիմությունը իբր պատկերացնում են որպես տնտեսական ֆակտորի ավտոմատիկ գործողության պրոցես, կամ երկրաչափորեն ուղիղ գիծ։ Հերքելով այդ հերյուրանքները, հեղինակը վեր է հանում Մարքսի մի շատ կարևոր դրույթը, որը հաճախ մոռացության է տրվում մեր փիլիսոփաների կողմից։ Այդ այն է, որ հասարակության զարգացման ընդհանուր օրենքները մի շարք հանգամանքների՝ ներքին և արտաքին հանգամանքների ազդեցության տակ «դրսևորում են անվերջ վարիացիաներ ու գրադացիաներ»։ Ուղղագծության ու տնտեսական ավտոմատիզմի վերաբերյալ խոսակցությունները ում ուզում ես կարող են հարվածել, բայց ոչ մարքսիզմին։

Առանձին հետաքրքրություն է ներկայացնում հասարակական առաջադիմության և դրա չափանիշների սահմանման պրոբլեմը։ Գրքի վերջին գլխում բերված են մի շարք սահմանումներ, նույն թվում իդեալիստական սահմանումներ։ Քննադատության է ենթարկված իդեալիստական տեսակետը, որը առաջադիմության հիմնական չափանիշը համարում է բարոյական իդեալը, այսինքն առաջադիմական է համարվում այն երևույթը, պրոցեսը, հասարակարգը, որը ցանկալի է այս կամ այն խմբի, հոսանքի, գործչի բարոյական իդեալի տեսակետից։ Հետևաբար իդեալները խիստ տարբեր են լինում։ Մոտիկից քննելով հարցը, պարզվում է, որ պրոբլեմը, իրոք, այնքան էլ հեշտ չէ։ Խնդիրն այն է, որ պատմությունը մարդիկ են ստեղծում, իսկ մարդիկ միշտ էլ ղեկավարվում են որևէ սուբյեկտիվ մոտիվով՝ բարոյական, կրոնական, քաղաքական և այլն։ Այստեղից իդեալիստը առանց այլևայլության եզրակացնում է, թե առաջադիմության օբյեկտիվ օրենք գոյություն չունի, ամեն ինչ կախված է նրանից, թե ով ինչ է ցանկալի համարում։ Հեղինակը պրոբլեմի պատմա-մատերիալիստական ըմբռնումը հստակորեն հակադրում է իդեալիստական, սուբյեկտիվիստական կոնցեպցիաներին, ապացուցելով, որ համաշխարհային պատմության պրոցեսը օբյեկտիվորեն օրինաչափ պրոցես է։ Առաջադիմության օրենքը դրա դրսևորումներից մեկն է։ Միևնույն ժամանակ հեղինակն անջրպետվում է գռեհիկ սոցիոլոգիզմից, որն անտեսում է սուբյեկտիվ ֆակտորի դերը պատմության մեջ։ Գրքում ցույց է տրված, թե որտեղից են ծագում իդեալները, երբ և ինչպիսի դեր են խաղում դրանք։ Կոմունիզմն, օրինակ, նույնպես իդեալ է, բայց դա անհող, հորինված իդեալ չէ, այլ համաշխարհային պատմության օբյեկտիվ ընթացքից բխող անհրաժեշտ եզրակացություն է, պատմական մեծագույն անհրաժեշտություն։ Վկայակոչելով առաջադիմության չափանիշների մարքսիստական մի շարք սահմանումներ, հեղինակը ընդգծում ու խորացնում է հարցի առանձին կողմերը։

Պատմա-մատերիալիստական փիլիսոփայության կողմից արդեն հաստատված է այն գիտական թեզը, որ համաշխարհային պատմության ռեալ բովանդակությունն ու հիմնական փուլերը հասարակական-տնտեսական ֆորմացիաներով են որոշվում։ Հեղինակը հետևողականորեն շարունակում, մեկնաբանում է այս թեզը։ Պատմաբաններն ու փիլիսոփաները գործ են ածում «հին դար», «միջին դար», «նոր և նորագույն դարեր», «կուլտուրա», «քաղաքակրթություն», «արժեքներ» և այլ կատեգորիաներ։ Մարքսիզմը, բացատրում է հեղինակը, չի ժխտում այդ պատմա-փիլիսոփայական կատեգորիաների հետազոտման, ուսումնասիրման անհրաժեշտությունն ու նշանակությունը։ Սակայն մարքսիզմը չի բավարարվում դրանով. նա տալիս է բանալի բացահայտելու այդ կատեգորիաների ռեալ բովանդակությունը, պատմական մեծ դարաշրջանները («հին աշխարհի», «միջին դարի», «քաղաքակրթության ստադիաներ» և այլն) հանգեցնելով այս կամ այն ֆորմացիային կամ որևէ ֆորմացիայի այս կամ այն փուլին։

Գրքի վերջին գլուխը վերնագրված է «Ընդհանրացումներ և ամփոփում»։ Սա շատ յուրահատուկ գլուխ է. այստեղ ոչ միայն ամփոփումներ են արված. սա փաստորեն մի նոր ինքնուրույն և մեծ գլուխ է, որտեղ մի շարք նոր հարցեր են առաջ քաշված, քննադատաբար բնութագրված են բազմաթիվ նոր օտար աղբյուրներ։ Ամբողջ աշխատության միջով հեղինակն անց է կացնում հակաառաջադիմական ուսմունքների քննադատության երկու ասպեկտ՝ սոցիալական և իմացաբանական։ Եթե գրքի նախորդ բաժիններում (հատկապես 3-րդ գլխում) հեղինակը շարունակ վեր է հանում հակաառաջադիմական կոնցեպցիաների սոցիալ-քաղաքական հիմքերը, բովանդակությունն ու իմաստը, ապա այս գլխում նա զբաղված է այդ կոնցեպցիաների գլխավորապես ընդհանուր պատմա-փիլիսոփայական ֆոնի բնութագրությամբ։ Այլ խոսքով ասած, այստեղ վեր են հանված ժամանակակից բուրժուական սոցիալ-փիլիսոփայական մտածողության բնորոշ գծերը՝ կեղծ գիտական էմպիրիզմը, սուբյեկտիվ իդեալիզմը, ագնոստիցիզմը, գռեհիկ նատուրալիզմը և բոլոր դեպքերում՝ կղերամտական ու հակակոմունիստական նկրտումները։

Այսպիսով, ընթերցողին է ներկայացված մի լուրջ հետազոտություն, որն իր առաջադրած պրոբլեմներով, հարցադրումներով և նրանց լուծումով պետք է դիտել որպես տվյալ բնագավառում մի նոր քայլ։

Այս հաջողված աշխատության արժանիքների մեջ աչքի է ընկնում նախ և առաջ այն, որ հեղինակը հիանալի տիրապետում է մարքսիզմ-լենինիզմի ուսմունքին։ Նրա հետազոտության միջով կարմիր թելի պես անցնում է անխախտ հավատը մարդկության առաջընթացի նկատմամբ, որը տանում է դեպի կոմունիզմի համաշխարհային հաղթանակը։ Քննարկվող հարցի նկատմամբ պարտիական մոտեցումն անցնում է ամբողջ աշխատության միջով՝ սկզբից մինչև վերջը։

Չի կարելի անցնել այն փաստի կողքով, որ գրախոսվող աշխատության հեղինակը օգտագործել է հսկայական գրականություն և, որ ամենակարևորն է տվյալ դեպքում, սկզբնաղբյուրներ։ Դա արդեն աչքի է ընկնում գրականության ցանկից, որ նա կցել է իր աշխատությանը։

Անշուշտ անհրաժեշտ է նշել հեղինակի ոճը։ Հ. Ասլանյանի աշխատություններին ընդհանրապես հատուկ է հռետորական բարձր մակարդակը և հրապարակախոսական պաթոսը։ Եթե նկատի չունենանք առանձին ոճական անհարթությունները, ապա այս մենագրությունում հեղինակի պերճախոսությունը դրսևորվել է իր ամբողջ փայլով։

Այսպիսին են գիտության վաստակավոր գործիչ Հ. Ասլանյանի մենագրության ընդհանուր բնութագիրը և ամենագլխավոր արժանիքները։

Այն, ինչ նա արել է, արել է հաջող, իսկ դժվար թե տեղին է քննադատել այն բանի համար, ինչ նա չի արել։ Սակայն ասել հաջող, չի նշանակում համարել անթերի։ Այսպիսի ստվարածավալ գործում, որտեղ շոշափված են բազմապիսի հարցեր, թերություններ չեն կարող չլինել։

Հիշատակենք թեկուզ գրականության ցանկը։ Նախ, ինձ թվում է, այդ ցանկը նա չպետք է անվաներ «Բիբլիոգրաֆիա», քանի որ այդ երկու հասկացությունների միջև զգալի տարբերություններ կան, որոնք, անշուշտ, քաջ հայտնի են իրեն՝ հեղինակին։ Որպես գրականության ցանկ էլ այն անթերի չէ։ Մի դեպքում նշված են աշխատության հրատարակման տեղը, թվականը, մի այլ դեպքում միայն թվականը, երրորդ դեպքում՝ ոչ մեկը և ոչ էլ մյուսը։ Երբեմն պահպանված չեն աշխատություններ նշելու գիտատեխնիկական կանոնները։ Առանձին անճշտություններ կան օտար աղբյուրների վերնագրերում։

Աշխատության ստրուկտուրայի վերաբերյալ երկու դիտողություն։ Առաջին. մեզ թվում է, որ տեխնիկական պրոգրեսին վերաբերող գլուխը (4-րդ գլուխ) պետք էր ավելի ետ տանել, համենայն դեպս այն պետք է շարադրվեր բուրժուական հիմնական կոնցեպցիաների քննադատական վերլուծությունից հետո։ Այդ դեպքում շատ ավելի ակնառու կերևար հեղինակի այն ճիշտ միտքը, թե տեխնիկական պրոգրեսի շուրջը եղած հակագիտական, երբեմն ֆանտաստիկ դատողությունները ու պատկերացումները ինչ-որ պատահական կամ բացառիկ բաներ չեն, այլ ժամանակակից բուրժուական մտքի ճգնաժամի ու տարընթացության դրսևորումներից մեկը։ Դրանով աշխատության կառուցվածքը շատ ավելի կուռ ու հետևողական կդառնար։

Մեր երկրորդ դիտողությունը վերաբերում է հասարակական առաջադիմության պրոբլեմի մարքսիստական-լենինյան ըմբռնմանը նվիրված գլխին։ Ինչպես և պետք էր սպասել, քննադատական վերլուծության ենթարկելով պրոբլեմի բուրժուական մեկնաբանությունները, հեղինակը իրավացիորեն դրանց ստնկոխ հակադրում է հարցի մարքսիստական-լենինյան ըմբռնումը։ Չբավարարվելով դրանով, Հ. Ասլանյանը իր գրքում հարցի մարքսիստական ըմբռնման հիմունքների դրական շարադրմանը նվիրել է նաև հատուկ գլուխ (նախավերջին, 7-րդ գլուխը)։ Դրա հետևանքով բնականորեն որոշ կրկնություններ են առաջացել։ Բայց դա այնքան էլ էական չէ. շատ ավելի կարևոր է այն, որ մարքսիզմի ուսմունքի որոշ դրույթներ (օրինակ, «Դարձյալ պատմական պրոգրեսի դիալեկտիկայի մասին», «Պրոգրեսի չափանիշների սահմանման շուրջը») մտել են վերջին, 8-րդ գլուխը, կազմելով դրա 4 և 5 պարագրաֆները։ Մենք կարծում ենք, որ այդ պարագրաֆներն էլ պետք է մտնեն մարքսիզմին նվիրված գլխի մեջ, որով պրոգրեսի վերաբերյալ այդ միակ գիտական ուսմունքը կստանար շատ ավելի կուռ ու ամբողջական տեսք։ Մենք խորհուրդ կտայինք հեղինակին գրքի հայերեն հրատարակությունը նախապատրաստելիս, վերջին երկու գլուխները որոշ վերակառուցման ենթարկել, մասնավորապես մարքսիստական տեսության շարադրումը տալ ամենավերջում. գիրքը պետք է ավարտվի դրանով։

Մնում է ավելացնել, որ գրախոսվող այս բարձրարժեք մենագրությունը անշուշտ լուրջ օգուտ կբերի բոլոր նրանց, ովքեր զբաղվում են կամ առնվազն հետաքրքրվում ժամանակակից փիլիսոփայության հարցերով. գիրքը վերջանում է վառ պաթոսով և վարակում է ընթերցողին պատմական անհողդողդ լավատեսությամբ։

Այս գրքի հայերեն թարգմանության և հրատարակման անհրաժեշտությունը ակնհայտ է։

Գ. ԲՐՈՒՏՅԱՆ
Փիլիսոփայական գիտությունների
դոկտոր-պրոֆեսոր



## ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾԵՆՔ ՄԵՐ ԱՊՐԵԼԱԿԵՐՊԸ

Սոցիալիստական հասարակարգը խորապես շահագրգռված է իր անդամների ապրելակերպի կազմավորմամբ։ Ապրելակերպը ամբողջությամբ վերցրած՝ սոցիալիստական հասարակարգը երբեք չի համարել և չի էլ կարող համարել միմիայն մասնավոր գործ։ Հասարակությունը չի կարող և չպետք է ինքնահոսի թողնի ապրելակերպը կազմավորող ազգային-էթնոգրաֆիական յուրահատկությունները և կենցաղի առանձնահատկությունները։ Ներկայումս, երբ մեր երկիրը գտնվում է կոմունիզմի ծավալուն կառուցման էտապում, նոր մարդու, աշխատավորների կոմունիստական աշխարհայացքի կազմավորման և նրանց ֆիզիկական և հոգևոր ներդաշնակ զարգացման պրոցեսը արդեն դարձել է կոմունիստական շինարարության ամենահրատապ խնդիրներից մեկը։ Հրամայորեն անհրաժեշտ է մաքսիմալ կերպով կատարելագործել աշխատավորների ապրելակերպը։

Կապիտալիզմի մնացուկները աշխատավորների գիտակցությունից արմատախիլ անելը և կոմունիզմ կառուցողների բարոյական կոդեքսի հաղթանակը, անշուշտ, ինքնաբերաբար տեղի չեն ունենա։ Դրանք պետք է նվաճվեն կոմունիստական դաստիարակության, բացառիկ համառ և մանրակրկիտ աշխատանքի միջոցով, այդ թվում նաև հասարակության կողմից կազմակերպված հիմունքներով կյանքի ռացիոնալ ապրելակերպը կենցաղում ներդնելու միջոցառումներն ակտիվորեն և պլանաչափորեն ընդլայնելու միջոցով։

Ինչպես հայտնի է, սոցիալիստական սովորույթները և տրադիցիաները մեր երկրում չնայած որ սկսել են ծնվել և կազմավորվել միմիայն սովետական իշխանության տարիներին, բայց նրանք ծնվել են ոչ թե խոպան տեղում, այլ կողք-կողքի այն սովորույթների և տրադիցիաների հետ, որոնք ընդհանրապես կային ժողովրդի մեջ և կազմավորվել էին դարերով։ Սովետական մարդիկ, չնայած անցած տարիների ընթացքում վճռականորեն հրաժարվել են բազմաթիվ հին և հետամնաց սովորույթներից, տրադիցիաներից, բարքերից, կրոնական պաշտամունքներից, ծեսերից, տոներից և այլն, այնուամենայնիվ մինչև այսօր էլ շատ մարդկանց մոտ հին սովորությունները ու բարքերը կենսունակ են։ Ընդ որում, պետք է նշել, որ բոլոր այդ կարգի հնացած և դարն ապրած սովորույթներին ու տրադիցիաներին կառչելը հաճախ փորձում են արդարացնել որպես ինչ-որ «ազգային սրբություններ», որոնք ունեն ինչ-որ «ազգային անմեռ բնույթ», «ազգային հավիտենականության կնիք»։ Սակայն, չնայած դրանց կեղծ-ազգային արտաքինին, այնուամենայնիվ դրանց պահպանումը և

կիրառումը վաղուց արդեն դադարել են համապատասխանել անգամ առողջ դատողության ամենատարրական պահանջներին, իսկ դրանցից շատերը ունեն անգամ բացարձակ կրոնական բնույթ։

Կանգ առնենք այդ կեղծ-ազգային սովորույթներից մի քանիսի վրա։ Այսպես, օրինակ՝ ինչո՞ւ մահացածները չեն թաղվում հենց նույն օրը, այլ պահվում են բնակարանում մի քանի օր, ապա թաղվում։ Ինչո՞ւ են բազմազան հավաքույթներ կազմակերպվում գերեզմանոցներում, անգամ գինարբուքներ յոթի, քառասունքի, կամ թե տարելիցի առիթով։ Ինչո՞ւ մահախոսականների փոխարեն թերթերում տպվում են բազմաթիվ հայտարարություններ ծանոթ, անգամ անծանոթ մարդկանց մահվան ցավակցության համար։ Ինչո՞ւ նորից գլուխ է բարձրացրել օժիտը որպես ամուսնության հիմքերից մեկը, որը ներկայումս, ինչպես և հին ժամանակներում, տհաճ մրցավազքի բնույթ է կրում, ընդգրկելով ոչ միայն հեռուստացույցը, լվացքի մեքենան, սառնարանը, կահույքի գառնիտուրները, դաշնամուրը, ավտոմեքենան և՛ անգամ 3 տոկոսանոց փոխառության տոմսերը և՛ խնայդրամարկղի գրքույկը։ Ինչի՞ համար հարսանիքներում ցուցամոլական մրցումներ են կատարվում փողային շաբաշ գցելու մեջ։ Ինչո՞ւ քավորության սովորույթը անպայմանորեն կապված է թանկարժեք նվերներ գնելու և այլ մեծ ծախսերի հետ։ Ինչո՞ւ դեռևս շատ վայրերում պահպանվում է յոթերորդ օրը «հարսի գլուխը լվանալու» սովորությունը, որը նույնպես կապված է մեծ ծախսերի հետ։ Ինչո՞ւ գերեզմանների վրա մեկը մյուսից թանկարժեք հուշարձաններ կանգնեցնելն այնպիսի քայքայիչ մրցավազքի բնույթ է ստացել, որի հետևանքով արդեն դրանք շատ դեպքերում ամենևին էլ չեն ծառայում իրենց բուն նպատակին։ Ինչո՞ւ դեռևս շատ աշխատավորներ անպայմանորեն գինարբուքներով են նշում մեծ գնումները, հոնորարներ կամ աշխատավարձ ստանալը, փոխառության շահումը, պաշտոնի կամ կոչումի բարձրացումը, դիպլոմ ստանալը և այլն։ Ինչո՞ւ ընտանեկան կամ թե պատմաուևոլյուցիոն տոները նշելու միակ ձևը նույնպես շատ դեպքերում սահմանափակվում է միմիայն գինարբուքներով։

Սոցիալիստական սովորույթներին և տրադիցիաներին, ապա և սոցիալիստական ապրելակերպին հատկապես մեծ վնաս է հասցնում եկեղեցիների և կրոնական զանազան կազմակերպությունների գործունեության զգալի աշխուժացումը։ Հատկապես դրա հետևանքով վերջին ժամանակներս աշխատավորների բավականին լայն շրջանակներում արդեն մեծ տարածում են ստացել եկեղեցական և կրոնական տոների, ծեսերի, սովորույթների նշումն ու կիրառումը — զատիկը, պասերը, ուխտագնացությունները, կնունքները, ջրօրհնենքը, հիվանդներին ուխտավայր տանելը, մեռելոցները և այլն։ Այդ բանում հեշտորեն կարելի է համոզվել, եթե այդպիսի օրերին դիտենք մարդկանց այն թափորները, որոնք ընթանում են դեպի Էջմիածնի վանքը կամ թե Երևանի Թոխմախ-գյոլի գերեզմանոցը։

Սոցիալիստական սովորություններին և տրադիցիաներին, հետևապես և սոցիալիստական ապրելակերպին զգալի վնաս է հասցնում նաև այն հանգամանքը, որ սովետական առանձին մարդկանց կենցաղում մուտք են գործել կապիտալիստական երկրների զանազան այլանդակ սովորությունների և ճաշակի աղքատության այս կամ այն երևույթները (հագուստի, կոշիկի, սանրվածքի, պարերի և երաժշտության, մոդաների բնագավառներում, թմրադեղերի՝ հաշիշի, օպիումի, աֆիոնի և այլնի կիրառումը, ռեստորանային գինարբուքները, ձիարշավներում մեծ գրազները, խաղատներ այցելելը, պորտաբուծությունը, սպեկուլյացիան և այլն)։ Աշխատավորների ապրելակերպի վրա ունեցած այդ այլանդակ սովորույթների ազդեցության մասին արդեն սկսել է գրվել նաև մեր պարբերական մամուլում և ընդունվել են առանձին օրգանների կողմից անգամ հատուկ որոշումներ։

Սոցիալիստական ապրելակերպին վնաս է հասցնում նաև այն, որ շատ քիչ են գործածության մեջ դրվում լավ, ճանաչողական և հետաքրքրաշարժ սենյակային խաղեր, որի հետևանքով էլ աշխատավորները ստիպված են զբաղվել զանազան անիմաստ ու անօգուտ խաղերով (դոմինո, թղթախաղ, լոտո, նարդի և այլն)։

Վերջապես, աշխատավորների ռացիոնալ ապրելակերպին վաղուց դադարել են համապատասխանելուց այն հնացած և աննշան ձևերն ու մեթոդները, որոնց միջոցով նշվում են մեր երկրում հասարակության կողմից բազմիցս և ամենուր մասսայաբար նշված տոները և նշանավոր օրերը։ Օրինակ, Մայիսի մեկի և Հոկտեմբերյան ռևոլյուցիայի տարեդարձի օրերի նշումը սահմանափակվում է միայն տոնական շքերթի դուրս գալով, թերթերում համապատասխան հոդվածներ հրապարակելով և հանդիսավոր նիստեր գումարելով։ Անցած Մայիսի 9-ը՝ Հայրենական պատերազմի հաղթանակի 20-ամյա տարեդարձի օրը նույնպես նշվեց միմիայն նույն ձևով։ Այսպիսի տոն օրերին ամբողջ ժողովուրդը հոծ մասսաներով և մարդիկ իրենց ընտանիքներով տոնական տրամադրությամբ երեկոները լցվում են քաղաքի հրապարակները՝ ուրախանալու ու զվարճանալու բուռն ցանկությամբ։ Սակայն այդ վայրերում նրանց ոչինչ չի առաջարկվում, բացի սալյուտից։ Իսկ Նոր տարվա օրերին, չնայած Լենինի հրապարակում դրվում է մի հսկա տոնածառ, բայց շուրջը և ամբողջ հրապարակում ինքնագործունեության, թատերական ելույթների, սպորտմրցումների, ժողովրդական խաղերի, պարերի, երաժշտության և այդ կարգի այլ զվարճալիքների բացարձակապես և ոչ մեկ միջոցառում չի կազմակերպվում։ Նույնը կարելի է ասել նաև մյուս տոն օրերի մասին։

Մեզ թվում է, որ սովետական տոները և նշանավոր օրերը նշելու այսպիսի մեթոդները և ձևերը եթե 20—30-ական թվականներին դեռևս կարելի էր համարել բավարար, ապա այժմ դրանք բավարար չեն։ Դրա հետևանքով էլ զարմանալի չէ, որ շատ պաշտոնական տոների մասին աշխատավոր լայն մասսաները քիչ բան գիտեն և վատատեղյակ են, իսկ այդ տոներից շատերը անցնում են աննկատ։ Պաշտոնական տոների և նշանավոր օրերի մասին բացի վերն ասածներից պետք է ավելացնել նաև այն, որ դրանց մեծ մասը զուգադիպում է լի օրերին, որն իր հերթին նույնպես սահմանափակում է դրանք ավելի հետաքրքրական անցկացնելու հնարավորությունները։

1964 թվականին երկրի մասշտաբով (ինչպես և ռեսպուբլիկայում) պաշտոնապես նշվել են 34 տոն օր, որոնցից 20-ը լի օրերին. նախ և առաջ պաշտոնական տոների և նշանավոր օրերի այդպիսի առատությունը բավարար կերպով չի պատճառաբանված։ Երևի ավելի ճիշտ կլիներ, եթե դրանք լինեին ավելի քիչ, բայց նշանակալից։ Առաջին, դրանց Թվում կան իրար կրկնող շատ տոներ (օրինակ՝ 3 տոն նվիրված Աֆրիկային, 4 տոն նվիրված ուսանողներին, երիտասարդությանը և ֆիզկուլտուրնիկներին, 6 տոն—ՍՍՌՄ զինված ուժերի առանձին տեսակներին և այլն)։ Երկրորդ, դրանց թվում կան

այնպիսի տոներ, որոնք հիմա արդեն չունեն իրենց սկզբնական նշանակությունը (Սահմանապահի օրը, Հրետանավորների օրը, Տանկիստների օրը և այլն)։ Երրորդ, ժողովրդական տնտեսության որոշակի ճյուղերին կամ թե աշխատավորների որոշակի կատեգորիաներին նվիրված հատուկ նշանակություն ունեցող տոներ, որոնք ներկայումս արդեն չեն համապատասխանում ժամանակակից կյանքի պահանջներին։ Մյուս կողմից, 34 տոներից, ինչպես ցույց է տալիս պրակտիկան, փաստորեն միմիայն 4-ն են, որ երկրում նշվել են այնպես թե այնպես լայնորեն, մինչդեռ այնպիսի կարևոր տոներ, ինչպիսիք են՝ Մարքսի, Էնգելսի, Լենինի ծննդյան օրերը, Սահմանադրության օրը, Տիեզերագնացի օրը (իսկ նախորդ տարիներին նաև Հաղթանակի օրը) նշվել են անհանդուրժելիորեն համեստ։ Պետք է նշել ևս մեկ փաստ։ Համամիութենական տոների և նշանավոր օրերի թվում մենք չենք տեսնում միութենական ռեսպուբլիկաներին վերաբերող և ոչ մի տոն, որը համարվի համամիութենական տոն ամբողջ ՍՍՌՄ-ի համար և տոնվի ամբողջ երկրով մեկ։ Այսպիսով, բոլոր վերը նշվածներից հետևում է, որ աշխատավորների ներկայումս գոյություն ունեցող ապրելակերպում դեռևս կան մի շարք թերի կողմեր, որոնք կարիք ունեն հասարակության կողմից կազմակերպված հիմունքներով շտկելու և բարելավելու։

Մեզ թվում է, որ եկել է ժամանակը հիմնովին վերակառուցելու և բարելավելու պաշտոնական տոների և նշանավոր օրերի սիստեմը։ Մասնավորապես խիստ անհրաժեշտ է վերանայել դրանք ինչպես քանակի, նույնպես և իրենց նշանակության տեսանկյունից։ Անհրաժեշտ է նրանց թիվը կրճատել ի հաշիվ կրկնվողների և հնացածների։ Տոները և նշանավոր օրերը սահմանելու գլխավոր չափանիշը անհրաժեշտ է ընդունել ոչ թե ժողովրդական տնտեսության որոշակի ճյուղերի կամ թե աշխատավորների որոշակի կատեգորիաների առանձնացումը, այլ տվյալ իրադարձության բացառիկ կարևորությունը մեր երկրի համար։ Ելնելով, հատկապես, այդպիսի չափանիշից, միջազգային պրոլետարիատի մեծ առաջնորդներ Մարքսի, Էնգելսի, Լենինի ծննդյան օրերը, Սահմանադրության օրը, Հաղթանակի օրը, Տիեզերագնացության օրը պետք է դասվեն այնպիսի կարևորագույն տոների թվին, ինչպիսիք են Մայիսի 1-ը և Հոկտեմբերյան ռևոլյուցիայի տարեդարձի օրը։ Դրանց թվին պետք է դասվեն, ըստ իրենց նշանակության, նաև ատոմային էներգիայի հայտնագործչի ծննդյան օրը և կոմունիստական պարտիայի ծննդյան օրը։ Բացի այդ, համամիութենական տոների շարքին պետք է դասվեն և իրենց նշանակությամբ նրանց հավասարեցվեն յուրաքանչյուր միութենական ռեսպուբլիկային վերաբերող մեկ-երկու բացառիկ կարևոր ազգային տոն, ընդ որում այդ տոները յուրաքանչյուր ռեսպուբլիկայից պետք է ընտրվեն մոտավորապես համանման նշանակությամբ (այսպես, օրինակ՝ մեր ռեսպուբլիկայից կարելի էր ընտրել հայ գրերի ստեղծման տարեդարձը)։ Միութենական ռեսպուբլիկաների կյանքից վերցրած ազգային տոները Միութենական տոների շարքին դասելու և դրանք ամբողջ Միության մասշտաբով լայնորեն նշելու փաստը ամբողջ ուժով կշեշտեր յուրաքանչյուր ռեսպուբլիկայի իրավահավասար վիճակը ՍՍՌՄ ժողովուրդների համերաշխ ընտանիքում և դրա հետ մեկտեղ մեր երկրի յուրաքանչյուր ազգի արժանապատվությունը աշխարհի ողջ ժողովրդի աչքում արդարացիորեն կբարձրացներ։

Ներկայումս գոյություն ունեցող սովետական տոները շքերթների, հանդիսավոր նիստերի և հրապարակվող հոդվածների միջոցով նշելու մեթոդը անհրաժեշտ է անպայմանորեն լրացնել նոր լրացուցիչ մեթոդներով և ձևերով։ Դրա համար պետք է բոլոր այն պաշտոնական տոները, որոնք ընկնում են լի օրերին, նոմինալ կերպով օրը հաշվվեն այդ օրերին (քանի որ նրանց սահմանելու օրը կապված է որևէ կոնկրետ իրադարձության հետ), սակայն նրանց նշումը պետք է անպայմանորեն փոխադրել գալիք կիրակի օրը։ Առանց բացառության, բոլոր տոները պետք է վերածվեն իրոք համաժողովրդական, համընդհանուր և համապարփակ տոների։ Այս նպատակով, բոլոր այդ տոն օրերին քաղաքների արտաքին տեսքը պետք է համապատասխան տոնական զարդարանք ունենա, բոլոր հրապարակներում, պուրակներում, զբոսավայրերում, հանգստի պարկերում, ստադիոններում տվյալ կիրակի օրվա ընթացքում, առանց որևէ ընդմիջման, պետք է տեղի ունենան իսկական մասսայական զբոսանքներ, նվագեն փողային նվագախմբերը, էստրադային անսամբլները, ելույթ ունենան գեղարվեստական ինքնագործունեության խմբերը, դերասանները, նկարիչները, գրողները, կոմպոզիտորները, տեղի ունենան սպորտմրցումներ, սպորտխաղեր, շախմատային, շաշկու չեմպիոնատներ, ակրոբատիկական և կրկեսային ատրակցիոններ, կազմակերպվեն իրոք մասսայական պարեր, կառնավալային և ջահերով շքերթներ, մասսավիկների, կուլտուրնիկների, ծաղրածուների, փահլևանների հետաքրքրաշարժ հնարամտություններ, գրադարանների և թանգարանների ավտոկրպակների սպասարկություն, ինքնաթիռներով քաղաքի վրա փոքրիկ ձրի զբոսանքներ և ամենաբազմազան այլ զվարճանքներ ու հետաքրքրաշարժ զբաղմունքներ։ Միմիայն այդպիսի մեթոդներով սովետական տոների նշումը կգրավի աշխատավորների սրտերը և կազատի նրանց արևմտյան մոդայի, անիմաստ գինարբուքների և այլ կարգի այլանդակ երևույթների ազդեցությունից։

Պաշտոնական տոները և նշանավոր օրերը այդ մեթոդներով նշելը միաժամանակ արմատապես կնպաստի գիտական աթեիզմի գաղափարական արմատավորմանը։

Այստեղ նույնպես աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը պետք է կրի, առաջին հերթին, առարկայական բնույթ։ Մասնավորապես մեզ թվում է, որ այդ գործը անհրաժեշտ է սկսել այն բանից, որ պետք է ամենամոտ ժամանակներում հրավիրել համառեսպուբլիկական, իսկ հետագայում գուցե և համամիութենական կոնֆերանս՝ նվիրված կենցաղը կոմունիստական հիմունքներով վերակառուցելու հարցերին, նման այն կոնֆերանսներին, որոնք հրավիրվում էին 1928—30-ական թվականներին՝ նվիրված կենցաղը սոցիալիստական հիմունքներով վերակառուցելու խնդիրներին։ Այդ կոնֆերանսներում պետք է մանրազնին ուսումնասիրվեն այն դրական արդյունքները, որոնք իրենց կենցաղի ասպարեզում արդեն նվաճել են կոմունիստական աշխատանքի բրիգադաների անդամները, լայնորեն բացահայտվեն եղած թերությունները և կոնկրետ միջոցառումներ նախատեսվեն՝ կոմունիստական ապրելակերպը կազմակերպելու և նրա հետագա զարգացումն ապահովելու համար։

Ի կատարումն այդ կոնֆերանսների որոշումների, ամբողջ երկրով մեկ (ինչպես և մեր ռեսպուբլիկայում), պետք է աշխատավորների միջև լայն մրցություն ծավալել հանուն նոր կենցաղի և կենցաղի բարձր կուլտուրայի, հանուն ընտանիքի անդամների միջև աշխատանքի ճիշտ բաժանման, կենցաղում կնոջ իրավահավասարության պահպանման, ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործման և այլն։ Այդ մրցումները խրախուսելու և կոմունիզմի սաղմերը

կենցաղի մեջ լայնորեն ներդնելու նպատակով լավ կլիներ, որպեսզի այդ մրցության բարձր արդյունքների համար սահմանվեին ռեսպուբլիկական և համամիութենական կոնկուրսներ ու դրանց համապատասխան մրցանակներ։ Բացի այդ, այս ասպարեզում ձեռք բերված նվաճումները և առաջավոր փորձը անհրաժեշտ է լայնորեն պրոպագանդել։

Աշխատավորների ապրելակերպում կազմակերպված հիմունքներով բարելավումներ և կատարելագործումներ ներդնելու ուղղությամբ մեծ անելիքներ ունեն պարտիական, կոմերիտական և պրոֆմիութենական կազմակերպությունները։ Նրանք իրենց ժողովներում պետք է քննարկեն ոչ թե հակահասարակական երևույթների մի քանի նեղ հարցեր (հարբեցողությունը, ընտանիքի քայքայումը, անբարոյականությունը և այլն), այլ ամբողջապես վերցրած կոմունիստական կենցաղի ու կոմունիստական ապրելակերպի հարցերը, այդ ասպարեզում տեղ գտած թերությունները (հնացած սովորույթներին և տրադիցիաներին կառչելը, կապիտալիստական խեղաթյուրված մոդաների և ճաշակների ընդօրինակումը, կրոնական սնոտիապաշտություններին և եկեղեցական ծեսերին զոհ դառնալը և այլն)։

Ահա համառոտակիորեն սոցիալիստական ապրելակերպի կատարելագործման այն մի քանի հարցերը, որոնց վրա կցանկանայինք կանգ առնել։

Աշխատավորների սոցիալիստական ապրելակերպը աստիճանաբար կատարելագործելու համար, անշուշտ, պահանջվում է կազմակերպված կերպով ներդնել ամենաբազմազան կատարելագործումներ և կարգավորումներ, համառ դաստիարակչական աշխատանքի միջոցով ապրելակերպը մաքրել ամեն տեսակի հնացածից, արխայիկից, ատավիզմից, ամեն տեսակի խորթ և անհարիր երևույթներից ու աստիճանաբար կազմավորել իբրև սոցիալիստական, ապա՝ իբրև կոմունիստական ապրելակերպ։

Մ. Ի. Կալինինը նշում էր, որ կենցաղը ամենից դժվար է ենթարկվում փոփոխությունների. անցել է հազարամյակ, լիովին փոխվել է երկիրը, տեղի են ունեցել հսկայական սոցիալական տեղաշարժեր, իսկ կենցաղը դեռևս ետ է մնում. և նա, ով կարծում է, որ այստեղ կարելի է միանգամից ամեն ինչ փոխել՝ չարաչար սխալվում է։ Այստեղ ոչինչ հնարավոր չի կատարել մի շնչով և վարչարարությամբ։ Սակայն, մյուս կողմից էլ չի կարելի այն թողնել ինքնահոսի և բախտի քմահաճույքին։

Այստեղ պահանջվում է զգոն վերաբերմունք և մեծ վարպետություն։

Հ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ՀԱՆՐԱՅԻՆԸ ԵՎ ԱՆՁՆԱԿԱՆԸ

Մեր տնտեսագիտական գրականության մեջ անձնական սեփականության պրոբլեմը բավարար չափով չի ուսումնասիրված։ Հեղինակների մոտ սովորաբար այն շոշափվում է լոկ հասարակական սեփականության հարցերը քննելիս։ Վերջին ժամանակներս միայն առանձին հոդվածներում, ինչպես և մենագրական ուսումնասիրություններում վերլուծվում են անձնական սեփականության հարաբերությունները սոցիալիզմի պայմաններում, հատկապես կապված կոմունիստական շինարարության արդի էտապում տնտեսական զարգացման օրինաչափությունների հետ։ Այս պրոբլեմի շուրջ հայ մամուլում, թերևս առաջին գիտական խոսքն ասաց տնտեսական գիտությունների թեկնածու Ս. Միքայելյանը, հանդես գալով «Լենինյան ուղիով» ամսագրի 1965 թ. № 3-ում «Կոմունիզմը և անձնական սեփականությունը» հոդվածով, որտեղ հեղինակը ոչ միայն տեսականորեն քննում է կոմունիստական հասարակարգում անձնական սեփականության գոյության հարցը, այլև կոնկրետ վերլուծության է ենթարկում սոցիալիզմի ժամանակ նրա սոցիալ-տնտեսական էությունը, ցույց տալիս անձնական սեփականության տեղը արտադրահարաբերությունների սիստեմում, բնութագրում անձնական յուրացման բնույթը մինչսոցիալիստական տնտեսակարգերում։ Հարցերի հակիրճ և հստակ պարզաբանմամբ հոդվածագիրը հնարավորություն է տալիս ընթերցող լայն շրջաններին ամբողջական պատկերացում կազմելու անձնական սեփականության հարցերի մասին։ Ըստ որում խուսափելով պոլիտիկ բացատրություններից, Ս. Միքայելյանը որոշ հարցեր ներկայացնում է ուրույն ըմբռնումով, որը, անշուշտ, բարձրացնում է հոդվածի գիտական արժեքը։

Այնուամենայնիվ մեզ թվում է, որ հեղինակի կողմից առանձին հարցերի մեկնաբանումը անվիճելի չէ, կամ համենայն դեպս մտորման տեղիք է տալիս։ Այսպես, խոսելով սոցիալիստական անձնական սեփականության իրային կազմի մասին, ընկ. Միքայելյանը վկայակոչում է միայն սպառման առարկաները։ Ինչ խոսք, որ անձնական սեփականությունը, ընդհանրապես որպես անձնական սպառումը պայմանավորող տնտեսական ձև, իր ամենահիմնական մասով սպառման առարկաների անձնական յուրացում է ենթադրում։ Սակայն արտադրության միջոցների սոցիալիստական հանրայնացման արդի մակարդակի պայմաններում, հասարակության անդամների անձնական սեփականությունը, հատկապես կոլտնտեսային սեկտորում, տարածվում է ոչ միայն սպառման առարկաների, այլև արտադրության որոշ միջոցների վրա։ Ինքը՝ հեղինակը, սոցիալիստական սեփականության երկու ձևերի առկայության պայմաններում միանգամայն ճիշտ կերպով տարբերում է նրանցից ածանցված անձնական սեփականության երկու ձև՝ քաղաքացիների անձնական սեփականություն (որն ավելի ճիշտ պետք է անվանվեր պետական (համաժողովրդական) տնտեսության աշխատավորների անձնական սեփականություն, քանի որ «քաղաքացիներ» տերմինի տակ հասկացվում են հասարակության բոլոր անդամները) և կոլտնտեսային ընտանիքի անձնական սեփականություն։

Իսկ ո՞րն է նրանց տարբերիչ առանձնահատկությունը. հոդվածում չգիտես ինչու շրջանցվում է այս հարցը: Որպես արտադրության միջոցների հանրային սեփականությունից ածանցված տնտեսական հարաբերություն, սոցիալիստական անձնական սեփականությունն իր ձևերով անմիջականորեն արտահայտում է սեփականության երկու ձևերի առանձնահատկությունները: Հայտնի է, որ պետական (համաժողովրդական) սեփականության սեկտորում հանրայնացված են արտադրության գրեթե բոլոր միջոցները[1] և սոցիալիստական արտադրահարաբերությունները այստեղ ունեն բարձր զարգացում:

Դրան համապատասխան, պետական (համաժողովրդական) տնտեսության աշխատավորների անձնական սեփականությունը տարածվում է անձնական սպառման առարկաների վրա միայն, որով ավելի ռեալ և անմիջական է արտահայտվում անձնական յուրացման նպատակը: Որպես այսպիսին այն սոցիալիստական անձնական սեփականության ավելի հասուն և կայուն ձևն է: Փոքր-ինչ այլ է բանը կոոպերատիվ կոլտնտեսային սեփականության սեկտորում. այստեղ հանրայնացումն ընդգրկում է արտադրության հիմնական միջոցները միայն, իսկ որոշ արտադրամիջոցներ մնում են կոլեկտիվի անդամների անձնական սեփականության տակ, որոնց վրա էլ խարսխվում են նրանց անձնական և օժանդակ տնտեսությունները: Այնպես որ, եթե սոցիալիստական անձնական սեփականության առաջին ձևը բնորոշվում է զուտ սպառման առարկաների յուրացմամբ, ապա երկրորդը ոչ միայն սպառման, այլև արտադրության որոշ միջոցների յուրացում է ենթադրում: Իհարկե, անձնական սեփականության տակ գտնվող արտադրության միջոցները լայն արտադրական նշանակություն չունեն: Օգտագործվելով անձնական օժանդակ տնտեսություններում, դրանք ծառայում են զուտ անձնական պահանջմունքների բավարարման նպատակին և ինչպես անձնական սեփականության մյուս օբյեկտները, ունեն սպառողական բնույթ:

Անդրադառնալով մինչսոցիալիստական հասարակարգերում անձնական սեփականության տնտեսական կատեգորիայի գոյության հարցին, ընկ. Ս. Միքայելյանը միանգամայն իրավացիորեն քննադատում է այն հեղինակներին, որոնք անձնական սեփականությունն ընդունում են միայն սոցիալիստական արտադրահարաբերությունների պայմաններում: Նա գտնում է, որ անձնական սեփականությունը գոյություն է ունեցել սոցիալիզմի նախորդած գրեթե բոլոր հասարակարգերում, ըստ որում արտադրության ամեն մի եղանակի պայմաններում արտահայտելով տիրապետող արտադրահարաբերությունների բնույթը: Այս հարցում բաժանելով հոդվածագրի տեսակետը, միաժամանակ դժվարանում ենք միանալ նրա այն համոզմանը, ըստ որի մինչսոցիալիստական հասարակարգերում անձնական սեփականություն է վերագրվում միայն աշխատավոր դասակարգերին, քանի որ ըստ հեղինակի, անձնական սեփականության բնորոշ «ընդհանուր հատկանիշը հանրօգուտ աշխատանքի միջոցով ձեռք բերված անձնական սպառման և հարմարության առարկաների յուրացումն է անհատի վերարտադրության համար» (տե՛ս «Լենինյան ուղիով», 1965 թ., № 3, էջ 93): Նախ, իրավացի՞ է արդյոք հեղինակը, անձնական սեփականություն վերագրելով մինչսոցիալիստական հասարակարգերի աշխատավոր բոլոր դասակարգերին: Թվում է թե, ընդհանրապես սեփականատիրական հարաբերություններից պետք է դուրս թողնել ստրուկների դասակարգը, որքանով որ այդպիսի հարաբերությունների մեջ կարող է ընդգրկվել միայն թեկուզ փոքր ի շատե ազատ անհատը: Իսկ ստրուկը, ինքը սեփականության օբյեկտ լինելով, չի կարող իր հերթին որևէ սեփականություն ունենալ: Նրա անձնական սպառումը կազմակերպվում է տիրոջ սեփականությունը կազմող գոյամիջոցներով և ունի զուտ արտադրական անհրաժեշտություն:

Սակայն այս չէ բանը:

---

1 Չնչին բացառություն են կազմում պետական գյուղատնտեսական ձեռնարկությունների բանվոր-ծառայողներին պատկանող որոշ արտադրամիջոցներ:



Հանրօգուտ աշխատանքի միջոցով միայն սպառման առարկաների յուրացումն անձնական պահանջմունքների բավարարման նպատակով ավելի ճիշտ կլիներ դիտել որպես միայն սոցիալիստական անձնական սեփականության առանձնահատկություն, քան անձնական սեփականության ընդհանուր հատկանիշ, քանի որ արտադրության միջոցների նկատմամբ հասարակության բոլոր անդամների հավասար վերաբերմունքի պայմաններում միայն լոկ աշխատանքը կարող է լինել յուրաքանչյուրի անձնական յուրացման պայմանը: Այլ են յուրացման հարաբերությունները շահագործողական հասարակարգերում: Այստեղ նյութական բարիքների յուրացումն իր հիմքում ունի ոչ միայն անձնական աշխատանքը, այլև արտադրության միջոցների մասնավոր սեփականության մենաշնորհը: Սակայն ինչպիսին էլ որ լինեն յուրացման բնույթն ու ձևերը, որոշակի կենսամիջոցների օգտագործումն անձնական սպառման նպատակով անհրաժեշտ է հասարակության բոլոր անդամներին, անկախ նրանց դասակարգային պատկանելությունից: Իսկ անձնական սեփականությունը, դա անձնական սպառման ձև է և նրա ընդհանուր հատկանիշը բնորոշելիս պետք է շեշտել նյութական բարիքների՝ սպառման նպատակով օգտագործումը, մի կողմ թողնելով նրանց յուրացման եղանակը և բնույթը: Եվ եթե անձնական սեփականությունն, իբրև ընդհանուր տնտեսական կատեգորիա, դիտենք որպես անձնական սպառման նպատակով կենսամիջոցների յուրացման հարաբերություն մարդկանց միջև, ապա դժվար չէ նկատել, որ այդպիսի հարաբերությունների մեջ ներգրավվում են ոչ միայն աշխատավոր, այլև շահագործող դասակարգերը: Իհարկե, աշխատավոր և շահագործող դասակարգերի անձնական սեփականությունն իրենց բնույթով չի կարելի նույնատիպ համարել: Նրանք արմատապես տարբերվում են իրենց ծագման աղբյուրներով, իրային կազմով, ինչպես և արտահայտած սոցիալ-տնտեսական հարաբերությամբ: Եթե աշխատավորների անձնական սեփականությունն իրենց աշխատանքի հիման վրա գոյամիջոցների յուրացումն է անձնական սպառման նպատակով, որը և հանդիսանում է աշխատուժի վերարտադրության հիմնական պայման, ապա շահագործող դասակարգերի անձնական սեփականությունը ուրիշի աշխատանքի հաշվին սպառման և, հատկապես, պերճանքի առարկաների յուրացումն է պարազիտային սպառման նպատակով:

***

Կպահպանվի՞ արդյոք անձնական սեփականությունը կոմունիզմի պայմաններում: Այս հարցին ընկ. Ս. Միքայելյանը դրական պատասխան է տալիս, չհամաձայնվելով այն տնտեսագետների հետ, որոնք ապրանքադրամական հարաբերությունների բացակայության և սպառման հասարակական ֆոնդերից ըստ պահանջմունքների բաշխման պայմաններում, կանխատեսում են անձնական սեփականության մահացում: Նա հատկապես հանդես է գալիս անձնական սեփականության այնպիսի հատկանիշների պահպանման օգտին ապագա հասարակարգում, ինչպիսիք են ժառանգությունը և նվիրատվությունը, կապելով դրանք մարդկային մտերմական հարաբերությունների և բարեկամական զգացմունքների հետ: Որոշակիորեն պնդելով, որ կոմունիզմի պայմաններում անձնական սեփականությունը կմնա, Ս. Միքայելյանը գլխավորապես ելնում է այն բանից, որ մարդկային որոշակի պահանջմունքներ իրենց բնույթով այնպիսին են, որ կարող են բավարարվել ոչ այլ կերպ, քան իրերի անհատական օգտագործմամբ, որը և իբր անխուսափելի է դարձնում նրանց նկատմամբ անձնական սեփականությունը:

Նախ թվում է, թե դեռ վաղ է կանխորոշել լիակատար կոմունիզմի պայմաններում անձնական սեփականության ճակատագիրը: Առայժմ չկան սոցիալ-տնտեսական այն կոնկրետ պայմանները, որոնք հնարավորություն տային որոշակի խոսք ասել այս հարցի վերաբերյալ: Այստեղ կարելի է կողմնորոշվել ելնելով միայն սոցիալիստական արտադրահարաբերությունների և անձ-

նական սեփականության զարգացման հիմնական օրինաչափություններից և տենդենցներից:

Իհարկե, իրավացի է Ս. Միքայելյանը, երբ որոշ տնտեսագետների կողմից ապրանքադրամական հարաբերությունների և դրանց հետ կապված վաճառքի ու փոխանակության անհետացման վկայակոչումը չի ընդունում որպես կոմունիստական հասարակարգում անձնական սեփականության ժխտման բավարար հիմք: Եվ իրոք, գուցե ավելի ճիշտ կլիներ ապրանքա-դրամական հարաբերությունների անհետացումն ինչ-որ չափով պայմանավորել անձնական սեփականության մահացմամբ և ոչ թե ընդհակառակը: Բայց և չի կարելի ժառանգության և նվիրատվությունների պահպանմամբ բացատրել անձնական սեփականության գոյությունը զարգացած կոմունիզմի պայմաններում, որքանով որ դրանք անձնական սեփականության բնորոշ, հիմնական հատկանիշները չեն:

Ինչ վերաբերում է կոմունիստական հասարակարգում անձնական սեփականության անհրաժեշտության պատճառաբանմանն, արդեն անհատական սպառման գոյությամբ, ապա պետք է ասել, որ սա ևս կայուն հիմք չէ: Իհարկե, մարդկային պահանջմունքների բավարարման ձևերը ուղղակի կախված են այդ պահանջմունքների, ինչպես և սպառման առարկաների բնույթից: Որոշ պահանջմունքներ հաստատուն են (օրինակ. սննդի, հագուստի նկատմամբ), մյուսները էպիզոդիկ բնույթ ունեն (տրանսպորտից օգտվելը, կինո, թատրոն հաճախելը և այլն): Կամ ասենք որոշ բարիքներ կարող են համատեղ օգտագործվել (կուլտուրական օջախներ, բուժ հիմնարկներ և այլն), մյուսները միայն անհատաբար (հագուստ, կոշիկ և այլն), իսկ առանձին իրերի օգտագործումը հնարավոր է միաժամանակ և համատեղ, և անհատական (օրինակ, թեթև տրանսպորտ): Սակայն չի կարելի անձնական սպառման կազմակերպման ձևերը շփոթել նրա տնտեսական ձևի՝ անձնական սեփականության հետ: Բոլորովին էլ պարտադիր չէ, որ անհատական սպառումը դրսևորվի անձնական սեփականության ձևով: Արդեն սոցիալիզմի պայմաններում զգալի տարածում ունի նեղ անձնական պահանջմունքների բավարարման կազմակերպումը սպառման հասարակական ֆոնդերի միջոցով (մանկական հիմնարկներ, գիշերօթիկ դպրոցներ, ձեռնարկություններում հատուկ արտադրական հագուստների օգտագործում և այլն): Այնպես, որ անհրաժեշտ է ոչ թե պահանջմունքների և իրերի բնույթով որոշել անձնական սեփականությունն, այլ այդ իրերի յուրացման կապակցությամբ մարդկանց միջև ծագած հարաբերությունների բնույթով: Մարքսիզմը սեփականությունը դիտում է ամենից առաջ որպես արտադրական-տնտեսական հարաբերություն և անձնական յուրացումը սեփականություն է բնորոշվում հենց այնքանով, որքանով այն մարդկանց միջև օբյեկտիվորեն գոյություն ունեցող տնտեսական հարաբերություն է: Սեփականության այս հիմնական որակական հատկանիշը հիմք ընդունելով, կարծում ենք մեթոդական տեսակետից ավելի ճիշտ կլիներ, եթե հարցը դրվեր այսպես. կոմունիզմի պայմաններում անձնական յուրացումը կարո՞ղ է արդյոք արտահայտել արտադրական հարաբերություններ և մնալ որպես անձնական սեփականություն, թե ոչ:

Որպես տնտեսական կատեգորիա սոցիալիստական անձնական սեփականությունը կարևոր տեղ ունի արտադրահարաբերությունների սիստեմում: Արտադրողական ուժերի զարգացման արդի մակարդակի պայմաններում, երբ հասարակության անդամների սպառման չափը պայմանավորված է ոչ թե նրանց պահանջմունքներով, այլ սոցիալիստական տնտեսության մեջ ներդրած աշխատանքի քանակով և որակով, անձնական սեփականության հարաբերությունը ծագում է հենց արտադրության պրոցեսում, որքանով որ այստեղ արդեն որոշվում է յուրաքանչյուրի բաժինը, որն աճելով հասարակական արտադրության զարգացման զուգընթաց, վերջինիս հետագա վերելքի գործում աշխատավորներին շահագրգռելու կարևոր նյութական խթան է հանդիսանում: Այս իմաստով անձնական սեփականությունը սոցիալիզմի ժամանակ արտահայտում է աշխատուժի և արտադրության միջոցների միացման բնույթը: Այն ար-



դի պայմաններում անձնականության շահագրգռման հիմնական լծակն է և իր չափերով ուղղակի արտահայտում է հասարակության յուրաքանչյուր անդամի աշխատանքային ներդրումը սոցիալիստական տնտեսության մեջ: Այնպես որ անձնական սեփականությունը պետք է դիտել ոչ թե որպես զուտ որոշակի պահանջմունքների բավարարման ձև, այլ որպես անձնական սպառումը կարգավորող տնտեսական ձև:

Լիակատար կոմունիզմի կառուցմամբ, երբ աշխատանքը գոյության միջոցից կվերածվի առաջին կենսական պահանջմունքի, երբ արտադրողական ուժերի զարգացման մակարդակը հնարավորություն կտա ստեղծելու նյութական և հոգևոր բարիքների լիառատություն և անցնելու «Յուրաքանչյուրից ըստ ընդունակությունների— յուրաքանչյուրին ըստ պահանջմունքների» կոմունիստական սկզբունքին, կփոխվի նաև անձնական յուրացման բնույթը: Հաճույք դարձած աշխատանքը հազիվ թե կարիք ունենա անձնական-նյութական խթանման, իսկ անձնական սպառման չափը կորոշվի ոչ թե անձնական աշխատանքի քանակով և որակով, այլ անհատական պահանջմունքներով և ճաշակով: Կոմունիստական բաշխման տեսակետից նույնիսկ հնարավոր է ենթադրել մեկի աշխատանքի յուրացում մյուսի կողմից: Սակայն այդ որևէ անտագոնիզմ չի կարող ծնել կենսական անհրաժեշտությամբ աշխատող կոլեկտիվի մեջ: Այդպիսի պայմաններում, մեր կարծիքով, սպառման առարկաների անձնական յուրացումը ինքնին տնտեսական հարաբերություն չի արտահայտի: Այստեղ արտադրական-տնտեսական հարաբերությունները մարդկանց միջև դրսևորվում են սպառման առարկաների, ինչպես և ամբողջ արդյունքի, հասարակական յուրացման մեջ, պայմանավորելով արտադրության զարգացման նկատմամբ կոլեկտիվ նյութական շահագրգռվածությունը: Միասնական կոմունիստական սեփականության պայմաններում մարդկանց պահանջմունքների բավարարումը, ինչպես ասված է ՍՄԿԿ ծրագրում, կիրականացվի սպառման հասարակական ֆոնդերի միջոցով. ըստ որում, կախված պահանջմունքների և հենց սպառման առարկաների բնույթից հասարակության անդամները այդ ֆոնդերից կարող են օգտվել և համատեղ օգտագործման ձևով (դպրոցներ, կուլտուրական հիմնարկներ, տրանսպորտ, հասարակական սնունդ և այլն), և անհատական սպառման ձևով (հագուստ, կոշիկ, երաժշտական, սպորտային գործիքներ և այլն): Վերջին դեպքում առկա է իրերի անձնական յուրացումը, սակայն արդեն ոչ որպես անձնական սեփականություն, որքանով որ, ինչպես ասացինք այն, առանձին վերցրած, տնտեսական հարաբերություն չի բովանդակում: Այլ խոսքով, անձնական յուրացումը այստեղ ոչ թե անձնական սպառման տնտեսական, այլ նրա բնական ձևն է:

Ապրանքա-դրամական հարաբերությունների բացակայության պայմաններում արդյունքի շարժման սխեման ավելի քան պարզ է՝ արտադրություն-սպառման հասարակական ֆոնդ-սպառող: Ի դեպ, դժվար չէ նկատել, որ սպառման հասարակական ֆոնդերի միջոցով բաշխումը լիովին արտահայտում է ըստ պահանջմունքների բաշխման կոմունիստական սկզբունքը: Սոցիալիզմի պայմաններում, երբ անձնական սպառման հիմնական ձևն անձնական սեփականությունն է, երբեմն ցածր անձնական եկամուտ ունեցողների մոտ այն ներառում է անհատական սպառման անհրաժեշտ ոչ բոլոր իրերը: Մի այլ դեպքում անձնական սեփականության մեջ կարող են գտնվել ավելորդ առարկաներ, որոնք, սակայն, հասարակությունը չի կարող վերցնել իր տրամադրության տակ և օգտագործել ավելի նպատակահարմար: Սպառման հասարակական ֆոնդերի ձևով բաշխումը ենթադրում է մի կողմից պահանջմունքների լրիվ բավարարում, մյուս կողմից բացառում է ավելորդ իրերի կուտակումը հասարակության անդամների մոտ, որը և հնարավորություն է տալիս ըստ պահանջմունքների բաշխումը իրականացնել բարիքների ավելի ռացիոնալ օգտագործմամբ:

Սակայն անձնական սեփականության անհետացումը բոլորովին չի նշանակում սպառման առարկաների յուրացման երաշխիքի վերացում: Կոմունիզմը ոչ միայն չի անտեսում, այլ ընդհակառակը, ենթադրում է այն անհատական

պահանջմունքների ու ճաշակի զարգացումը, որը, անշուշտ, կդրսևորվի յուրաքանչյուրի կողմից յուրացվող սպառման առարկաների բազմազանության մեջ։ Պարտիայի ծրագրում ասված է. «Անձնական սպառման առարկաները կգտնվեն հասարակության յուրաքանչյուր անդամի լիակատար տնօրինության ու տրամադրության տակ» (ՍՄԿՊ ծրագիրը, Երևան, 1961 թ. էջ 76)։ Ի դեպ ասենք, որ կոմունիստական տնօրինումն ու տիրապետումը չի կարելի արդի իմաստով հասկանալ։ Այս կատեգորիաները ևս կփոխեն իրենց բնույթը։ Հիշենք, որ զարգացած կոմունիզմի պայմաններում բացառված կլինեն իրերի առք ու վաճառքի անհրաժեշտությունն ու հնարավորությունը և տնօրինումն արդեն չի պարունակի օտարման տարր։ Կամ ասենք, ինչպե՞ս կարող են իրերի նկատմամբ տնօրինումն ու տիրապետումն անձեռնմխելիության երանգ արտահայտել, երբ ինքնին վերանում է մեկի հավակնությունը մյուսի կողմից օգտագործվող իրերի նկատմամբ։ Իրավացի է Մ. Կոլգանովը, երբ նշում է, որ կոմունիստական հասարակարգում սպառման ֆոնդերից յուրացվող իրերի նկատմամբ անձնական տնօրինումը և տիրապետումը պետք է դիտել փաստորեն որպես նրանց անսահմանափակ օգտագործում։ Եվ իրոք, նյութական և հոգևոր բարիքների լիառատության դեպքում, երբ կուտակման ոչ մի անհրաժեշտություն չկա, օգտագործումը կարող է լինել անձնական յուրացման պայման։

Սակայն, ինչպես նշեցինք վերը, սոցիալիզմի պայմաններում, հատկապես կոլտնտեսային սեկտորում, աշխատավորների անձնական սեփականությունը տարածվում է ոչ միայն սպառման առարկաների, այլև արտադրության որոշ միջոցների վրա, որը հնարավորություն է տալիս նրանց անձնական օժանդակ տնտեսություններ վարել։ Առայժմ, իհարկե, այդ տնտեսությունները որոշակի դեր ունեն աշխատավորների անձնական պահանջմունքների բավարարման գործում և նրանց գոյությունը տնտեսական անհրաժեշտություն է։ Պատահական չէ, որ պարտիայի և կառավարության կողմից վերջերս ձեռնարկվեցին կոնկրետ միջոցառումներ, անձնական օժանդակ տնտեսությունների բացառումն արհեստականորեն արագացնելու նախկին քաղաքական սխալները շտկելու համար։ Սակայն, դժվար չէ նկատել, որ արտադրողական ուժերի զարգացման որոշակի մակարդակի պայմաններում, երբ հնարավոր կլինի աշխատավորների պահանջմունքները լիովին բավարարել հասարակական տնտեսության հաշվին, ինքնին ավելորդ կդառնան օժանդակ տնտեսությունները, հետևաբար և արտադրության միջոցների հանրայնացումը կընդգրկի արտադրության ոչ թե հիմնական, այլ բոլոր միջոցները։ Ըստ որում սոցիալ-տնտեսական այս փոփոխությունները ավելի վաղ տեղի կունենան, քան կոմունիզմի լիակատար հաղթանակը։

Ի՞նչ բախտ կունենան ժառանգությունները և նվիրատվությունները։ Սրանք, իհարկե, անձնական սեփականության կարևոր հատկանիշներ չեն և ավելի շուտ դրսևորում են մարդկանց սովորույթային, մտերմական հարաբերությունները, քան տնտեսական։ Ուստի նրանց գոյության հարցը ավելի ճիշտ կլիներ թողնել պրակտիկային, քան կապել տնտեսական օրինաչափությունների հետ։ Մի բան միայն պարզ է, որ եթե սոցիալիզմի ժամանակ, հատկապես ժառանգությունը նյութական նշանակություն ունի, ապա կոմունիստական հասարակարգում թե ժառանգությունը, թե նվիրատվությունները զուրկ կլինեն տնտեսական իմաստից և կարող են արտահայտել մարդկանց զուտ ընկերական-բարեկամական զգացմունքները, որոնք, իհարկե, սեփականատիրական հարաբերություններ դիտվել չեն կարող։

Այսպիսով, հասարակության զարգացման որոշակի էտապում՝ կոմունիստական հասարակարգի կառուցմամբ, կանհետանան անձնական սեփականության գոյության սոցիալ-տնտեսական պայմանները։ Անձնական սեփականությունը որպես տնտեսական կատեգորիա կսպառի իրեն և կմահանա։

Մ. ՍԱՐԳՍՅԱՆ

# ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ՎԵՏԵՐԱՆՆԵՐԸ

## ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ ԲՈՑԵՐԻ ՄԻՋՈՎ



Ուկրաինան թեժ կրակի վրա դրված եռացող ջրով լի կաթսայի էր նման…

Ռուսաստանում հաղթանակել էր Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան, իսկ Ուկրաինայի աշխատավորները՝ բոլշևիկների ղեկավարությամբ, պայքարի էին ելել իրենց երկրում սովետական իշխանությունը վերականգնելու համար։ Հարկավոր էր վերջնականապես ջախջախել Կենտրոնական ռադայի հակաժողովրդական կառավարությունը, որը սեպարատ հաշտություն կնքելով կայզերական Գերմանիայի հետ, Ուկրաինան անջատել էր Սովետական Ռուսաստանից և ձգտում էր օտարերկրյա ուժերի օգնությամբ ճնշել ռևոլյուցիան։

Ամենուր վխտում էին սպիտակգվարդիական բանդաները, մոլեգնում էր տեռորը։ Ժողովրդի համբերության բաժակը լցվել էր։ Ոտքի ելել, համառ մարտեր էին մղում ապստամբ բանվորների և գյուղացիների խմբերը, պարտիզանական ջոկատները։

Պարտիզանական այդպիսի մի ջոկատի գլուխ էր կանգնած Արամ Մինասյանը։ 1918 թվականի օգոստոսյան մի օր երկար ճանապարհ էր կտրել ջոկատը։ Պետք էր հանգիստ տալ մարտիկներին և այնուհետև շարունակել ճանապարհը դեպի Կիև՝ միանալու յուրայիններին։

Մթնշաղ էր, երբ ջոկատը հասավ Բուզովկա գյուղը։ Նախապես հետախուզելով ու համոզվելով, որ բնակավայրում թշնամու ուժեր չկան, իսկ գյուղացիները լավ են տրամադրված բոլշևիկների նկատմամբ, ջոկատը մտավ գյուղ։ Արամը մարտիկներին տեղավորեց գյուղում, իսկ ինքը հանգստացավ գյուղի կոմունիստներից մեկի տանը՝ լուսադեմին ճամփա ընկնելու մտադրությամբ։ Խոր քնից նա արթնացավ աղմուկ-աղաղակից, գոռում-գոչյունից։ Ամեն ինչ պարզ դարձավ։ Դենիկինյան սպա Սոկոլովի բանդիտները ներխուժել էին խրճիթը։

…Տարիներ անց Արամ Մինասյանն

այս միջադեպի մասին իր ինքնակենսագրության մեջ գրել է. «Մեզ բռնեց դենիկինյան սպա Սոկոլովի ջոկատը, մտածում էին մեր դեմ լարել տեղի գյուղացիներին և վերջ տալ մեզ ինքնադատաստանով»:

Արամին իր զինակիցներով բանդիտները դուրս են բերում գյուղից իրենց մտադրությունն իրականացնելու համար: Սակայն նրանց նյութած ոճիրը խափանվում է: Տեղի կոմունիստներն ու համակրողները վրա են հասնում ու մարտի բռնվում սպիտակների հետ: «Մենք,— շարունակում է Արամը,— զինաթափ արեցինք Սոկոլովի բանդայի ջոկատի մի մասը, իսկ ինքը՝ գլխավոր բանդիտ Սոկոլովը, մի քանիսի հետ ճողոպրեց»:

...Ա. Մինասյանը, դեռ վաղ հասակից իրեն նվիրելով բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության ազատագրման պայքարին, անցել է լենինյան տիպի պրոֆեսիոնալ ռևոլյուցիոների դժվարություններով ու տառապանքներով լի, բայց փառապանծ ուղի:

Արամ Սարգսի Մինասյանը ծնվել է 1885 թվականի մարտին, Ախալցխեում, բանվորի ընտանիքում: Նրա հայրը, չկարողանալով հայթայթել ապրուստի միջոցները, ընտանիքով տեղափոխվում է Թիֆլիս և աշխատանքի մտնում երկաթուղային գլխավոր արհեստանոցում:

Ծանր էր բազմանդամ ընտանիքի վիճակը: Դեռահաս Արամին հուզում էին այն հարցերը, թե ինչո՞ւ ինքը, եղբայրը, քույրերը միշտ կիսաքաղց են, միշտ կարկատած հագուստով, ինչո՞ւ հայրը աշխատանքի է գնում համարյա լուսաբացին, վերադառնում մութն ընկնելիս և հազվադեպ է ժպտում վաղաժամ թոշնած դեմքով այդ հոգնաբեկ, սիրելի մարդը:

Այս հարցերի պատասխաններն Արամը կարողացավ գտնել, երբ արդեն Ներսիսյան դպրոցի չորրորդ դասարանի աշակերտ էր: Այստեղ էր, որ նա շփվեց ռևոլյուցիոն հովերով տարված սովորողների հետ: Եվ ահա աշակերտական հուզումներին մասնակցելու համար, որպես անբարեհույս, նա վտարվում է դպրոցից: Սակայն ուսման ծարավը նրան հանգիստ չի տալիս: Աշխատելով պղնձագլանման գործարանում, իսկ հետո՝ տրամվայի պարկում, նա պատրաստվում, էքստեռն քննություններ է հանձնում և ստանում հասունության վկայական:

Բանվորական միջավայրը դառնում է Արամի երկրորդ դպրոցը: Նա կապվում է ընդհատակյա ռևոլյուցիոն բանվորների հետ, կատարում առանձին հանձնարարություններ, ագիտացիոն աշխատանք տանում բանվորների շրջանում: Հետագա ուղին վերջնականապես որոշված էր: Մինասյանը 1904 թվականին մտնում է ՌՍԴԲՊ շարքերը: Ռևոլյուցիոն պրակտիկ գործունեության հետ միասին նա համառորեն հարստացնում է իր տեսական գիտելիքները, ուսումնասիրում մարքսիզմի կլասիկների երկերը: Նրա գաղափարական կոփվածության ու դաստիարակության, մարքսիստական ուսմունքը խորապես տիրապետելու գործում մեծ դեր է խաղում Ստեփան Շահումյանը:

Արամ Մինասյանը Անտոն Բաբլումյանի, Գևորգ Գաբրիելյանի, Սարգիս Տեր-Մինասյանի և ուրիշների հետ երկար ժամանակ ունկնդրել է Ստեփան Շահումյանի դասախոսությունները Թիֆլիսի Լազարևսկի փողոցի վրա գտնվող կոնսպիրատիվ բնակարաններից մեկում: Այդ խմբին մասնակցող ընկերների մասին այն ժամանակ ընկ. Ստեփանն իր կարծիքն ասաց,— գրել է իր հուշերում Ա. Կախոյանը,— Ստ. Շահումյանը... Տեր Մինասյանին, Ա. Մինասյանին և Ան. Բաբլումյանին համարեց առաջադեմ աշակերտներ, որոնք ցույց պիտի տային իրենց ընդունակությունները բանվորական շարժման



հանդեպ, և որոնք, իսկապես արդարացրին իրենց վրա դրած մեր անմոռանալի Ստեփանի հույսերը:

Զգալի էր նաև Սուրեն Սպանդարյանի ու Սարգիս Կասյանի ազդեցությունը երիտասարդ Արամի աճման գործում, որոնց նա գիտեր անձամբ, սիրով կատարում էր նրանց ամեն մի հանձնարարություն: Նա մոտիկից ճանաչում էր Ա. Օքուաշվիլուն, Լ. Սուխիշվիլուն, Պ. Օրջոնիկիձեին, Մ. Կախիանուն, Մամիա Օրախելաշվիլուն, Սերգո Օրջոնիկիձեին և ականավոր այլ հին բոլշևիկների: Ոմանց հետ նա մտերմացել էր ընդհատակում, իսկ ոմանց հետ՝ սովետական իշխանության տարիներին, համատեղ աշխատանքի ժամանակ:

1905—1907 թվականների ռևոլյուցիայի ժամանակաշրջանում, իսկ այնուհետև ռեակցիայի տարիներին Արամ Մինասյանն իրեն դրսևորում է որպես բոցաշունչ ագիտատոր և հմուտ կազմակերպիչ: Նա պրոպագանդիստական աշխատանք է ծավալում բանվորների շրջանում, բոլշևիկների Թիֆլիսի կոմիտեի հանձնարարությամբ կազմակերպում է պարտիական բջիջներ քաղաքում տեղադրված մենգրելական զորագնդում, ագիտացիոն ու կազմակերպչական աշխատանք ծավալում Շուլավերում, Բորչալուի և Լոռվա գավառների գյուղացիների շրջանում:

1912—1916 թվականներին Արամին տեսնում ենք Կիևում, ուր մեկնել էր՝ տեղի առևտրական ինստիտուտի տնտեսագիտական ֆակուլտետում ուսումը շարունակելու: Նա այդ քայլին դիմեց ընկերների դրդմամբ, որոնք, տեսնելով Արամի ընդունակությունները, խորհուրդ էին տվել բարձրագույն կրթություն ստանալ, խոստանալով նյութապես օգնել նրան: Եվ ընկերները կատարեցին իրենց խոստումը:

Կիևում Ա. Մինասյանը շարունակում է ընդհատակյա պրոպագանդիստական աշխատանք տանել ուսանողների շրջանում, տարածում է «Պրավդա» թերթը, ակտիվ մասնակցում ուսանողների հակացարական ելույթներին:

Ինստիտուտը հաջողությամբ ավարտելուց հետո Ա. Մինասյանը մեկնում է Աբխազիա և ուսուցչական աշխատանքի տեղավորվում Գուդաութայի շրջանի Մծարա գյուղում: Այստեղ էլ նա դիմավորում է 1917 թվականի փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան, գյուղացիներին բացատրում նրա էությունը և բոլշևիկների պարտիայի քաղաքականությունը: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիան Ռուսաստանում հաղթանակելուց հետո պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ Արամ Մինասյանը նետվում է քաղաքացիական պատերազմի հորձանուտը՝ Ուկրաինայում, Մոսկվայում, Աստրախանում, մերթ որպես պարտիզանական ջոկատների կազմակերպիչ ու ղեկավար, մերթ որպես Կարմիր Բանակի կենտրոնական սպասարկման տեսուչ, մերթ որպես զինվորական կոմիսար կամ քաղաշխատող:

Բաքվում արդեն ծածանվում էր սովետների կարմիր դրոշը, բայց Հայաստանում ու Վրաստանում դեռ շարունակում էին իշխել դաշնակներն ու մենշևիկները, գնալով բորբոքվում էին ռևոլյուցիոն խմորումները, Մինասյանը պետք է գաղտնի անցներ սահմանը, գար Թիֆլիս՝ պարտիական հանձնարարություններ կատարելու:

Երկու անգամ Բաքվից դեպի Թիֆլիս անցնելու փորձ կատարեցի,— գրել է Արամը ինքնակենսագրականում,— բայց Փոյլոյի կամրջից այն կողմ չէի կարողանում ընկնել... Վերջապես, հաշտության պայմանագիր կնքվեց մենշևիկյան Վրաստանի և Սովետական Ռուսաստանի միջև: Որպես լիազոր ներկայացուցիչ Վրաստան մեկնեց ընկ. Կիրովը: Որպես այդ միսիայի աշխատակից Արամը գալիս է Թիֆլիս:

1920 թ. հունիս ամսին էր այդ:

1920 թվականի հունիս ամսին էր այդ:

Թիֆլիսում Արամ Մինասյանը կապվում է բոլշևիկների հետ, գործուն մասնակցություն ունենում աշխատավորների զինված ապստամբության նախապատրաստմանը: Արամի գործունեությունը չէր կարող աննկատ մնալ մենշևիկյան իշխանություններից: Նույն թվականի վերջերին, ուրիշ շատ բոլշևիկների և ռևոլյուցիոն բանվորների հետ բանտ է նետվում նաև Արամը: Այդ նրա երրորդ բանտարկությունն էր: Առաջին անգամ նա ձերբակալվել էր 1907 թվականին, դարձյալ Թիֆլիսում, իսկ երկրորդ անգամ՝ 1912 թվականին, Կիևում:

Մետեխի բանտում միաժամանակ պահելուց հետո, մյուս քաղաքական բանտարկյալների հետ նրան ևս տեղափոխում են Քութայիսի, այնուհետև՝ Բաթումի բանտը: Կարմիր բանակի զորամասերի կողմից Բաթումին ազատագրելու օրը, բոլորի հետ միասին բանտից դուրս է գալիս նաև Արամը:

Բացվեց ողջ երկրի աշխատավորների նոր, լուսաշող կյանքի առավոտը:

Լենինյան պարտիայի ակունքներից սկսած անցնելով ընդհատակյա պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներների դժվարին ուղին, երիտասարդ սովետական իշխանության թշնամիների դեմ քաղաքացիական պատերազմի մարտերում կոփված Արամ Մինասյանը երիտասարդական ավյունով նվիրաբերվում է ռեսպուբլիկայում սովետական իշխանության ամրապնդմանը:

Մանգլիսի ռևկոմի անդամ և նախագահ, պարտիայի Թբիլիսիի գավառային կոմիտեի քարտուղար, Թբիլիսիի քաղաքային չորրորդ շրջանային կոմիտեի պարտիական դպրոցի վարիչ, Թբիլիսիի քաղգործկոմի բանվորագյուղացիական տեսչության պետ, միաժամանակ առաջին բանֆակի պատասխանատու ղեկավար, Վրաստանի կոմպարտիայի Ախալքալաքի գավառային կոմիտեի քարտուղար, այնուհետև գավառային գործկոմի նախագահ... Ուր և ինչ պաշտոնի էլ ուղարկում էր պարտիան, Արամ Մինասյանը արդարացնում էր իրեն:

Նրան լավ են հիշում 26 կոմիսարների անվան Անդրկովկասյան կոմունիստական համալսարանի շրջանավարտները, ուր նա երկար տարիներ վարում էր ռեկտորի տեղակալի պաշտոնը: 1933 թվականից մինչև իր ողբերգական մահը Ա. Մինասյանը վարում էր մի շարք պաշտոններ տնտեսական կազմակերպություններում:

Ա. Մինասյանը խոշոր ծառայություններ է մատուցել մեր պարտիային և՛ ընդհատակում, և՛ սովետական շրջանում: Ազնիվ ու անբասիր հոգու տեր ընկեր էր նա, լենինյան տիպի գործիչ:

Ս. ԲՆԳԼԱՐՅԱՆ

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՂԱՅԱՆ Ծ. Պ., ԱՆԱՆԻԿՅԱՆ Բ. Հ., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԹՈԽՄԱՆՅԱՆ Հ. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՀԱՄՈԲՅԱՆ Հ. Մ., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.:

Թողարկիչ՝ Ա. ՅԱՎՐՅԱՆ
Սրբագրիչ՝ Ջ. ԱՎԱԳՅԱՆ

Խմբագրության հասցեն՝ Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք, հեռ. 2—02—24

Адрес редакции: Ереван, здание ЦК КП Армении, тел. 2-02-24

ՎՖ 06512 Պատվեր 104 Տիրաժ 10.700 Գինը 25 կոպ.:

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության 5/II 1966 թ.:

Հայկական ՍՍՌ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի Պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության № 6 տպարան, Երևան, Թումանյան փ. № 51:



# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼՈՒՆԱՉԱՐՍԿԻ Ա. Վ.—Սովերանկարներ: *Մ., «Մոլոդայա գվարդիա» հրատ., 1965, 543 էջ:*

*Սովետական մշակույթի ակտիվ կազմակերպիչ Լունաչարսկու այս աշխատության մեջ զետեղված են տարբեր ժամանակներում նրա ունեցած ելույթները, հոդվածները՝ Վ. Ի. Լենինի, Յա. Մ. Սվերդլովի, Մ. Ս. Ուրիցկու, Վոլոդարսկու, Պլեխանովի, Մ. Գորկու, Հերցենի, Պուշկինի, Գյոթեի և ուրիշների մասին: Գիրքը շատ օգտակար է երիտասարդության համար:*

ԽՍԱՅԱՆ Ա. Ս.—«Հայկական հարցը» և միջազգային դիվանագիտությունը: *Ե., «Միտք» հրատ., 1965, 375 էջ:*

*Աշխատության մեջ քննարկվում են առաջին համաշխարհային պատերազմի տարիներին «Հայկական հարցի» նկատմամբ իմպերիալիստական մեծ տերությունների բռնած դիրքը և նրա հետևանքները, ինչպես նաև ցույց է տրվում Սովետական Ռուսաստանի վերաբերմունքը այդ խնդրի նկատմամբ:*

ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Պ.—Երևան քաղաքի պատմության, տնտեսության և մշակույթի ուրվագիծ: *Ե., 1965, 531 էջ:*

*Աշխատության մեջ հանգամանորեն շարադրվում է Երևանի շուրջ երեքհազարամյա պատմության, բնակչության անցյալի ծանր կյանքի ու հերոսական պայքարի, Սովետական Հայաստանի մայրաքաղաքի աշխատավորության կյանքի, արդյունաբերության, մշակույթի, արվեստների և գիտությունների աննախընթաց զարգացման և ամբողջ աշխարհում սփռված հայ ժողովրդի հոգևոր կյանքի կենտրոնը լինելու մասին:*

ԴՅՈՒՐԵԼ ԿԼԻՄԵՆՏ—Հարաբերականության տեսության այբուբենը: *Ֆ. Դայսոնի առաջաբանով: Ե., «Հայաստան» հրատ., 1965, 182 էջ:*

*Այս գրքում հեղինակը հանրամատչելի ձևով շարադրում է Էյնշտեյնի հարաբերականության ընդհանուր տեսության էությունը:*

ՍԱՐԳՍՅԱՆ Ս. Մ.—Այրվող անտառ: Ե., *«Հայաստան» հրատ., 1965:*

*Գրքի հեղինակը եղել է 408-րդ Հայկական հրաձգային դիվիզիայի քաղբաժնի պետը: Կենդանի ու մատչելի ձևով նա պատմում է հայ ժողովրդի մարտական միավորումներից մեկի հերոսական ուղու, նրա մարտիկների փառավոր գործերի ու Հայրենական պատերազմում ցուցաբերած հայրենասիրության, անձնազոհության, անձնվիրության մասին:*

ԱՐԶՈՒՄԱՆՅԱՆ Ս.—Զաբել Եսայան (Կյանքը և գործը): *Ե., ԳԱ հրատ., 1965, 295 էջ:*

*Մամուլի, արխիվային և այլ նյութերի հիման վրա հեղինակը մենագրության մեջ ներկայացնում է Զ. Եսայանի արձակը, տեսական-գեղագիտական հոդվածները, հրապարակախոսությունը, ինչպես նաև հասարակական գործունեությունը, գրական կապերը և անձնությունները:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՄԵՏԱՂԱՊՈԼԻՄԵՐՆԵՐ

*Սրանք նոր նյութեր են, պոլիմերներ, որոնց մեջ մետաղների կոլոիդային մասնիկները հավասարաչափ են տեղաբաշխված։ Սովորական պոլիմերների համեմատությամբ մետաղապոլիմերներն ունեն բարձր ջերմադիմացկունություն, ինչպես նաև օժտված են էլեկտրահաղորդականությամբ ու մագնիսային հատկություններով։ Կոլոիդային արճճի (կամ արճճի ու կադմիումի համաձուլվածքների) հիմքով մետաղապոլիմերները կարող են լավ պաշտպանել ռադիոակտիվ ճառագայթումներից։*

*Մետաղապոլիմերների ստացման մեթոդները մշակվել են ՍՍՌՄ գիտությունների ակադեմիայի ընդհանուր և անօրգանական քիմիայի Ն. Ս. Կուռնակովի անվան ինստիտուտում։*

## ՊՈՄՊ՝ ՊԼԱՍՏՄԱՍՍԱՅԻՑ

*Ցելինոգրադի պոմպային գործարանը պլաստմասսայից պատրաստում է միբլոկանի կոնստրուկցիայի կենտրոնախույս միաստիճան պոմպեր։ Ապակյա պլաստիկայից պատրաստվում է պոմպի կորպուսը, իսկ ֆտորոպլաստից՝ աշխատող անիվը։ Պոմպը նախատեսված է ծծմբաթթվի, ծովաջրի, աղային և ալկալիական լուծույթների դուրսմղման համար։ Դեֆիցիտային և թանկ պողպատների փոխարինումը պլաստմասսայով ոչ միայն բավականին էժանացնում է պոմպը, այլև զգալի կրճատում դրա քաշը, ինչպես և ապահովում մակերևութային մասի անհրաժեշտ դիմացկունությունը քիմիապես ագրեսիվ միջավայրում։*

## ԶԱՐԴԱՐԱՆՔ ԵՎ... ՊԱՇՏՊԱՆՈՒՄ

*Լենինգրադի քիմիկոսների պատրաստած սիլիկատային էմալը անտարբեր է նույնիսկ տաք թթուների և շիկացած գազերի նկատմամբ։ Դեռ վերջերս այդպիսի պաշտպանական ծածկույթի մասին կարելի էր երազել։ Նոր էմալը պատրաստում են ամրաձույլ ապակուց, որի հետ տարբեր հարաբերակցություններով խառնում են լավ աղացված նիկելի, բարիումի, կրեմնիումի, քրոմի կամ քրոմի կարբիդների փոշին։ Կարելի է մետաղը միանգամից, շերտ առ շերտ ծածկել այդպիսի էմալի մի քանի տեսակներով։ Ի դեպ, բազմաշերտ ծածկույթը ավելի հուսալի է։*

*Կայուն և ջերմադիմացկուն էմալը առանձնապես կուրախացնի քիմիական արդյունաբերության աշխատողներին։*

## ՍԱՌՆԱՐԱՆՈՒՄ —150° Է

*Սառնարաններում հեղուկ ազոտի օգտագործումը հնարավորություն է տալիս չափազանց կարճ ժամանակամիջոցում սառեցնելու սննդամթերքները։ Ազոտի այդ հատկությունը արդեն օգտագործում է լեհական Բիդգոշչ քաղաքի սառնարանների գործարանը։ Այժմ գործարանն սկսել է պատրաստել սառցարանային խցիկներ, ուր մթերքները շատ արագ կսառչեն մինչև —150°։ Այսպիսով այդ խցիկում համարյա երկու անգամ «աչելի ցուրտ» կլինի, քան մեր մոլորակի ամենացուրտ վայրում։*

## «ԿԱՊԿԻ ԼԵԶՎԻ ԲԱՌԱՐԱՆԸ»

*Մարդանման կապիկների կյանքն ուսումնասիրող անգլիական գիտնականների մի խմբի հաջողվել է ստեղծել «Կապիկի լեզվի բառարանի» նման մի բան, ուր հավաքված ու սիստեմավորված են այն բոլոր հնչյուններն ու նպատակային ժեստերը, որոնք օգտագործում են կապիկները միմյանց հետ հաղորդակցելիս։ Բառարանն ընդգրկում է մոտ 30 ժեստ, նույնքան էլ հնչյուններ։*